**ԳԻՆ ԿԷՍ ՄԷՃԻՏ**

*Տպագրութեան իրաւունքը հեղինակին կը պատկանի։*

معارف نظارت جليله‌سنك نمرو ٩٥٤ رخصتيله طبع اولنمشدر

491

# ԿՐՕՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

ԿԱՄ

## ՈՒՍՈՒՄՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՑ

Ի ՊԷՏՍ

ՉԱՓԱՀԱՍ ԱՇԱԿԵՐՏԱՑ, ԸՆԾԱՅԱՑՈՒԱՑ
ԵՒ ԵԿԵՂԵՑԱՍԻՐԱՑ

376 ր.

Երկասիրեաց
Տ. ԽՈՐԷՆ ՔԱՀԱՆԱՅ ՔԻՋԻՐԵԱՆ
ԿԻՒՐԻՒՆՑԻ





Կ. ՊՕԼԻՍ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԱՐԳԱՐԵԱՆ
— 1885 —

GRAD
EREN
487
02.20.98

# ՊԱՏԱՍԽԱՆ

(Նախ քան պաշտօնականն)

Ազգային Վարչութեան Կրօնական Ժողովն՝ Կիւրինցի Քիլիրեան Բարեջնորհ Տ. Խորէն Քահանայի յօրինած «Քրիստոնէական Կրօնագիտութիւնն» յետ քննութեան համաձայն գտնելով Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ վարդապետութեանց ու աւանդութեանց, վաւերացոյց զսոյն երկասիրութիւն։

(Կնիք)

Ազգ. Կրօն. Ժողով Կեդր. Վարչութեան

4. Դեկտեմբեր 1884

Ի Պատրիարքարանի Հայոց

Կ. Պոլիս

ԳԻՆ ԿԷՍ ՄԷՃԻՏ

*Տպագրութեան իրաւունքը հեղինակին կը պատկանի։*

معارف نظارت جليلەسنك نمرو ۹٥٤ رخصتيله طبع اولنمشدر

491

# ԿՐՕՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

ԿԱՄ

## ՈՒՍՈՒՄՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՑ

Ի ՊԷՏՍ

ՉԱՓԱՀԱՍ ԱՇԱԿԵՐՏԱՑ, ԸՆԾԱՅԵԱՑՈՒԱՑ
ԵՒ ԵԿԵՂԵՑԱՍԻՐԱՑ

376 p.

Երկասիրեաց
Տ. ԽՈՐԷՆ ՔԱՀԱՆԱՅ ԳԻՋԻՐԵԱՆ
ԿԻՒՐԻՒՆՑԻ





Կ. ՊՕԼԻՍ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԱՐԳԱՐԵԱՆ
— 1885 —

GRAD
EREN
487
02.20.93

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

( Նախ քան պաշտպանութեան )

Ազգային Վարչութեան Կրօնական Ժողովն՝ Ախուրինցի Քիլիկեան Բարեշնորհ Տ. Խորէն Քահանայի յօրինած «Քրիստոնէական Կրօնագիտութիւնն» յետ քննութեան համաձայն գտնելով Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ վարդապետութեանց ու աւանդութեանց, վաւերացոյց զսոյն երկասիրութիւն ։

( Կնիք )

Ազգ. Կրօն. Ժողով Կեդր. Վարչութեան

4. Դեկտեմբեր 1884

Ի Պատրիարքարանի Հայոց

Կ. Պօլիս

ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ՀԱՅՈՑ
ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎ
ԱԶԳ. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

Թ. 288.

Արժանապատիւ սիրելի 'ի Քրիստոս,

Ձերկասիրեալն առ 'ի Ձէնջ՝ զՈւսումն Քրիստոնէական հաւատոյ, Կրօնական Ժողով Ազգային Կեդրոնական Վարչութեան՝ հրաման տայ հանել 'ի լոյս, 'ի քաջալերութիւն աշխատասիրողիդ՝ եւ յօրինակ նմանութեան երիցակից եղբարցդ, որոց տուեալ է պաշտօն 'ի Տեառնէ՝ առնել եւ ուսուցանել 'ի շինութիւն մանկանց Եկեղեցւոյ։

Եւ ունիմք՝ զի առ յապայն մարզեսցի Ձերն գրիչ՝ առաւելագոյն խնամով յերիւրումն երկասիրութեանց ըստ անստերիւր վարդապետութեան Հայաստանեայց Սուրբ եւ Ուղղափառ Եկեղեցւոյ։

Ի դիմաց Կրօն. Ժողովոյ Ազգ. Կեդր. Վարչութեան

Ատենադպիր — Ատենապետ

Վ. Վ. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ — ԽՈՐԷՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

Կ. ՊՕԼԻՍ
Ի Պատրիարքարան Հայոց — 1885 Մարտ 15

Արժանապատիւ
Տ. Խորէն Քահանայ Քիզիրեան



# ՅԻՇԱՏԱԿ

Ուսայ զբազմածանօթ ազնուութիւն սերընդեան քո, և եղէ ականատես՝ եկեղեցասէր բարեպաշտութեան հարազատ որդւոցդ՝ Մեծապատիւ Յովհաննէս և Միրան տեարց, որք բերելով զնմանութիւն հօրդ՝ յինքեանս, ըստ նոյն վարժութեան իւրեանց՝ օժանդակըս եղեն և ինձ, առաքինասէր առատօրէն իմն նուիրատուութեամբ, որով քաջալերեցին զիս 'ի կրօնական յերկասիրութիւնս։

Հանգի՛ր, հանգի՛ր, ո՛վ հոգիդ երկնաչու՝ Ազնուամեծար ոսկերիչ Մահ. Խաչատուր տեառ Գալփագճեանի, որ այլեւս ո՛չ ես յաշխարհի աստ, այլ արժան համարեցաւ երկինք յայսմ յամի՝ յաւուր Ծաղկազարդի՝ հաղորդս լինել քեզ՝ կենարար մարմնոյ արեան Քրիստոսի. և յաւուր Մեծի Ուրբաթու Զատկին՝ խառնիլ թաղման հանգի-

սի մարմնոյ քո, 'ի յիշատակս թաղման Գառինն Աստուծոյ :

Թողեր զաշխարհս վաղանցիկ, յերթալ յերկինս 'ի յաւիտենականութիւն . այլ ոչ մեռար . զի յիշատակ մնայուն և անուն բարի՝ ոչ կարէ մնանել ընդ հողանիւթ մարմնոյ 'ի սեաւ գերեզման ընդ շիրմաւ, այլ յետ մահուանն եւս լուսապայծառ և՛ անմահօրէն շրջի 'ի վերայ երկրի :

Մխիթարեա՛ց ուրեմն՝ յառաքինազարդ դասս փարթամացն անմահից, որ ըստ Դաւթեան օրհնութեան՝ տեսեր զորդիս որդւոց քոց 'ի վայելս. և գտի զքեզ և զգերդաստանս քո ըստ առաքելական բանին, որ 'ի ձեռն Տիմէթէոսի՝ պատուիրէ մեծատանց առատաձեռնս լինիլ : Թէեւ Վարդապետն մեր երկնաւոր՝ դիւրին դասէ անցանել մալխոյ ընդ ծակ ասղան, քան մեծատանց (ագահից և զանձանց իւրեանց և եթ հոգացողաց) մտանել յարքայութիւնն յերկնից . իսկ ողորմածաց՝ « տո՛ւք և տացի ձեզ » . և կամ յաւուր վերջին դատաստանի 'ի հրաւէր Աստուածային թէ, « որ միում 'ի փոքրկանցս յայսցանէ արարէք ինձ արարէք, եկա՛յք օրհնեալք հօր իմոյ » :

Այս ուրեմն՝ մեծատանց բարեպաշտից և առաքինեաց՝ անհնար է լինիլ կարօտ կա-

թիւ մի ջրոյ, ծագիւ մատին աղքատ Ղազարու տա 'ի զովացումն 'ի պապակմանէ, այլ 'ի դասս Նահապետին Աբրահամու կամ 'ի սփոփանս, որ երբեմն զհեշտակս կերակրէր, և զՔահանայն Մելքիսեդէկ պատուէր տասանորդօք։

Արդ՝ ուրախացի՛ր, ընդ անհիւթեղէն էակս 'ի յերկինս, զի և յերկրի աստ՝ կան քեզ կոթողք առաքինականք, առաւելագոյն քան զարձանս կճեայս։

Ուստի որպէս և այլոց բազմաց, նոյնպէս և Աղօթողիս՝ պարտ անձին վարկաւ յիշել զքեզ միշտ 'ի ջերմագին յաղօթս, և 'ի մատակարարութեան խնում անդ Սրբոյ խորհրդոյն, մաղթելով Ազնուամեծար ննջեցորդացդ կեանս երջանիկս։

Մնամ աղօթարար

Խ. Քհնյ. Քիզիրեան

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ասկէ յառաջ՝ Կրօնագիտական կամ Աստուածաբանական գրեանք՝ բաւականէն աւելի 'ի լոյս ընծայուելով՝ քրիստոնէից մէջ շատերէն ընդունելութիւն գտնելնին յայտնի է ։

Աւելի շատ են Հռովմէականաց վերաբերեալ՝ բարոյական, գործնական և տեսական Աստուածաբանութիւններ, որոց մի քանիններուն ականատես եղած եմք․ իսկ իրենց զանազան և խըրթին իմաստներովը՝ անթիւ Կրօնագէտներու անգամ վիճաբանութեան առիթ տուած են, և կուտան մինչև ցարդ ։

Գալով նոյն իսկ մերայնոց․ Ս․ Գրիգոր Լուսաւորչի Յաճախապատում, Ագաթանգեղոս, Ներսիսի Շնորհալոյն Ընդհանրականը․ Սարգսի, Լամբրոնացւոյ, նաև Շահնազարեանի Կրօնագիտութիւն, Լուսաշաւիղ, և այլ եւ այլ երկասիրութիւնք՝ Աստուածաբանական ճիւղերու վերաբերեալ, կրօնագիտական վարդապետութեամբ կան ճոխացեալ, սակայն, Ա․ գրաբառ, Բ․ հազուագիւտ, Գ․ դասախօսութենէ կամ դադարեալ և կամ աշակերտաց ըմբռնման անյարմար․ ուր վասն՝ մեր հասարակութեան մեծամասնութիւնը՝ ասոնց անուններն անգամ լսած չըլլինելը փորձով նկատուած է ։

Զայս նշանակելով, մենք անոնց վարդապետութեանց վերայ բան մը պիտի աւելցնենք ըսել չենք ուզեր, այնպիսի յանդուգն մտածութիւն մը

մոքի մէջ յղանալն անգամ աւելորդ է, բայց ինչ-պէս որ նոքա Աւետարանական ճշմարտութեան հետեւած են, մենք եւս նոյն ճշմարիտ վարդապետութեան և նոցա պարզ նպատակին հետեւելով կարեւոր համարեցինք դոյզն ծառայութիւն մը մատուցանել՝ Հայաստանեաց Առաքելական Ս. Եկեղեցւոյ. վասն զի ամեն մարդկային անձինք միեւնոյն անդամներէ կը բաղկանան, բայց ո՛չ միեւնոյն կերպարանքէ և դէմքէ. նոյնպէս սեռօրէն առնելով՝ շատ տեսակ համադամներ կան, թէեւ միեւնոյն անունը կը կրեն, բայց ոչ միեւնոյն համը. և դարձեալ բոլորն ալ պիտանի են ըստ իւրեանց տեսակին. այսպէս են միեւնոյն գաղափարի և միեւնոյն նպատակի ծառայող երկասիրութիւններն ալ:

Նա մանաւանդ՝ ամեն դար զինքը վայելող երկասէր հեղինակներ ունեցած է. վասն զի անցեալ դարուց գաղափարներն՝ լսել և ուսանիլ էր, իսկ ներկայիս նպատակը՝ տեսնել, ուսանիլ և գիտնալ է. ըստ այնմ այժմուս գաղափարին համեմատ Ս. գրոց վկայութեամբ, աշխարհիկ լեզուաւ և պարզ ոճով մը ձեռնարկելով, ջանացինք՝ հասարակութեան ալ նպատակ մը հասկցնել՝ քան թէ մենք զմեզ իբր բանգէտ ձեւացնել, վասն որոյ՝ եղած են թերեւս երբեմն կրկնութիւններ և լեզուի կամ բառերու տձեւութիւններ:

Թէեւ դժուարին է լեզումը և կամ ոճ մը բոլոր աստիճանի մարդոց հաճելի երեւցնել միեւնոյն կերպով, իսկ ո՛ և է դասագիրք ուսուցչի և առաջնորդի պէտքութիւն ունի, և ո՛ և է ուսուցիչ առողջամիտ պէտք է լինի երբեմն առ հեղինակս:

Ուստի լիայոյս եմք թէ, յետ մանր ուսման

քրիստոնէական վարդապետութեան և արտաքին պատմութեանց, կարեւոր պիտի համարուի զար-գացեալ աշակերտաց և եկեղեցասիրաց, որք ան-տեղեակ գոլով ճշմարիտ վարդապետութեան Առաքելական Ս. Եկեղեցւոյս. երկմտութեան և կրօնափոխութեան զոհ կերթան, որով մի գուցէ զրկուին Աստուածային պարգեւներէ (Յակովբ Ա. Յ. Բ. Պետր. Գ. 16.)։

Զի մոռնանք ըսել թէ, Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցին՝ չունենալով մասնաւոր Աստուածաբանական դպրոցներ, Հին և Նոր. կտակարանն եղած է իւր Աստուածաբանութիւնը. որովհետեւ՝ զայն հաւատալն և ճշմարիտ հաւատոյ.ուսումն է Աստուածաբանել, իսկ Ս. գրոց ճըշմարիտ իմաստը զանազան գիտութեանց ենթարկելով Աստուածաբանելը՝ հաստատուն հաւատոյ թուլութիւն, քրիստոնէական միութեան քանդանում, և ճշմարիտ սիրոյ գայթակղութիւն տալ է, զի այնպիսի Աստուածաբանութիւններով անհաշտ թշնամիներ են ձեւացած քրիստոնեայք իրարու. որ ըստ այսմ, քրիստոնէական կրօնագիտութիւնն է Աստուածաբանութիւն։

Արդ՝ ցաւալի է տեսնել, զի կան երբեմն եկեղեցականներ 'ի գաւառս և 'ի գիւղօրէս, որք գէթ եկեղեցւոյ եօթը խորհուրդները կարգաւ մը թուելու չեն կարող, թող թէ բացատրելու. ուստի այն է ինձ սփոփանք և վարձատրութիւն տաժանելի աշխատանացս, եթէ ընդունելութիւն գըտնելով գործոյս ոչ թէ բառ առ բառ գոց ընեն մտքեր չափազանց յոգնեցնելով, հապա բաւական է որ ամեն մէկ հարցմանց պատասխաններու բովանդակութիւնն ըմբռնեն։

Սուրբ գրոց վկայութիւններն ուսանիլ և կարեւոր հարցմանց պատասխանել, միթէ ուրիշներուն միա՞յն կը վայելէ, չէ՞ որ ներկայս կը պահանջէ՝ ճշմարիտը գիտնալ առ 'ի հերքումն զանազան գայթակղեցուցիչ վարդապետութեանց. չէ՞ որ առանց կրօնագիտական ուսման անկարելի է լինել բարի մարդ և ճշմարիտ քրիստոնեայ. չէ՞ որ այսպիսի դասագրքի մը կարեւորութիւնը յոյժ զգալի է, մանաւանդ 'ի գաւառս . . . ուստի կը համարձակիմ ձօնել սիրելի Ազգիս՝ սոյն դասաւորեալ Կրօնագիտութիւնը՝ որպէս զի չափահաս աշակերտաց և ընծայացուաց համար առօրեայ դասագիրք մը լինի. և հանուր երիտասարդաց ալ՝ գէթ կիւրակէօրեայ. նաեւ եկեղեցասէր հասարակութիւնք ալ բաւական է որ ուշադրութեամբ ընթերցասիրեն ։

Վերջապէս բարեմիտ ընթերցողք՝ պիտի գտնեն՝ Ս. գրոց վկայութեամբ հաստատեալ թէ, Թող զբարոյական Եկեղեցին, որ ոչ թէ իբր անպատուաստ վայրենի ձիթենի, այլ Պատուաստէ 'ի Պատուաստ անծայրահատ կերպով կը շարունակէ մինչեւ աշխարհիս վերջը մնալու խոստմամբ, հապա՝ նոյն իսկ Նիւթական եկեղեցւոյն որմերու քարերն անգամ առանց Աստուածային հրահանգի չեն դրուած. յորում կատարի միշտ Աստուածահաճոյ սուրբ պաշտամունք՝ 'ի փառս մարդասէր Հօրն բոլորեցունց ։

ԵՐԿԱՍԻՐՈՂՆ

# ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ ՇԻՆԵԱՑ ՏՈՒՆ ԵՒ ԿԱՆԳՆԵԱՑ ՍԻՒՆՍ ԵՕԹՆ

(Առակ. Թ. 1.)

# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## ԳԼՈՒԽ Ա.

### ՍԱՀՄԱՆ ՀԱՒԱՏՈՑ

### ԴԱՍ Ա.

1. — Հաւատքը ի՞նչ է ։ 2. — Հաւատոյ արդիւնքը ի՞նչ կրնայ ըլլալ, եւ կամ կրօնական գաղափարը զարգացողը ի՞նչպէս կը վարուի ։

*1. — Հաւատքը մարդկային ազգին կենսական ապահովութեան համար Երկնային տուրք մ'է ։ Կամ Երկնային զօրութիւն մ'է որ մարդուս հոգեկան տեսութիւններն կախեալ ըլլալով Աստուծոյ կողմէն տրուած յայտնութիւնները աներկբայապէս կ'ընդունի սրտին վրայ տպաւորեալ, ըստ առաքելական սահմանի, (Եբր. ԺԱ. 1)։*

*2. — Հաւատոյ սահմանը՝ կրօնը յառաջ կը բերէ, որուն հիմը Աստուած է ։*

Կրօնն ալ Աստուածահաճոյ, բարոյական և սահմանաւոր կիրքէ մը կը ծագի։

Կրօնքին զգացումը գիշերը քունի մէջ անգամ արթուն է, կը շարժէ զմեզ խորհիլ այն բաներուն վրայ, որք կը կապեն զմեզ Աստուածային սիրոյ հետ, զԱստուած սիրել կը սորվեցնէ քան թէ փնտռել. զի գտնելը դժուար է և անկարելի, իսկ գաղափարելով սիրելը դիւրին է, ուրկէ կու գայ Կրօնի հաստատուն՝ գաղափարը։

Կրօնական գաղափարի վրայ զգացողական կիրք չունեցողները լոկ զԱստուած սիրելու ձեւով կ'ապրին, այն է կրօնամոլական նախապաշարմամբ որ կը նմանի Կրօնական շըռայլութեան մը, անոր չափը անցնողներն ալ կը կարծեն թէ կրնան հոգիանալ. այնչափ կ'ագահեն որ հոգեւոր երկրպագութիւնը վճռուած և հետագրգռած միջոցնին անմիջապէս կը կորուսանեն այն վճռուածնին։

Ուստի այս ըսածնուս հետեւցնել կուզենք թէ ճշմարիտ հաւատքը մարդուս մէջ երբոր զարգանայ, միշտ կ'ստիպէ որ զԱստուած սիրենք, հաւատանք, և գործքով ալ պաշտենք, զի հաւատք առանց գործոց մեռեալ են։ (Յակոբ. Բ. 20)

# ԴԱՍ Բ.

## ԲԱԺԱՆՈՒՄՆ ՍԱՀՄԱՆԻ ՀԱՒԱՏՈՑ

1. — Հաւատքը քանի՞ կը բաժնուի. արտաքին հաւատքը ո՞րն է. ի՞նչ օրինակով կրնայ բացատրուիլ։ 2. — Ներքին հաւատքը ո՞րն է. ի՞նչպէս կրնայ բացատրուիլ։

*1. — Հաւատքը նախապէս երկուքի կը բաժնուի, այն է* **ԱՐՏԱՔԻՆ ԵՒ ՆԵՐՔԻՆ**։

**ԱՐՏԱՔԻՆԸ** *այն է՝ որ ապացուցական պատճառներով և բնութեան օրէնքով կ'ապացուցուի և կը տեսնուի, և հասարակաց կարծիք կը միանայ։ օրինակի յաղագս, զանազան նիւթերէ կազմուած բաղադրեալ նիւթ մը ձեռքերնիս որ առնենք, չենք կրնար գիտնալ թէ, անոր մէջ ի՞նչ, և քանի՞ տեսակ, և ո՞ր տեսակէն որչափ նիւթ ներփակեալ և բաղադրեալ է, իսկ զայն զտող և տարրալուծողն կը նայի կը տեսնայ, որ այսչափ ոսկի. այսչափն ալ արծաթ, և այնչափն ալ կապար է. այն հալեցնողը իր տեսածին չափ կը հաւատայ, ուրիշ անկէ աւելի բնագէտ մ'ալ այն նիւթը իր կազմիչ մասերուն վերածելու ատեն, միւսէն աւելի կրնայ հաւատալ։ Ու-*

ընչ խօսքով . այս գոց սնտուկին մէջի փոշին կամ սպիտակ է, կամ սեւ է և կամ կարմիրագոյն, վէճի տակ է, քանի որ սնտուկը գոց է, իսկ բացուածին պէս, իսկոյն տեսնողները կը վկայեն թէ, այսինչ գոյնն է, զի գոյնի մասին՝ հասարակաց կարծիքը միացած է, ու ըսելէ գոյնի մը ինչ ըլլալը գիտնալու համար, աչքի տեսութեամբ կը հաւատացուի, իսկ կարգը երբ անոր համը նայելու որ գայ և խնդիր ըլլայ թէ, արդեօք դա՞ռն է թէ, քաղցր, գործը կը միայ ճաշակելու, երբոր ճաշակենք՝ ըստ վերոյիշեալին հասարակ գաղափարաց համեմատ կը հաւատացուի թէ «այսինչ փոշին այսինչ գոյնը և այսինչ համը ունի, ուրեմն մաղձադեղ է» այսպիսի հաւատոց կ'ըսուի ԱՐՏԱՔԻՆ ՀԱՒԱՏՔ։

2. — ՆԵՐՔԻՆ ՀԱՒԱՏՔը այն է՝ որ բանի մը կամ իրի մը կայ ըլլալը գաղափարով միայն կրնանք ըմբռնել. օրինակի համար. այսինչ փոշիին գոյնը գիտենք, համն ալ գիտենք. որ սպիտակ և դառն մաղձադեղ է, իսկ երբ ուզենք գոյնը տեսածնուս պէս համն ալ տեսնալ, այն ատեն անկարելի կ'ըլլայ, համ ըսուած բանը կա՛յ, որ ամեն մարդ գիտէ, բայց ո՛չ ոք կրնայ տեսնալ, նոյնպէս մէկը ըսէ որ փորս կամ գլուխս կը ցաւի. գիտէ որ ցաւը կայ, անոր կայութենէն շատ

անդամ կը հառաչէ կը ճչէ, բայց չի կրնար տեսնալ զայն: Բժիշկն ալ գիտէ որ կայ, բայց չի կրնար տեսնալ: (1)

Այն բանը կամ իրը, կամ էութիւնը և անձը անդամ, գիտենք որ կայ, և չենք կըրնար տեսնալ, հոգինուս իմացական և զգացողական կարողութիւնը կը վկայ է որ կայ, այն կարողութիւնը մէկ ակնթարթ վայրկենի մէջ շատ հեռաւոր տեղեր կրնայ պտըտիլ, ու իւր գերդաստանէն մէկուն և կամ բարեկամին հետ անմիջապէս տեսնուիլ հոգւոյն աչօքը, և կամ իւր տեսած իրը մտքով ալ տեսնալ և գաղափարել:

Այս գաղափարով ինչ որ կ'զգանք և կը հաւատանք որ կայ. անոր ալ կ'ըսուի «ՆԵՐՔԻՆ ՀԱՒԱՏ» որ դարձեալ կը բաժնուի «ՀԱՒԱՏ առ զգալի էակս և ՀԱՒԱՏ առ իմանալի էակս:»

---

(1) Կը պատմուի որ օր մը անկրօն բժիշկ մը աստուածաբանի մը կը հարցնէ թէ «հոգի կա՞յ եւ տեսած ունի՞ս. ինչէ՞ն գիտես թէ կայ» կը պատասխանէ աստուածաբանը «ցաւ կա՞յ. ցաւ տեսած ունի՞ս, եւ ինչէ՞ն ցաւը կայ. ինչո՞ւ կըսես թէ այս ինչ մարդը ցաւ ունի» այնատեն բժիշկը կ'սկսի աչք 'ի գետին ճակատը շփել, եւ խորհելով երթալ, թէ այո՛ կայութիւն մը կամ էութիւն մը կայ որ չի տեսնուիր. այն բանն որ կայ աստիճանաւոր է անշուշտ, այն է թերի, գեր քան զթերի, գերագոյն եւս:)

## ԴԱՍ Գ.

### ՀԱՒԱՏ ԱՌ ԶԳԱԼԻ ԵՒ ԻՄԱՆԱԼԻ ԷԱԿՍ

**1. — Զգալի էակաց գոյութիւնը ի՞նչպէս կ՚ըմբռնենք : 2. — Իմանալի էակները ի՞նչպէս կը հաւատանք . հաւատալէն վերջ ի՞նչ ընելու պարտաւոր ենք։ 3. — Սուրբ գիրքը ի՞նչ է. ո՞րոց ձեռքով գրուեցաւ, մարգարէութիւնը քանիի՞ կը բաժնուի :**

1. — *Զգալի էակաց գոյութիւնը կայ ըլլալը գիտնալով կըմբռնենք բարոյապէս, ինչպէս՝ ցաւ, համ, կայլն :*

*Այս ըմբռնումը մեզի կ՚օգնէ, բարոյապէս ըմբռնել, և հաւատալ չի տեսած բանի մը, զի հաւատալը բան մը տեսնալ ըսել չէ, այլ զայն չի տեսած՝ կայ ըլլալը գիտնալով հաւատալ, որովհետեւ աչքով տեսնուած և ձեռքով բռնուած բանը՝ քանի որ հաստարակութիւնը գիտէ, և կը ճանչէ, համոզման պէտքութիւն չունի. հապա անոր ներքինը սորվելու շատ կարեւորութիւն ունի :*

*Մաղձը բուժող դառն համը, օճնգրական փոշիին սպիտակութիւնը չէ, հապա ա-*

նոնց մէջ գտնուած ու չի տեսնուած հանն է, սոսր կ'ըսուի զգալ և հաւատալ :

Այս հաւատոյ տեսակին վրայ կը հիմ-նուի քրիստոնէական հաւատքը, ջուրը՝ հացը՝ գինին՝ միւռոնը՝ խաչը՝ եւայլն նիւթեր են, աչ-քով այնպէս նիւթ կը տեսնուին. իսկ հոգ-ւոյ աչօք ալ զանազան պաշտօններու տէրեր կը գիտցուին ու կը հաւատացուին :

Հաւը էութիւն մ'է, իսկ գոյութեան մը միջոցաւ մեզի զգալի կ'ըլլայ, զի մենք մարդեկներ ենք, հոգիէ ու մարմնէ բաղկաց-եալ, ո՛չ լոկ հոգի ենք որ բոլորովին հոգե-ղէն դիտել կրնանք. ո՛չ ալ լոկ մարմին ենք, որ հաւատքնիս միայն աչքի երեւցածներու վը-րայ կայացած ըլլայ, ասոր համար մեզի ըն-տեղծողը մեզի սորվեցուցած է որ մարմնա-ւոր աչօք տեսածնուս վրայ, հոգեւոր ալ ըմ-բռնում մը ընենք. օրինակի համար. մար-մնաւոր աչօք հաց. հոգեւոր աչօք մարմին Քրիստոսի. Նոյնպէս քառակուսի խաչ մը, անոր վրայ կախեալ Քրիստոսի մարմինը եւայլն, որ գրեթէ բոլոր արարողութիւնք Եկեղեցւոյ, այս կէտերէն կախուած են, որոց վրայ իրենց տեղերը պիտի տեսնուին մեկնութեամբ :

Չ. — Իմանալի էակաց ալ էութիւնը և գոյութիւնը կայ ըլլալը գիտնալով կը հաւա-տանք, ինչպէս, մենք մեր վրայ կը նայինք,

որ մէջերնիս հոգւոյ կարողութիւն մը կայ , անով կ'զգանք որ հոգիներուն գերագոյնը կայ ։ Արարածները , կը կենան աչքի առաջ , իսկ անոր վրայ կը զարմանայ մեր անտեսանելի հոգին ո՛չ թէ մարմինը , որ հողակոյտ մ'է , ուրեմն այն արարածներուն արարիչն ալ առնչական կերպով անտեսանելի է , ուստի այս հաւատքը երբոր սորվինք , ո՛չ կը գայթակղինք , և ո՛չ կը տարակուսինք , հապա կրնանք գիտնալ թէ արարիչը հոգի է , մեր մէջ հոգի կայ , այն արարիչը մեր հոգիներուն ալ արարիչն է , մեր հոգիները զգալի կերպով անոր չեն կրնար մօտիկնալ , քանի որ թանձր մարմնոյ մէջ են , իսկ իմանալի կերպով ալ անկէ կրնան չը հեռանալ , քանի որ բանական են ։

Այսպէս ալ կը հաւատանք իմանալին , և այն հաւատքէն վերջ այլ ևս կ'ըստիպուինք Աստուածաշունչ գիրքը կարդալ և չի տեսածնուս աւանդական կերպով հաւատալ , այն ալ ոչ թէ կոյր զկուրան կը հաւատանք , այլ արեւի պէս յայտնի երևնալուն համար ։

3. — Սուրբ գիրք ըսելով կը հասկնանք հին և Նոր կտակարանները , հին կտակարանը մարգարէից ձեռքով գրուեցաւ , իսկ Նորը առաքելոց ։ Աստուած հովիւներէն մարգարէներ ընտրեց իսկ որսորդներէն առաքեալ-

ներ (1)։ Մարգարէութիւնք երկուքի կը բաժ-
նուի, այն է, «անցելոյ և ապագայի» Նա-
խախնամութիւնը ապագայն այնչափ անթերի
կատարեց մարդոց հաւատքին հաստատութիւն
տալու համար, որ անցելոյն վրայօք բնաւ
կասկածելու իրաւունք չունենան։

Ապագայն գուշակելու մասին մարդիկ
տեսան ու հաւատացին որ բոլոր մարգարէու-
թիւնք բառ առ բառ կատարուած են, օրինա-
կի համար, Եսային եօթը դարէն աւելի ա-
ռաջ բնութեան դէմ կոյսի մը յղութիւն կը
գուշակէ, իսկ այն գրուածքը մագաղաթնե-
րու վրայ ձեռքէ ձեռք երբոր կուգայ աւան-
դական կերպով, Կոյսը կը կատարուի Բեթղե-
հէմի քարայրին մէջ, այն ատեն մեծաւ մա-
սամբ կը հաւատան թէ, քանի որ Աստուած
այնչափ տարի վերջը ըլլալիքները գուշակել տը-
ուած է անուն անուամբ Էմմանուէլը, Մեսեայ է։
Նոյնպէս ետքը ըլլալիքներուն համեմատ յա-

(1) Սուրբ գրոց մէջ փիլիսոփայական, իմաս-
տասիրական, միով բանիւ գիտութեանց վերաբեր-
եալ դրուածք շատ են, սակայն մարգարէներէն շա-
տեր հովիւ եւ անուսումն էին եւ առաքեալք փիլիսո-
փայութեան վարժարաններէ ելած մարդիկ չէին։
Մովսէս անգամ ծանրախօս էր լեզուաւ. ասոնք այս-
կէտն ալ առաջին կարգի ապացոյց մ'է սուրբ գը-
րոց աներկբայ հաւատ ընծայելու։

ռաջուց եղածներն ալ կրնար գիտցնել անուն առ անուն։

Ըստ այսմ նախամարգարէն Մովսէս իրաւամբ սկսած է «Ի սկզբանէ արար Աստուած զերկինս և զերկիր» և Աստուածաշնորհ գուշակութեամբ կարողացած է թուել «Ադամ, Եւայ, Կայէն, Աբէլ, Սէթ, Մաթուսաղայ և այլն»։

Նոր կտակարանք նոյնպէս չորս աւետարանիչներու ձեռօք զանազան լեզուօք զանազան երկիրներ և այլ և այլ ժամանակներու մէջ գտնուելով, հաւատացելոց ձեռօք մէկտեղ գալու առեն տեսան և վաւերացուցին, որ միեւնոյն իմաստով գրուած և ճշմարիտ վկայութիւններ են կէտ առ կէտ, որուն համար ալ հասարակ «Աստուածաշունչ» կամ «Կտակարան» ըսուեցաւ Աստուծոյ ազդեցութեամբը գրուելուն համար. կամ թէ հնոյն Աստուածաշունչ և նորին Աւետարան. Օգոստինոսին ըսածին համեմատ՝ նորը հնին մէջ ծածկուած, հինը նորին մէջ բացուած։ «Կտակարան» ըսուելուն պատճառը, Աստուածային տնօրինական կարգադրութիւնները և մարդոց փրկութեան պայմանները իւր մէջ պարունակելուն համար է. Հին և Նոր Կտակարանին կը հաստատուի նախնեաց պատճառաց համար, որ ըսել է աչքով տեսնուածին

ամեն մարդ կը հաւատայ, ուրեմն կատարեալ հաւատքը տեսնուածին մէջէն չի տեսնուած մը ըմբռնելէն կախեալ է՝ որ հաւատքը կրկին բաժնուեցաւ. Մարդկայինի, եւ Աստուածայինի։

## ԴԱՍ Դ.

### ՅԱՂԱԳՍ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՀԱՒԱՏՈՅ

**1. — Մարդկային հաւատքը ի՛նչ է. ի՛նչպէս կը բացատրուի. 2. — Աստուածային հաւատքը ո՞րն է։ 3. — Հաւատքը ե՞րբ կը կենդանանայ, ասոնք ի՞նչպէս կը բացատրուին. փիլիսոփայօրէն ի՛նչպէս, աստուածաբանօրէն ի՛նչպէս, եւ քաղաքականօրէն ի՛նչպէս։ 4. — Նախապաշարեալ հաւատքը ո՞րն է։**

1. — Մարդկային հաւատքը մարդկանց խօսքէն կախեալ է, որ աչօք տեսնելով ականջօք լսելով կը հաւատացուի, բայց շատ անգամ կրնայ սխալիլ մարդկային հաւատքը, աչքովդ կը տեսնես որ այսինչ խօսքը այնինչ տեսակ վէրքը կը բուժէ, այն խօսքով

սիրելը Մարդուս մտքին մէջ կը մնայ․ իսկ մեռեալ հաւատք է, մինչեւ որ դրսէն ալ ընկերդ չի սիրես (Ա. Յովհ. Դ. Գլ. 20 համր)

Կրօնի կերպով ալ այնպէս տնօրինուած է, որ մարդ մը մեղանչէ ու զղջայ մտքէն, մեռեալ հաւատք և անընդունելի զղջում է, մինչեւ որ չը խոստովանի․ խոստովանութիւնը կըլլայ գործ և կենդանի հաւատք «խոստովան եղերուք միմեաց զմեղս ձեր (Յկբ. Ե. 16)»

3. — Տասներկու տարուան հիւանդ կին մը մտքէն կըսէր որ Քրիստոսի քղանցքին մօտենամ կը փրկուիմ. Քրիստոս ալ անշուշտ այն կնոջ միտքն գիտցաւ, բայց մեռեալ հաւատք սեպեց․ կինը երբ գործքով մտքինը երեւան բերաւ և խօսքով արտասանեց, Քրիստոս այն ատենը կենդանի սեպեց հաւատքը․ իւր բերնէն մէջ կենդանացնելով թէ «հաւատք քո կեցուցին»։

Քաղաքական օրէնքով դարձեալ բնութիւնը մեզի այսպէս կը սորվեցնէ։ Մտքերնուս կ'անցնի որ մարդ մը պատուենք, այն պատիւը դեռ մեռեալ է մեր մէջ․ կենդանացնելու համար գործքերու կը կարօտի, եօթը խորհուրդ Եկեղեցւոյ, և արարողութիւնք գործքեր են ըսելէ․ նոյնպէս տուրք, ողորմութիւն և սէր ընկերի։

4. — Հաւատք մը փուլ կամ նախապաշարեալ է, երբ ազատամիտ գաղափար մը չունի, ինչպէս էին Արիոս, Մակեդոն ևայլն ուրացողք՝ որոնք սուրբ գրքէն իրենց տրուածէն աւելին ճառելու նպատակաւ մոլորեցան հաւատոյ մէջ. հաւատքը ձեռքէ կորսուին հաւատք փնտռած տեղերնին. նոյնպէս կը նախապաշարուին շատերը հոգիանալ ձեւացընելով, կամ թէ հոգեւոր երկրպագութիւնը միմիայն մտքէ կըլլայ կարծելով՝ կը վախնան թէ, չըլլայ որ Աստուած բարկացնեն խաչ ու պատկեր կեցած տեղը աղօթելով որ նախապաշարում մ՚է, միով բանիւ կեղծ և անօգուտ է անգործ եղած հաւատքը. զի հաւատք ու գործք առնչական են. ինչպէս որ կայ արարած, կայ արարիչ ալ, կայ որդի, կայ հայր ալ, կայ ծառայ, կայ տէր ալ, մտքէդ չես գաղափարեր ու կ՚երկրպագես անհիմ տան պէս է, մտքէդ կ՚անցնի ու չես գործեր դրսէն. մեռեալ ես հաւատով, զի Աստուած մարդկային ազգին հետ այս կերպով վարուած է, մէկ թեւօք թռչուն չը թռիր։

Ճշմարիտ հաւատոյ վրայ խելահաս չըլլալով շատ մարդիկ լոկ մարմին հանդիսացան նախապաշարուելով, ոմանք ալ մարմնի մէջ անմարմին հոգի մ՚ըլլալ մոռաբերեցին։

Սակայն այս երկու կերպ նախապաշա-

րումէն ալ հաւատոյ թերութիւն և զանազան բաժանումներ տեղի գտան քրիստոնէից մէջ ։

Իսկ այսպիսի չփոթութիւնները Հայաստանեայց առաքելական եկեղեցին չի մտնելով. պարզապէս կը հաւատայ ըստ « Հանգանակին Նիկիոյ » որ պարունակած է խորհուրդ ամենասուրբ երրորդութեան և անկեղծ վարդապետութիւնք, քրիստոնէական եկեղեցւոյ, նաեւ յարութիւն մեռելոց և վերջին դատաստան ։



# ԳԼՈՒԽ Բ.

## ԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ

### ԴԱՍ Ե.

1. — Աստուած ի՛նչ է, ի՛նչպէս կը ճանչուի։ 2. — Ո՞ր աստիճան կրնանք բացատրել։ 3. — Քանի՞ կերպ գոյական կայ, ի՛նչ է էութիւնը. քանի՞ տեսակ մարմին կայ։ 4. — Բանական հոգին ի՞նչ է. ի՛նչէն գիտենք թէ հոգի կայ, 5. — Անասունք ալ երբեմն մարդոց պէս ի՞նչու կ'զգան։ 6. — Արարածոց բացատրութենէն Աստուծոյ գոյութիւնը ինչպէս կրնանք հետեւցնել։

*1. — Նիկիական հանգանակը՝* «ՀԱՒԱՏԱՄՔ ԻՄԻ ԱՍՏՈՒԱԾ» *ըսելով կըսկըսի, որ ամէն քրիստոնէի պարտք է հաւատալ նախ թէ՝ Աստուած կայ, հոգի է և մէկ է. ասկէ անդին անճառելի է։*

*«Աստուած կայ» ըսելով նախապէս անոր գոյութիւնը կ'իմացուի որ կայ ըսել է։*

*Կայ, ըսելով մենք Աստուծոյ վրայօք պէտք է իմանանք միշտ գոյ ըլլալ, ; եւ թէ ալ անճառելի է անոր գոյութիւնը։*

Մարդ մը մինչեւ աչքին զօրութիւնը հասած տեղը կրնայ նայիլ, բերանը չի սղմուած պատառը կխելով կը ծամէ, նաւակ մը կամ կառք մը ալ չկրցած կրած անձը կամ բեռը կտոր կտոր կը տանի, նոյնպէս երրորդութեան վրայ գրողներն ալ երբոր ըլլայ բաժանումներով, կամ երբեմն փիլիսոփայօրէն առնելով մարդոց մտքին ըմբռնելիքին չափ բան, հազիւ կը համարձակին գրելու, անոր համար « գոյութիւն. էութիւն. բնութիւն » ըսելով, և երբեմն թանձրացեալ և երբեմն վերացեալ գործածելով, Աստուծոյ տուածին չափ կրնայ ճառուիլ աստուածաբանօրէն։

2. — Շատ բաներու գոյ, կայ կըսուի, բայց, և ո՛չ մի բան Աստուծոյ պէս գոյ է։

Արարածներուն մէջ ամենէն գերազանցը մարդն է, բայց անոր ալ աչքի տեսնուած մասը օր մը անշուշտ չկայ ըլլալուն համար գոյութեամբ ստոր կը մնայ, զի չ'կայութիւն մը կը հասնի վրան, նոյն իսկ միշտ կայ եղած մասը, այն է հոգին, իւր սկիզբը Աստուծմէն առնելուն պատճառաւ Աստուծոյ գոյութենէն ստոր կը մնայ։ (1)

(1) Շատ բաներու բարի կըսենք, բայց բնաւ բան մը Աստուծոյ պէս չէ, մարդը կը մեռնի, արեւ եւ լուսին կը խաւարին, բոլոր արարածք փո-

3. — Ըստ իմաստասիրաց երեք կերպ գոյական կրնանք մտածել, Անձ . Իր . Էութիւն ։

Անձնական մարմին են ամեն գոյականներ՝ որ կը շարժին կը տեսնուին, և կ'ըմբռնուին, ինչպէս մարդ . ձի . ճճի . հաւ ևայլն ։

Իր են՝ որ կան և կը շօշափուին . բայց իրենք իրեցմէ չեն կրնար շարժիլ ուրիշ գոյականէ մը առանց միջողական զօրութեան ։

Էութիւնը այն է՝ որ կայ և չ'տեսնուիր, ինչպէս Աստուած , հոգի , հրեշտակ և սատանայ ։

Կան տեսակ մը էակներ ալ , որոնց ըզգալի կ'ըսենք . որք կ'զգացուին հոգւոյն միջոցաւ մարմնոյն մէջ , ինչպէս ցաւը գիտենք որ կայ , բայց չենք կրնար տեսնել ։

Էութիւն մը գոյութեան մէջ կայ է , բայց առանց էութեան լոկ գոյակ մը էութիւն չէ , ինչպէս մարմինը գոյակ մ'է , հոգին անոր մէջ անտեսանելի կերպով կայ է . իսկ քար , ծառ , փայտ լոկ գոյակ են ։

Ծառերու մէջ ալ տեսակ մը կայութիւն կ'ընշմարուի , բայց էութիւն չէ , այլ ոգի ա-

---

փոխական են , անայլայլելին մի միայն Աստուած է , անոր համար « չիք ոք բարի, բայց միայն Աստուած » կըսէ Քրիստոս .

ճեցական, որ Ջուրէն կախեալ է, զի գոյութեան շարժում տուողները երեք կերպ են, այսինքն բանական հոգի, շնչաւոր ոգի, աճեցական ոգի։

Բանական հոգին էութիւն է, զի միշտ կայ սկզբնաւոր իսկ անվախճան, որ իւր ընկերը Աստուծմէն կ'առնէ, իսկ շնչաւոր, աճեցական ոգիները չկայի պէս են, վասն զի տունկերու մէջ գտնուած ոյժը խոնաւութիւն և ջերմութիւն են, ասոնք ալ թէեւ կան ու չեն տեսնուիր բայց դարձեալ թափանցիկ մարմիններ են և ոչ թէ էակներ, զի ջուրը գիտենք թէ մարմին է նուրբ և վայրահեղուկ, և տարածական, շունչը թէեւ անձերու մէջ է, իսկ անբան ըլլալնուն համար, ոչ թէ կատարեալ, իսկ և անկատար. ոչ թէ հոգեւոր այլ շնչաւոր են, որ ըսել է, գոյակ ըսելով էակ ալ չէ. իսկ էակ ըսելով գոյութիւնը հեռու է։

— Ամեն էակներ մարմին չեն, իսկ լոկ գոյակներ մարմին են։

Մարմինը երկու տեսակ է, թանձր և նուրբ, ինչպէս ծառ, քար, փայտ, հող, թանձր են. օդ, ջուր, լոյս նուրբ են. նոյնպէս վերացեալ բառեր կան, որ իբր էութիւն կ'առնուին. ինչպէս, ջերմութիւն, ցրտութիւն։ [1]

(1) Ասոնք ալ դարձեալ ծաւալական են, զի.

Բանական հոգին գիտենք որ կայ, բայց չի տեսնուիր և ձեւի տակ ալ չիյնար, զի պարզ է, ոչ թթու և ոչ կծու համ, ոչ ապականելի յատկութիւն ունի ոչ ջուր, ոչ խոնաւութիւն ոչ ալ ջերմութիւն կամ օդ է՝ որ ձեւի տակ մտնէ, ոչ ալ, շունչ է լոկ, որ դարշահոտութիւն մը զարնէ, անոր համար պարզ էակ ըսելով պէտք է հոգի իմանանք։

Հոգիին կարողութիւնները անոր գոյ ըլլալը կ'ապացուցանեն, անոր այնչափ կարողութեամբը կայ ըլլալը երեւան կուգայ, որով կը խորհինք, կերեւակայենք, գլխաւորաբար կը խօսինք, որով բանականութեամբ սեռօրէն առնուած կենդանի բառէն, որ ա-

---

ջերմութիւն եւ ցրտութիւն իրարու դէմ գալով ձայն կուտան, իրենց գտնուած տեղոյն համեմատ ձեւ կառնեն, օրինակի համար ըստ բնագիտաց խաչաձեւ երկաթի մը մէկ ծայրը կրակին մէջ որ խոթես, չորս կողմն ալ տարածելով ամեն մէկ կողմը կը ծաւալի, ըսել է ջերմութիւնը խաչի ձեւ առաւ, ջուրը ինչ ձեւ ամանի մէջ որ սառեցնես, այն ձեւը կ'առնու. Նոյնպէս օդն ալ մարմին է եւ կ'ընդդիմաչարէ. դաւաթ մը դէպ 'ի վար ջուրը որ խոթես, տակը փակած թուղթը չի թրջիր, զի օդը դէմ կը կենայ, մէկ կողմը որ ծակես օդը կը պարպի եւ կը թրջէ թուղթը, նոյնպէս լոյսն ալ իր անցած տեղին համեմատ ձեւ կ'առնէ, որ աս ալ մարմին ըսել եղաւ, ըստ այսմ գոյական է։

մեն կենդանեաց հասարակ է, տեսակի կը վերածուի, «ԲԱՆԱԿԱՆ ԿԵՆԴԱՆԻ» անունը առնելով, որ յատուկ է մարդկային ազգին, և անդրադարձ սահման, որով գրեթէ կը հրաշագործէ մարդը ։

Օրինակի համար, մի քանի լեզուէ գիտցող մարդումը իր մէջ ամփոփած բառերը փորձի համար թէ որ հաշուի առնել հարկ լինի երեք չորս հազարէն աւելի կըլլայ, և Աստուածաշունչի մեծութեամբ գիրք մը կրնայ կազմուիլ, արդեօք այդ մարդը, այս բառերը մի առ մի լսելով ըղեղէն ո՞ր տեղը ամփոփեց, որ բանական հոգւոյն գործն է, ոչ թէ հողակոյտին. նաև մարդս հոգւոյ կարողութեամբ անցեալը կը յիշէ, ապագային վրայ կը մտածէ, հոգին մէկ քանի րոպէին մէջ շատ տեղեր կրնայ պտըտիլ, և շատ մարդ տեսնալ, նոյն իսկ քունի մէջ եղող մարդումը քով արթուն մարդ մը կը տեսնայ որ այն քնացողը ինքն իրեն կը խօսի, նաև կը խընդայ, շարժումներ կընէ, երբեմն ալ կը վազէ, բայց չգիտեր թէ քովը մարդ կայ, զի այն գործերը հոգւով կընէ, իսկ հոգին մարմնոյ մէջ ըլլալով քովը եղողը չտեսնար, որ ըսել է հոգին արթուն է, քնացողը մարմինըն է ։

Նաև հոգւոյ կարողութեամբ մարդիկ

բնութեան գաղտնիքը գտան, երկինք և երկիր գրեթէ կերպով մը չափեցին, ամէն խոտերու և տունկերու մէջ եղած բնութիւն ճանչցան, ակնթարթ վայրկենի մէջ հեռաւոր տեղեր հեռագրեցին, թռչունի պէս օդին մէջ սլացան, որք հոգւոյ կարողութեան գործեր են, ոչ թէ մարմնոյն, որուն մէջէն հոգին հեռացածին պէս կընայիս աչք, ականջ բերան, ամէն զգայարանք կան, չ'կայի պէս, զի մէջերնուն կայութիւն մը պակսած է, ու այն ատեն վրան նայելու ալ կը խոժոռինք:

2. — Անասուններն ալ ցաւ կ'զգան, հաճութեան տհաճութեան նշաններ ցոյց կուտան, իրենք հատուտելիքներով ուտելիքնին կը ճանչնան, չ'հաճածնին չեն ուտեր, կամ թէ լսելու տեսնելու և ուժի մասին և կամ հոտոտելու մասին, մարդէն շատ առաւել են, իսկ երբոր կարգը խօսելու և խորհելու գայ, այն ատեն յայտնապէս մարդէն շատ ստոր կը մնան, ուրկէ կիմացուի թէ ինչպէս ոգի ունին, ոչ թէ հոգի, և այն յատկութիւններըն ալ մարդոց համար տրուած է անոնց մէջ, վասն զի եթէ ուղտը բեռնաւորելու հընազանդութեամբ մարդոց առջեւ նստելու յատկութիւն որ չունենար, ո՞վ կրնար զայն բռնաբարել, ձին եթէ սանձի չ'հնազանդէր՝

ո՞վ կը համարձակէր անոր վրայ նստիլ, շունը եթէ հաւատարիմ չըլլար, ո՞վ կրնար զայն գրանը քով կամ հօտին մօտ պառկեցընել, կամ եթէ պառկելէն վերջը գայլը գողը անկէ աւելի հոտ առնէր կամ տեսնար, ու շունը գողէն առաջ չ՚տեսնար կամ հոտը չառնէր ինչ օգուտ էր պառկելէն ։

Անասնոց յատկութիւնները թուելու պէտքութիւն մը չունինք, այլ բաւական է որ գիտնանք թէ անասունները բանականներու ծառայելու յարմարութիւն ունենալու համար այն յատկութեամբ ստեղծուեր են արարչապետէն։

Շատ փիլիսոփաներ արարածներուն վըրայ միայն նայելով զԱստուած ճանչցան, այնպէս որ արտաքական ջերմութիւնը այս ինչ բանը կը գործէ, կամ այս ինչ տարրը այն ինչ յատկութիւնները ունի, բայց այն յատկութիւնը ինքնիրէն չըլլար, այն տարրոց մէջ ուժը դնողը Աստուածն և արարիչն է ։ Երբ որդի մը կը տեսնանք, կը նայինք և գիտենք որ հայր մը ունի, նոյնպէս երբ արարածոց վրայ կը նայինք գիտենք որ արարիչ մ՚ալ ունի ։ Արեգակը իւր լուսովը և ջերմութեամբը և մեծութեամբը ինչպէս որ բոլոր թանձր ու-նաւոր մարմինները կը գերազանցէ, նոյնպէս մարդն ալ իւր բանականութեամբը բոլոր արարածները կը գերազանցէ ։

6. — Մարդը՝ որ անասուններէն և անբաններէն գերազանց է, չի տեսնուած մասին, այսինքն; հոգւոյն ուժովը է, քանի որ մարդուս հոգին արարած է, և գերազանց քան զամենայն արարածս, ուրեմն անոր ընողն և արարիչը հոգի է, վասն զի չտեսնըւիր, ինչպէս որ մարդուս հոգին կայ և չտեսնըւիր, էութիւն ալ է ուրեմն հանդերձ գոյականութեամբ, քանի որ արարեալ էակ մը կայ ուրեմն արարիչն է գերագոյն էակ. Նաև քան զյաւիտենաս անսկիզբն և անվախճան, ուրկէ կ'իմանամք թէ՝ Աստուած կայ, հոգի՛ է և մէկ է, գերագոյն էակ, և ինքն է էակն էից; միակ գոյութեամբ, ինքնագոյ յանէից, անտեսանելի, անիմանալի, անճառելի, մի բնութիւն մի Աստուածութիւն, զի ամենայնիչին արհեստի մը մէջ անգամ երկու կերպ բնութիւն երբոր կը ներհակին, ուրեմն ահոգւոյն և ազանցելի արարչագործի մը մի բընութիւն և մի Աստուածութիւն կը վայելէ անայլայլելի գոյութեամբ։



# ԴԱՍ Զ.

## ԷՈՒԹԻՒՆ, ԲՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԳՈՅՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ

1. — Էութիւն ի՞նչ ըսել է։ 2. — Բնութիւնը ի՞նչ է. անփոփոխ կրնա՞յ ըլլալ բնութիւնը. գոյութեան համար ի՞նչ պէտք է։ 3. — Գոյութեան ի՞նչ կըսուի։ 4. — Էութենէն ի՞նչպէս գոյութիւն կը հետեւի։

1. — Աստուծոյ էութիւնը արարածներուն վրայ անգամ մը նայելով սորվեցանք։ Էութիւն, որ գոյութեան արմատ ըսել է, ամէն բան անով է որ կ'ըլլայ, անոր համար Աստուծոյ գերագոյն էակ կ'ըսենք, ուրիշէ մը անոր բան մը չ'անցնիր, իսկ անկէ ուրիշին բան մը անցնելուն համար միւսները կարեւէ էակ են։

Կարելի էակէն յեղեղութիւն, արարածոց կը վերաբերի, բայց Աստուծոյ վրայ յեղականութիւն ուրիշէ մը չանցնիր զի ըսկզբնապատճառ է։

2. — Բնութիւնն ալ գոյութիւն մ'է, որ միտքի մէջ կը կայանայ, գործողութիւն մը իւր սկիզբը բնութենէն կ'առնու, որով կը մղուի

'ի գործ գալու գործողէն գործողութիւն մը, որ կ'ըլլայ, բնութիւն, բուն 'ի բնէ։

Էութեան անփոփոխութիւն և անայլ-այլութիւն միակ Աստուծոյ համար յատուկ է, որ արմատէն բունին, և բունէն արմատին կը յաճախէ անդրադարձութեամբ և գոյա-ւոր կերպով, որ ինքն իրեն կը կենայ։

Գոյութիւն՝ չկայէն կայ եղածին կ'ըսուի, իսկ Աստուծոյ գոյութեան պատճառը ինք-նագոյութիւնն է, որուն համար չ'ճառուիր միայն «անսկիզբն և անվախճան գոյութիւն» կ'ըսենք Աստուծոյ, որ ուրիշի գոյութեան մը պէտք չունի։

Մարդ մը գոյ ըլլալու համար, մարմին հոգի, միտք, կամք պէտք է հետեզհետէ, ասկէ զատ երկրորդական գոյութիւն, կամ եկամուտ և կամ եկաւորական մը կը գտնուի իբր ածական անոր գոյութեան վրայ, այն է, ուրախութիւն, տրտմութիւն, փառք ևայլն, որ ըսել է մարմին մը կայ կըլլայ գոյաւորու-թենէ մը յառաջ գալով գոյացութեան են-թակայ։

Մարդս՝ գլուխ, ձեռք, ոտք ևայլն ան-դամներ կունենայ պատճառաց պատճառին տուած զօրութեամբը, մերձաւոր պատճա-ռի մը միջոցաւ, յաջորդական սերմնապա-հութեամբ, իսկ գոյութիւնը առանց էու-

թեան անբան մնալուն համար. Աստուծմէն զատ ուրիշին պէտք չունի, թէ որ ունենալ կարելի ըլլար, բնութեան գաղտնիքէն շատ մը բան գիտցող գիտուններ, մարդը չէին մեռցներ, նոյն իսկ իրենք չէին մեռնիր դեռափիթիթ հասակի մէջ շատ անգամ։

3. — Գոյութիւն մը ինքը շատ անգամ միակ մնալուն համար լոկ գոյական կ'ըսենք, ինչպէս՝, քար, փայտ, տախտակ ևայլն։ Որոնք անձի մը հետ չեն կրնար վարուիլ. իսկ Աստուած նախապէս էակն յանէից ըլլալուն համար, գոյ ըլլալը գիտենք, անոր համար գոյութիւն կ'ըսենք, եթէ ոչ անոր գոյութիւնը անճառելի է, անոր գոյութիւնը բանէ մը չառնուր իր սկիզբը, այլ բնութեամբ գոյ է, յէութեան իւրում, և անկէ գոյ եղան, ամէն և բոլոր էակներ ու գոյակներ, երեւելիք և աներեւոյթք։

Ասոր համար Նիկիական հանգանակը նախապէս մէկ Աստուած կը հաւատայ «արարիչ երկնի և երկրի երեւելեաց և աներեւոյթից»։

4. — «Աստուծոյ էութիւնը» որ չ'ըմբռնէինք գոյութիւնը չէինք կրնար ըսել. գոյութիւն որ չըսէինք բնութիւնը չէինք կրնար ըսել, զի երեք յատկութիւնը մէկ Աստուածութիւն են, նոյնպէս այս երեքը Աստուծոյ վրայ մեր

խելքին համաձայն աւելին անճառելի է, այն է՝ էութենէն գոյութիւնը գոյութենէն բնութիւնը ինքնագոյութիւն կը հասկնանք, Աստուծոյ գոյութեան պատճառը՝ ինքնագոյութիւնը հաւատալով, այս երեք յատկութեամբ միութիւն կը սորվինք, այսինքն ինքնագոյ, ինքնակամ, ինքնիշխան, ինքնազօր բնութիւն, որուն համար « Աստուածային անձինք ըսելու » վախցած չեն աստուածաբանք, եթէ ոչ ուրիշ պատճառաւ գոյութեան մը մէջ անայլայլելի բնութիւն չկրնար ըլլալ, անձերու մէջ եղած թէ բնութիւն, թէ գոյութիւն այլայլելի կըլլան՝ ինքնագոյ չըլլալնուն համար, բայց Աստուածային Անձ՝ որ ըսենք, նորէն մեր խելքէն վեր է, ապա Անձինք որ ըսենք վեր 'ի վերոյ վեր, բայց Աստուածաբանօրէն Աստուածային գիտութիւն սորվելու պարտք ունենալնուս համար չի կրցած հասած քաղաքնուս քիչ մը այս կողմը օթեւան բռնելու կը ջանանք, այն պատճառաւ նախ կը սորվինք էութիւն Աստուծոյ, Բ. էութիւն որ ըսենք գոյութիւնը կրնանք ըսել, Գ. անոր էութենէն ու գոյութենէն վերջ, որ ուրիշէ մը չառնելով անսկզբնական կերպով իրարու պատճառ իրենք են, նոյնպէս Աստուածային գոյութեան համեմատ էութիւն, էութեան համեմատ բնութիւն, բնութեան համեմատ անձ-

*նաւորութիւն կրնանք նկատել, ու ըմբռնել, անհամեմատական միութեամբ։*

*Ուստի կարգը կուգայ անձնաւորութեան վրայ ալ խօսելու։*

## ԴԱՍ Է.

### ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԱԾԱՑԻՆ ԱՆՁԱՆՑ

1. — Աստուածային անձնաւորութիւնը ի՛նչպէս կըմբռնենք. քանի՛ են։ 2. — Ե՛րբ յայտնըւեցաւ, ի՛նչ նմանութեամբ կը բացատրուի։ 3. — Աստուծոյ՝ հայր, ըսելով ի՛նչ կիմանամք, ի՞նչ է. եւ ի՛նչ անուն կուտանք. զատ զատ ի՛նչպէս յայտնուեցաւ։

1. — *Որչափ դժուար է, Երրորդութիւն բառին ըմբռնումը, անոր. էութեան և գոյութեան մէջ անայլայլելի բնութեամբ միութիւը չըմբռնողին. իսկ երբոր այդ յատկութեամբ անայլայլելի է, նոյնպէս անձնաւորութեամբ անփոփոխելի կրնայ ըլլալ, որով միութեանը ձախորդութիւն չ՚կար, ինչպէս որ բնութեանըը էութեան, և էութեամբը գոյութեան թերութիւն մը չ՚կայ։*

Աստուածային անձինք երեք են, Հայր, Որդի, Հոգի սուրբ։ Աստուածային անձանց մէջ զանազանութիւն կենալը Աստուածաշունչէն ալ կը սորվինք. «արասցուք մարդ ըստ պատկերի մերում» (Ծննդ. Ա. 26) «Ադամ մեզմէ մէկուն պէս եղաւ «Ծննդ. Գ. 22». «իջնենք ու անոնց լեզուները խառնակենք» (ԺԱ. 7.) մերում, արասցուք, մէնջ, իջցուք յոգնակի բառեր են։ Ամեն քերականութիւն սկսողներ գիտեն, բայց Մարգարէները անգամ չի գիտցան թէ այս յոգնակի նշանակութեամբ առնուած բառերը քանի անձանց կը վերաբերէին. երրորդութի՞ւն էր թէ չորրորդութիւն, մի միայն Աստուածային ազդեցութեամբ անցեալոյն և ապագային վրայ գուշակութիւններ կ'ընէին, և իրենց գուշակութեան մէջ այս խորհուրդը գիտնալու կը ցանկային, բայց չգիտցան, զի ժամանակը հասած չէր, ինչպէս որ Քրիստոս կ'ըսէ «բազում մարգարէք ցանկացան . . . և ոչ տեսին։»

Այս խորհուրդը գրեթէ ամէն ԺԹ. դար առաջ Յորդանանու գետին մէջ, Քրիստոս Յովհաննէս Մկրտչէն մկրտուած ատեն յայտնուեցաւ, աներկբայապէս թէ երրորդութիւն է. զի հայրը վերէն վկայեց, Որդին ջուրին մէջ, Հոգին սուրբ աղաւնակերպ իջաւ, ալ անկէ վերջ Աստուածաբանք համարձակապէս

«Աստուածային անձինք» ըսել սխալ, և հաստատեցաւ հաւատոյ հիմը թէ, Հայրն է ծընող Որդւոյ, և բղխող Հոգւոյն Սրբոյ, ինքն յինքեան անճառապէս ։

Աստուած կայ, հոգի է և մէկ է, մէկ Աստուած մը երեք անձով հաւատալու մէջ շատեր գայթակղեցան, պատճառը իրենց տրուածէն աւելի հասնելու նպատակն էր ։ Ճշմարիտ հաւատացեալ Աստուածաբանք երրորդութեան վրայօք սուրբ գրոց պարզ իմաստէն անդին չանցան, օրինակի համար, էութիւն, բնութիւն և գոյութիւն մէկ ըլլալ անկարելի է փիլիսոփայօրէն, իսկ արարիչ Աստուծոյ համար ալ իր սկիզբը ուրիշէն առնել անկարելի է, զի չկայ ուրիշ որ առնէ, Աստուծոյ բնութիւնը էութեանը, և էութիւնը բնութեան և գոյութեան դէմ որ ներհակ ըլլար, սկզբնապատճառ կամ պատճառաց պատճառ չէր լինէր, նոյնպէս ալ Հայր Որդի, Հոգի, ըսելով թէ որ զատ զատ անձանց հետ զատ զատ ալ բնութիւն ըլլար միաստուածութիւն չէր ըլլար . Աստուածային միութիւնը այնչափ սքանչելի և անճառելի չէր ըլլար, մի միայն ամփոփմամբ կ՛ըլլար իր սկիզբը ուրիշէն չառնելով ինքնագոյ ըլլալուն համար, զի մէկը արդէն ինքնիրեն մէկ է, բայց անոր անճառելի կէտը երեք ըլլալով

մէկ միութիւն ըլլալն է ։ Առանց զաւակի մնալով առանձին մեայ մարդու մը համար ալ միութիւն մ'է, բայց զաւակ ունենալով, հօր մը և զաւկի մը համաբուն, համագոյ ըլլալ անկարելի է, համազօրութիւն բնաւ չըլլար, մշտատեւ համակամութիւն բնաւ չկրնար պատահիլ. իսկ Աստուծոյ վրայ անճառելի քաքանչելիք է, երեք անձինք միով բնութեամբ, այն է՝ համաբուն, համագոյ, համակամ և համազօր, զոր օրինակ արեւին լոյսը, արեւը և տաքութիւնը. կամ թէ խնձորին խնձորութիւնը, համը, դոյնը, մի և նոյն արեւին կամ խնձորին միութիւնը չբաժաներ. խնձոր մը մէկ խնձոր մ'է, համը իւր պաշտօնը ունի, դոյնը իւր, խնձորը կրկին մէկ խնձորն է, խնձորի բնութենէն կ'առնէ համ և դոյն ։

«Հայր» ըսելով՝ իւրմէ որդի ծնելուն նըկատմամբ չենք իմանար հայր, այլ բոլոր արարածներ անկէ դոյ ըլլալնուն համար, հայր կըսենք Աստուծոյ, թէ որ մեր մարմնաւոր հարց արուած անուան համեմատ հասկցուէր, կըլլար որ օր մ'ալ կամ կը մեռնէր, կամ ձեռքը և կամ խնամքը մեզմէ կը բառնար, անհայր կը մնայինք, իսկ արարածը արարչին հետ առնչութիւն ունի, քանի որ մէկը միշտ կայ՝ միւսն ալ պէտք է ըլլայ, միշտ կենալու.

համար ալ Աստուած արարածոց մէջէն մաս մը ընտրած է, որ յարմարութիւն ունի միշտ կենալու, այն է հոգիներ, որ ըսել է գլխաւոր առանձնութիւնը հոգիէն հոգիին է, ուրկէ կրկին կը հետեւցնենք թէ Աստուած հոգի է, հոգին պարզ և միակ կը մնայ, անկէ զուգաւորական օրէնքով որդի մը ըլլալ չըլլար; այլ բոլոր հոգիներ անկէ սկիզբ առնելնուն համար, մէկ ու հոգիներու նկատմամբ հոգիներու արարիչին Հայր ըսել խելքերնիս հազիւ հազ կրնայ հասնիլ, անոր համար Քրիստոս իւր մարդեղութեան նկատմամբ ինքն ալ Հայր ըսաւ, մեզի ալ «Հայր մեր» ըսել սորվեցուց։

Ամենակալ Հայր է Աստուած. Տիեզերակալ, Աշխարհակալ մինչեւ անգամ ինքնակալ անուն կուտանք աշխարհիս վրայ միապետութիւն վարող թագաւորաց, իսկ անոնք ամենակալ չեն, զի օր մը կամ կը մեռնին, կամ կենդանի եղած ատեննին անգամ տեղւոյ մը կը տիրեն տեղի մը չեն կրնար տիրել, կամ երկնից բնաւ չեն կրնար տիրել, այլ Աստուծոյ տիրապետութեան տակ են. ոչ մարդ, ոչ հրեշտակ և ոչ արարած կրնայ չեղել, որ ըսել է, Աստուած ոչ մարդ է, և ոչ հրեշտակ է, և անոր հոգի ըլլալը գիտնալէն անդին ինչ կերպ ըլլալը ոչ ոք կրնայ իմանալ; անոր համար Ամենակալ է, արարիչ երկնի և

երկրի երեւելեաց և աներեւութից։

Ամենակալութենէն առնելով երբայեցիք Էհովահ կըսէին, որ զօրութեամբ ամեն տեղ ըլլալ կը նշանակէ, Մովսէս մարգարէին «ես եմ Աստուած որ էն» ըսաւ (Ելից. Գ։ 14) որ էութեամբ անպարագրելի ըլլալ կը նշանակէ, անբաւելի և անքանակապէս։

Էութեամբ անպարագրելի և զօրութեամբ ամեն տեղ եղող արարչի մը փոփոխութիւն չըլլար, այն է՝ ուրախանալ, տրտմիլ, ննջել, արթուն մնալ, լուսանալ, մթանալ, կամ ծերանալ, որ կարող ըլլայ ամենակարողութեամբ երեւելի և աներեւոյթ արարածները կառավարել, որք ամեն ակնթարթ վայրկեանի մէջ կառավարութեան պէտք ունին։ Այս յատկութեանց նկատմամբ հայր կըսենք, ինչպէս որ խնձորին, գոյնին և համին միապէս խնձոր կըսենք, ան ալ խելքերնիս հասնելու համար, եթէ ոչ Աստուած աննման է։

Այս երեք անձինք՝ ինչպէս որ գոյութեամբ, էութեամբ և բնութեամբ համազօր են, անձնաւորութեամբ ալ այն համեմատութեամբ զանազան են, անձնաւորութեամբ որչափ որ զանազան ըմբռնէ մեր միտքը և գաղափարը, միաւորութեամբ ալ պէտք է նոյնպէս լծորդել թէ Աստուած մէկ է երկուք չը կրնար ըլլալ։

Ամենասուրբ երրորդութիւն ըստ բնութեան հոգի է և մի է, բայց նախընթացին համեմատ, Հայր, կըսենք. ինչպէս որ արեւին արեւ կ'ըսենք, անկէ լոյս մը գալով մեզի խաւարէն կ'ազատէ, անկէ եկածին ալ եկած տեղւոյն նկատմամբ լոյս կ'ըսենք. այն լոյսը արեւ է արեւն ալ լոյս է, անոր համար Աստուծոյ բանը մեր մէջ եկաւ, երկինքը գետինը չի պարագրուողը մարմնոյ մէջ պարագրըեցաւ, անպարագրութիւնը պարագրականնին հետ բաղդատելով, հօր մը և որդւոյ մը բաղդատութեան պէս կընայ ըմբռնել մեր միտքը, անոր համար Քրիստոս բսաւ «Հայրս ինձմէ մեծէ» եթէ ոչ Հայր և Որդի նոյն և նման են ինչպէս որ արեւ և լոյս։

Արեւը լոյսէն՝ լոյսը արեւէն չը բաժնըւիր, նոյնպէս ջերմութիւնն ալ անոնց երկուքէն չի բաժնուիր. այնպէս է սուրբ Հոգին ալ, ինչպէս որ արեւը մէկ է, լոյսը զատ է, ջերմութիւնը զատ է, նոյնպէս Աստուած մէկ է, որդին զատ է, հոգին զատ է, մեր խելքին համեմատ, զի նախ ստեղծուեցանք մեր Ամենայ հայրը ճանչցանք զԱստուած, մեղանչելով խաւարի մէջ մնացինք, անոր Բանը կամ լոյսը եկաւ, մեզ խաւարէն ազատեց, որդի Աստուծոյ անունը առաւ. Հոգւոյն մէջ պայմնացինք, անոր ջերմութիւնն ալ տուաւ ։

այսինքն Սուրբ Հոգին Աստուած և անոր շը-նորհաց կրակը, որ հաւատացինք Հայր; և Որդի և Սուրբ Հոգի, երեք անձինք և մի բը-նութիւն:

Հայրը ինչ որ Հրամայէ, մի և նոյն ակըն-թարթի մէջ Որդին և Հոգին ալ, նոյնը հրա-մայած են. համադոյութիւն և համակամու-թիւն է: Ինչպէս որ արեւը ծագած վայրկեա-նին լոյսը և ջերմութիւնը նոյն րոպէին կը հա-նին, թէ որ սառուցիչ ամպը դէմ չելնէ, թէ որ ամպը դէմ ելնէ ալ, արեւը արեւ, լոյսը լոյս, ջերմութիւնը ջերմութիւն է դարձեալ, բայց մենք անոր ջերմութենէն կը զրկուինք, ինչպէս որ մեղօք շնորհքէն կը զրկուինք:

Քրիստոս լոյս եկաւ աշխարհի մէջ, Հո-գին սրբիչ և մաքրիչ, Հայրը վաղուց արարիչ. զանազան ժամանակներու մէջ զանազան պաշ-տօններով յայտնուեցան; այլ վասն զանազա-նութիւն անձանց հաւատալ կը սորվինք սուրբ գրքէն, և Յորդանանու մէջէն առինք հաւա-տոյ խոստովանութիւնը (Մատթ. Գ. 16.: Ա. Յովհ. Ե. 6—7):

## ԴԱՍ Ը.

### ՄԱՐՄՆԱՌՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԱԾՈՐԴՒՈՅՆ

1. — Քրիստոս ի՛նչու համար աշխարհ եկաւ. ի՛նչու պատկերի ներքեւ եղաւ ։ 2. — Մարմին առնելէն յառաջ Քրիստոսի ի՛նչ կըսուէր. եւ վերջը ի՛նչ ըսուեցաւ ։ — 3. Յիսուս ի՛նչ ըսել ի՞նչու համար Մեսիա, Օծեալ, Էմմանուէլ, անուն կուտանք ։ 4. — Մարգարէք ի՛նչ աստիճանի մէջ գուշակեցին. ի՛նչ է հրաշքը ։ 5. — Քրիստոս քան մարդկութեան արարա՞ծ է. թէ ո՛չ. մարմին որ չ'առնէր չէ՞ր կրնար փրկել ։

*1. — Հաւատքով թերի մարդու մը համար «Աստուած երեւեցաւ» «Աստուած խօսեցաւ» որ ըսեն, միշտ կասկածի մէջ է, իրօք Աստուած մարդու չ'երեւնուեցաւ, մարգարէ մը անգամ զանի չ'տեսաւ, (Յովհ. Ա. 18., Ա. Տիմ. Զ. 16., Ա. Յովհ. Դ. 12.) Նաեւ սուրբ գրոց մէջ «Աստուած զղջացաւ» «Աստուծոյ ձեռքը» Աստուծոյ աչքը կ'ըսէ, իսկ Աստուած ո՛չ կը զղջայ, ո՛չ ձեռքը մարդ գիտէ, ոչ ոտքը, ոչ ալ ձեւ կ'առնէ. զի Հոգի է. Թէ որ ձեռք ըսենք բոլո-*

րովին ձեռք է, թէ որ ոտք ըսենք բոլորովին ամենագնաց է անճառապէս, թէ որ աչք ըսենք բոլորովին ամենահայեաց է, իսկ մարդիկ մարմնաւոր ըլլալնուն համար սուրբ գիրքը շատ անգամ բնութեան և խելքի մօտ կը խօսի, զի Աստուծոյ գլխաւոր գործը մարդոց հետ է, մարդասէր է քան հրեշտակասէր, զի մեղանչող հրեշտակաց փրկութիւն չխոստացաւ, իսկ մարդոց համար այցելութիւն և փրկութիւն։

Աստուածաշունչ գիրքը առաջէն մինչեւ վերջ դարձնելու որ ըլլանք, Աստուած մարդոց փրկութիւնը կարծես իրեն զբաղմունք ըրած է, զի հրեշտակները մարդերէն առաջ անյայտ ժամանակի մէջ ստեղծած ըլլալը սուրբ գիրքէն կը սորվինք, որոնք հրանիւթեայ էին, բոլորովին հոգի։

Աստուած պատկերի նմանակայ չէ, բայց Քրիստոսի մարդեղութեան նկատմամբ, մարդուս պատկեր Աստուծոյ կըսուի, ինչպէս որ Աստուած ստեղծած ատենը ըսաւ, «Արասցուք մարդ ըստ պատկերի մերում։»

Մարդն առաջին ինչ պատկերով որ ելաւ դրախտէն, Քրիստոս ալ իբր երկրորդ Ադամ նոյն պատկերով զայն փնտռելու եկաւ, առաջին Ադամ 'ի շունչ կենդանի, երկրորդն 'ի հոգի կենդանարար (Ա. Կորնթ. ԺԵ. 45)

որպէս զի իւր կորստին մի նմանութիւնը հետը լինի որ դիւրին ըլլայ գտնելու, կամ այս կորուստը քուկդ չէ ըսող չկրնայ ըլլալ:

2. — Մարմին առնելէն առաջ Քրիստոսի ԲԱՆ կ'ըսուէր (Յովհ. Ա. 1.) զի Հօր Աստուծոյ ծոցն էր, մարմին առնելէն վերջ, ՄԻԱԾԻՆ ՈՐԴԻ ըսուեցաւ, զի անկէ առաջ կամ վերջը անկէ զատ Որդի մը չ'կար Հօր Աստուծոյ հետ արարչակից. ԲԱ՛Ն, ՄԻԱԾԻՆ ՈՐԴԻ, ԱՆԴՐԱՆԻԿ, անոր մէկ հատիկ ըլլալուն համար կ'ըսուի: ՅԻՍՈՒՍ, ՔՐԻՍՏՈՍ, ՄԵՍԻԱ, ԷՄՄԱՆՈՒԷԼ, Աստուծոյ Որդւոյն Փրկիչ, և փրկութիւն ըլլալու վերաբերեալ խօսքեր են, որ կանուխէն մարգարէները գուշակեցին:

3. — ՅԻՍՈՒՍ, Եբրայեցրէն Փրկիչ ըսել է, Քրիստոսի յատուկ, զի շատ մարգարէ շատերուն փրկութեանը պատճառ կ'ըլլան շատ անգամ, բայց բոլորովին չեն կրնար ըլլալ. կամ մարմնաւոր վտանգներէ զերծ պահելն ալ փրկել է կերպով մը, իսկ առժամանակեայ է, յաւիտենական փրկիչը միայն Քրիստոսն է, որ Քրիստոս կամ Մեսիա ալ Եբրայեցւոց բառ է ՕԾԵԱԼ նշանակութեամբ: Այս օծեալ անունը շատ մարգարէներու, թագաւորներու, քահանայներ-

րու տրուեցաւ, բայց Քրիստոսի յատկապէս. զի անոնք իրենց օծումը ուրիշի ձեռքով կառնէին, իսկ Քրիստոս Հոգին Սուրբէն ինքնիրեն օծեալ (Ղուկ. Դ. 18.), Էմմանուէլ դարձեալ Երբայեցւոց բառ է, Աստուած մեզի հետ ըսել է։

4. — Մարգարէք Երրորդութեան խորհուրդին մեզի չափ խելահաս չէին. բայց Աստուծոյ մարդոց հետ ըլլալը մեզմէ շատ լաւ գիտէին գուշակութեամբ և Աստուածային անուններ, ուստի յայտնի է թէ Էմմանուէլ անունը յատկապէս Քրիստոսի մարմին առնելով մարդոց մէջ երևնալուն ըսուեցաւ։

Քրիստոսի ծնունդը Աստուածային հրաշալիք է, որ բնութեան դէմ է; զի Աստուածային հրաշքը բնութեան դէմ է, իսկ խելքի դէմ չէ, մարդ մը հաստատուն և կենդանի հաւատք ունենալու համար Աստուածային հաւատոյ և հրաշալեաց խելք բանեցնելու է նախապէս, զի բանական հոգին մարդուս մէջ հրաշք մ'է, մարդուս հոգւոյն կարողութեամբ գործածները հրաշքներ են. աշխարհիս տարերց միջոցաւ կառավարուիլը; երկնային մարմիններու ընթացքները, բնութեան մէջ գտնուած ոյժը զորս Աստուած դրած է, մարդոց՝ բնութեան վրայ խելք բա-

նեցներնին բոլորն ալ հրաշքներ են ; թող թէ սուրբ գրոց մէջ տեսածներդ, որ ըսել է առանց գիրքեր կարդալու անգամ մենք աչքերնիս մեր հոգւոյն կարողութեան և արարածոց վրայ որ դարձնենք, ալ բնութեան դէմ եղած Աստուածային հրաշքները մեզի համար խելքի դէմ չեն ըլլար, Աստուծոյ քով անկարելի բան չ'կայ ։

5. — Բնականապէս ամեն ծնունդ արարած է, իսկ Աստուածային հրաշալեօք Քրիստոսի ծնունդ արարած չէ, այլ «Աստուած յԱստուծոյ, լոյս 'ի լուսոյ ; Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ ծնունդ և ոչ արարած, նոյն ինքն 'ի բնութենէ Հօր» . Ներհակ բնութեան անհայր 'ի մօրէ ; «ծնաւ կատարելապէս 'ի Մարիամայ սրբոյ կուսէն ։

Ադամ նախ հողակոյտ ապա շնչաւոր և հոգեւոր, ազատ կամօք, չարն ու բարին ճանչելու հոգին Աստուած փչեց անոր ։ Իւր պատկերը կորոյս դրախտէն, այն պատկերով պիտի գար, այն ազատ կամօք կորուսածը փնտռելու ։

Մարդն իւր սկիզբը Աստուծմէն առնելուն համար, Աստուծմէն շատ ստոր է, անոր համար Աստուծոյ մարդեղութիւնն ալ մեղքէ ազատ պէտք էր որ մեղքի մէջ եղողները կարող ըլլար ազատելու ։

Ապստամբ ժողովուրդի մը վրայ բնականապէս այն ժողովուրդէն գիտցող զօրագըլուխ մը որ ըլլայ, դիւրին է յաղթութիւնը. Քրիստոս ալ այն ժողովուրդին ցեղէն մարմին առաւ այն ժողովուրդին յարմարեցաւ բաց 'ի ապստամբութենէ ; այն է՝ բաց 'ի մեղաց, որով դիւրին յաղթեց :

Քրիստոսէ մարմին առնելը ժողովուրդին կորուսածը ջնջելուն էր, որպէս զի խըրատէ, յանդիմանէ, վախցնէ, յորդորէ, իւր արիւնը թափէ՝ որ անոնք հնազանդին առանց ջարդուելու, եթէ ոչ մէկ հրեշտակով մը կրնար ջարդել և կամ ազատել, ինչպէս որ Սոդոմ Գոմորը ջնջեց, Ղովտը ազատեց :

Աստուած ինքը մարդոց ինչ որ պիտի ընէր, հրաշքով ըրաւ, բնութեան դէմ ու խելքի մօտ, մարդիկ ալ իրեն հետ ինչպէս որ պիտի վարուէին բնութեան ու խելքի մօտ կերպով շարժիլ սորվեցուց : Ադամին ապըստամբութեան ու չափազանց փառասիրութեան յանդիմանութիւն ըլլալու համար, քարայրին մէջ ծնաւ, ՆԱԶՈՎՐԵՑԻ կանչուեցաւ :

Աստուած զԱդամը վեցերորդ օրը ստեղծեց, դրախտը ժառանգելու, «ըստ պատկերի մերում» ըսելով, որ ըսել է հա յատկապէս մարդը Աստուծոյ համար յաւի-

*տեսնական փառաց մէջ ստեղծուեր է, ազատ կամօք ։*

*Երբոր մեղանչեց, ըսաւ Աստուած, « Ադամ չարին ու բարին գիտնալու համար մեզմէ մէկուն պէս եղաւ », այն կէտին ալ իր կանխագիտութեան մէջ խոստացած կերեւէր զՄԵՍԻԱՆ ղրկել յաշխարհ. բայց զարմանալիք մ՚ալ այս է որ շատ՝ եւ շատ ժամանակներու մէջ զանազան կերպերով զմարդիկ հըրահանգելէն վերջը ղրկեց. ուստի համառօտ կերպով հոս տեղ հարկ եղաւ աչքերնիս քիչ մը սուրբ գրոց պատմական մասին վրայ դարձնել ։*



## ԴԱՍ Թ.

### ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՐՄԻՆ ԱՌՆԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ

**1. — Քրիստոս ե՞րբ մարմին առաւ. մարմին առնելէն յառաջ ինչ Աստուածային ընթացք կար։**

**1. —.** *Արարչագործ Աստուած Ադամէն մինչեւ Նոյ, Նոյէն մինչեւ Մովսէս, Մովսէսէն մինչեւ Քրիստոս ինչ ընթացք որ տը-*

յօրինած է, ուղի ուղով կարդալու է։ Ադա-մը դրախտէն աքսորուելէն վերջը երբոր մար-դիկ շատցան աշխարհը մեղօք ապականեցաւ, ուզէր այն ատեն կը ղրկէր խոստացեալ Փըր-կիչը, առանց ջրհեղեղի։

Նոյէն առաջ բնականն ալ չէին յարգեր, անասնաբար կը վարուէին «ուտէին, ըմպէին կանայս առնէին» այս վայրենութենէն բը-նական օրէնքի անցան, բնականէն Մովսէսին գրաւոր օրէնքին, գրաւոր օրէնքին մէջ ալ, մինչեւ ջրհեղեղի վիճակէն դէշ փարիսեցա-կան, սադուկեցական մոլութիւնները՝ որ տի-րեցին, Քրիստոս հասաւ շնորհական օրէնքը տալու։

Առնենք լաւ նկատողութեան արժանի կէ-տերն են թէ Աստուած մարդոց հետ ի՞նչ կեր-պով վարուած է. հաշւոյն եկած տեղը սը-խալ մարդապետելով, չեկած տեղը շուտ մը կարդալ անցնելով սուրբ գիրք կարդալ չըլ-լար։ Ջրհեղեղէն յառաջ շատ մարդիկ կային, երբ ապականեցաւ, Փրկիչը չը հասաւ, ան-կէ վերջ, Աբրահամու միջոցաւ համառօտ փրկութիւն մը տալով, Սոդոմ Գոմորի չը խնայեց, իսկ ջրհեղեղը անգամ մ'ալ չըներ, ու Մեսիան ղրկել խոստացաւ անոնց յայտ-նապէս «Ծննդ. ԺԲ. Գր. 3.» Մովսէսի ձեռօք ըրած փրկութիւնը Աբրահամէն ազդաւ էր։

Ադամը դրախտէն ելածին պէս «իբրեւ զմի 'ի մէնջ» ըսելով Մեսիան խոստացաւ, Աբրահամին կրկնեց, Մովսէսին յայտնեց, Ահարոնին քահանայական կարգը տուաւ. սրբութեան խորանին հրահանգովը, Սողոմոնի շինել տուած տաճարովը և այլովք շնորհական օրինաց ստուերը ձգեց (Եբր. Թ. 1—10) որոնք Աստուածային սքանչելի տնօրէնութիւններ են. և մենք ալ հասկնալու ենք թէ Աստուած ինչպէս վարուած է մեզի հետ. վայրենականէն բնական, բնականէն գրաւոր, գրաւորէն շնորհական, ասոնց կարգը պահելով ղրկած է իւր Որդին յաշխարհ, Որդին ալ գալով հնոյն մէջ ծածկուածը նորոյս մէջ մեր առջեւ բանալով գնաց:

Ասոնք գրելով նպատակնիս պատմութիւն մը ընել չէր, նաեւ՝ Քրիստոս այս ինչ դարուն կամ այն ինչ օրին եկաւ որ մենք անոր համար փրկուեցանք ըսել ալ չէր. (1)

(1) Կաղանդ կամ Նոր տարի՝ նոր աշխարհ կը նշանակէ, առաջին մարդն Ադամ արարչագործութեան վեցերորդ օրը ստեղծուեցաւ, երկրորդ Ադամը՝ Քրիստոս ալ վեցերորդի մը հաշուով ծնաւ, անոր համար Նոր տարույն վեցին կը տօնենք Քրիստոսի ծնունդը: Երբոր մկրտուեցաւ 30 տարեկան էր, (սուրբ գիրքը յաւելուած չ'ըներ) որ ըսել է ծնունդ եւ յայտնութիւն մի եւ նոյն օրուան կը պատկանի, յետ ութօրեայ անդամահատութիւն:

Ջրհեղեղը չեկած որ դար մարդոց համար աւելի աղէկ էր․, երբ ալ որ դար փրկիչ էր մարմին չառած ալ կրնար փրկել, իսկ ինչպէս որ ըսած ենք, Աստուած մարդը իրեն համար ստեղծեց, ինք հրամանքով գործեց, մեզի հետ ալ խելքի և բնութեան մօտ վարուեցաւ, այդ հրաշքները ըրաւ, հրահանգներ տուաւ, Նախ ստուերապէս և ապա իրապէս։

Ասոնց վրայ հաստատուն հաւատք և պարզ գաղափար ունեցող մը չի տարակուսիր, վէճ չ'ըներ․ իրաւ շատ է որ Աստուած մը մարդանայ, բայց ինքը շատ չի սեպեց, քանի որ ինն ամիս կուսի մը յարգանդ սպասեց, անկէ մարմին առաւ, մեր մէջ երեւեցաւ մարմնով, ալ վէճի բան չի մնաց, մի մի այն մենք այս կէտին վրայ հաստատուն հաւատք ունենալու ենք թէ, կատարեալ մարդ գոլով Աստուածութիւնը չի փոքրկացաւ, կատարեալ Աստուած ըլլալով մարդկութեանը թերութիւն չեղաւ։



## ԴԱՍ Ժ.

### ՔՐԻՍՏՈՍ ՄԱՐՄԻՆ ԱՌՆԵԼՈՎ, ՄԱՐԻԱՄ ՄԻՇՏ ԿՈՅՍ ՄՆԱՑ

1. — Քրիստոս ի՛նչ ընթացքով ընտրեց իւր մարմինն առնելիք ցեղը. երկիր ըսելը ի՞նչ կը նշանակէ աստուածաբանօրէն։ 2. — Գլխաւորաբար ո՛վ «բանաւոր երկիր» կոչուեցաւ։ 3. — Քրիստոսի մարդեղութեան վրայօք ի՞նչ վկայեր եղած են։ 4. — Մարիամ միշտ կոյս ի՞նչու կը դաւանինք քրիստոնեայք։ 5. — Քրիստոս եղբայր ունե՞ր թէ ո՛չ. Մարիամին միշտ կոյս մնալիք ըլլալը հին օրինաց մէջ ի՞նչպէս նշանակուած է։ 6. — Թէ որ միշտ կոյս է ի՞նչու ծնաւ կատարելապէս կըսենք։ 7. — Աստուածածին պիտի դաւանի՞նք թէ մարդածին։ 8. — Քրիստոսի կատարելութեան վրայօք ի՞նչ ապացոյց կայ. մարմինը փոխե՞ց թէ ոչ։ 9. — Քրիստոս մայրը յանդիմանե՞ց։

*1. — Աստուած մարդկային ազգի փրկութիւնը առաջէն մինչև վերջ՝ միջոցաւ, ժամանակաւ և տնօրէնութեամբ կարգադրած է, անոր համար իւր Որդւոյն մարմին առնելըն ալ կերպով մը միջոց եղաւ. քանի որ*

մարմինը մարդկային ազգը փրկելու համար այնտի առնէր , և քանի որ Աստուած մի մարդկէն մարմին այնտի առնէր , անշուշտ անօրէնութեան տակ առնել հարկ էր մարմինն առնելիք տեղն ու ցեղն ալ :

Աստուած մարդը իրեն համար ստեղծելուն պատճառաւ անշուշտ Աստուածաշունչին գլուխն ալ մարդոյ փրկութեան վերաբերեալ բանը պիտի գրուէր :

Աստուածաշունչին առաջին գլուխը « Երկիր էր աներեւոյթ և անպատրաստ . . . և Հոգի Աստուծոյ շրջէր 'ի վերայ ջուրց » գըրած է :

Այս խօսքերը իւր պարզ իմաստովը առնելով ; իրօք երկիրը անպատրաստ էր և Աստուած պատրաստեց . իսկ « Հոգի Աստուծոյ շըրջէր 'ի վերայ ջուրց » բառած խօսքն ալ աստուածաբանօրէն առնելով՝ բնաւ հարկ չ'կար , թէ որ Հոգին իրեն բնակարան պատրաստելու խնամ մը չը կենար :

Հոգին՝ երկրին անպատրաստութեանը նայելով ջուրերուն վրայ պատրաստած կերպով , իւր պատրաստութենէն վերջ՝ թէ որ « Երկիրը եղաւ , իրեն բնակարան » ըսենք , ցանկալը Աստուծոյ բնակարանի համար ստեղծուած կերպով , այլ եւս մարդուն պէտքութիւն չէր կենար . նախկին երկիրը մարդուն

համար, մարդն ալ իրեն համար բնակարան ստեղծեց։

Գալով մարդուն, հոգի և մարմին, հարստութիւն և աղքատութիւն, առողջութիւն և հիւանդութիւն, ևայլն երկուական բան կրող երկիր մ'է. իսկ Աստուած սա վերջինը ընտրեց, և պատրաստեց բնակելու. ինչպէս որ նախապէս երկիրը և իր վրայինները «եղիցի» բառով ստեղծեց, բայց երկրորդ երկիրն ալ, առաջնոյն պէս հողէն կը բաղկանար, հոգի փչեց. որ ըսել է նախապէս Ադամին մէջ հանգեաւ. ասոր համեմատ Եզեկիէլ ըսած է, «իմ հոգիս անոնց վրայ պիտի թափեմ» (Եզեկիէլ ԼԶ. 27.) ասոր պէս շատեր կան թէ Աստուծոյ բնակարանը՝ մարդոց սիրտն է (Բ. Կորնթ. Զ. 16.)։

2. — Այս բանաւոր երկիրներու մէջ ամենէն արգասաւորը Մարիամ կոյսը եղաւ. զի Աստուծոյ հոգին մարգարէից ազդեց, որ յազգէ յազգ ասկէ ծնանելիքը գուշակեն. առաքելոց մէջ եղաւ, որ ասորմէ ծընածը քարոզեն. ահա ասոր համար Աստուածաշունչին գլուխը գրուած բանաւոր երկիրը այս Մարիամը կը ճանչնայ Եկեղեցին, որուն ցեղը պահեց Աստուած մարդոց սկիզբէն մինչեւ Քրիստոսի ծնունդը. յորմէ քաղուեցաւ անգրաւելի պտուղը՝ Քրիստոս. և անմահու-

թիւն, Եւայի կերած մահկանացու պտղոյն տեղը։ Ծնաւ 'ի կնոջէ և եմուտ ընդ օրինօք» (Գաղատ. Դ. 4.) ըստ այսմ Եկեղեցին կը դաւանի «ծնաւ կատարելապէս»։

3. — Քրիստոսի կատարեալ մարդկութեան վրայօք շատ հերետիկոսներ երեւան ելան, (1) դեռ կան մինչև այսօր աշխարհիս վրայ, զի շատ և անկարելի համարեցան մարդէն Աստուած ծնանիլ, որ նախ Աստուածային հրաշալիքը չի կրնալ ըմբռնել է, Բ. Հաւատոյ թերութիւն։

---

(1) Հիմակուան նոր հերետիկոսութիւնք անկէ պակաս չ'են, զի ճշմարիտ հաւատ կը քարոզեն, բայց գործքով անկէ հեռու են։ Ա. Քրիստոսը աղամանդի մը կը նմանեցնեն, Մարիամն ալ սնտուկի մը «աղամանդը անկէ ելլալէն վերջ սնտուկը հինն է» կըսեն։ Բ. Մարիամին միշտ կուսութիւնը կ'ուրանան «Քրիստոս եղբայր ունեցաւ» ըսելով։ Գ. Աստուածածին չ'են ըսեր. «Աստուածութիւնը չի ծնիր» ըսելով, որպէս զի Աստուածածին որ ըսեն բարեխօսութիւն ընդունած կըլլան. թէ որ քիչ մը աւելի նեղես «դիցուք թէ կոյս է, կամ Աստուածածին ալ ըսենք, փրկութեան ինչ օգուտ ունի» կ'ըսեն։ Մարդ մը պէտք է որ նախ ինքնիրեն արժէքը գիտնայ՝ թէ տեսանց մեղքի որ միայն ինչ է և ո՞րչափ արժէք ունի Աստուծոյ քով, որ իրեն բնական պատրաստած է։

Նեստորգէս կ'ըսէր թէ « Աստուածը մար-
մին առնել անկարելի է, մեր աչքին այնպէս երեւեցաւ » Արիոս ալ կ'ըսէր թէ « մարմին էր առածը, բայց արարած գոյով կատարեալ Աստուած չէր » այսպիսիներ շատ. որոնք դատապարտուեցան Եկեղեցիէն, ոմանք ալ յայտնապէս պատժուեցան:

4. — Մարիամին մինչեւ կոյս մնալուն վըրայօք կասկած բերելն ալ Քրիստոսի կատարեալ Աստուածութեանը դէմ մեղանչել է. Աստուածածին Մարիամ մինչեւ կոյս մնալը ակնյայտ էր, ինչպէս որ երբայեցւոց մէջ ուխտը մեծ տեղ բռնած էր, եւ Աստուածային պատուէր կար մէկը ուխտէն չանցնելու. « Աղջիկ մը իւր հօրը տունը ըրած ուխտը հաստատուն պիտի պահէ » (Թուոց Լ. 3.) թէ որ Մարիամ այս ուխտը ըրած չըլլար, եւ թէ որ ամուսնանալու մօտ նշանուած ըլլար, գոնէ.

---

Նեստորգէս չի կրցաւ ըմբռնել Քրիստոսի մարդեղութիւնը, նոյնպէս հինակուածները « աստուածանալի մը մեռուկը մը մէջ դրուիլ». ըստածնին առնար գաղափարին մօտ է, որովհետեւ խորհրդաւոր մը սնուցկին մը մէջ ինչ ձեւով դնեն, այնպէս ձեւով կ'առնեն, բայց Քրիստոս ամենայն ձեւի մասին ձեւի ենթակայ եղաւ, անոր համար, մեր ազգերը մեզի այդպիսի գաղափարով ուսուցանելու կը զգուշացնէ (Ա. Յովհ. Դ. 1.):

քիչ մը կը մտածէր թէ «ես նշանուած եմ կարելի է հարսնանալէս ետքը պիտի կատարուի հրեշտակին խօսքը» և քիչ մը կը խորհէր. անմիջապէս չէր պատասխաներ թէ «զի՞ արդ լինիցի ինձ այդ, զի այր ո՛չ գիտեմ». ապա անմիջապէս պատասխանէն յայտնի է որ կոյս մնալու ուխտած էր։ Հրեշտակին «կին քո» ըսելը ուրիշ մտօք էր անշուշտ։ Որովհետեւ «կին» ըսելով մարդկանց իգական սեռը կը նշանակէ, մէկ տարեկան աղջիկն ալ կին է. կին՝ իգական, այր՝ երիկ մարդ. Պօղոս ընդհանուր և անորոշ առնելով կըսէ, «ծնեալ ՚ի կնոջէ» մի թէ զՔրիստոս ծնելէն յառաջ ալ կին էր Մարիամ։

5. — Քրիստոսի եղբայր չունենալը վաւերացած է. այն է՝ հրէից «որդի Մարեմայ» ըսածը Մարիամ Կղէոփայային որդւոցը համար ըսուած ըլլալը կասկածոտներէն շատերն ալ գիտեն. Աւետարանն ալ յայտնած է. ինչպէս որ նախ հրէայք եղբայր կ՚ըսէին Յակոբոսին համար, նոյնպէս Թադէոս ըսուած Յուդային ալ, անոնց մայրը կ՚որոշուի որ կոյս Մարիամն չէ, այլ Մարիամ Կղէոփայայ, «որ կայր առ խաչին Յիսուսի, որ էր քոյր մօր նորա» (Յովհ. ԺԹ. 25.)։

Նոյնպէս «Յակոբին ու Յովսէին մայրը Մարիամ» կըսէ «Մատթ. ԻԷ. 56.» Թա-

դէոս ըսուած Յուդան ալ տեառնեղբայր ըսուած Յակոբին եղբայրն է ։ Որ ըսել եղաւ, Պետրոս ու Անդրէաս եղբայր են , Յակոբոս ու Յովհաննէս Զեբեդեոսին որդիքն են . տեառնեղբայր ըսուած Յակոբոսն ու Յուդայ ըսուած Թադէոսն ալ Ալփեային տղայքն են . ( Յուդ. Ա. 1. ). Նաեւ , Եբրայեցւոց մէջ եղբայր բառը ազգականաց համար ալ կը գործածուէր ( Ծննդ. ԺԲ. 5. և ԻԲ. 20. ), Ասոնք յայտնի ճշմարտութիւններ են . մանաւանդ զատոնք չը գիտցողը անգամ կրնայ հասկնալ թէ . քանի մը զաւակ ունեցող մայր մը Զեբեդեոսին տղին Յովհաննէսին չէր յանձնուիր խաչին քով ( Յովհ. ԺԹ. 26. )։

Քրիստոսի եղբայր չ՚ունենալը և Մարիամին միշտ կոյս ըլլալը յայտնի ճշմարտութիւն է , կասկածիլը Քրիստոսի մարդեղութեան դէմ մեղանչել և հերետիկոսութիւն է։

Աչքերնիս սուրբ գրոց վրայ դարձնենք , պիտի տեսնենք թէ Աստուած աշխարհիս ըստեղծմանէն սկսելով մինչև Քրիստոսի ծնունդը զանազան ընթացքներ բռնած է . ամեն մէկ ընթացք անշուշտ մէկ մէկ ստուերներ էին . օրինակի համար Մելքիսեդեկ քահանայ Քրիստոսի ստուերն էր , ( Եբր. Թ. Ժ. ) Իսահակին համար Սաբեկայ ծառէն կախուած խոյն Քրիստոսի խաչէն կախուելուն ստուերն

էր, և պասեքի գառն ալ անոր զոհ ըլլալուն, հապա Քորեբ լերան մորենին, որ կը վառէր և չէր այրիր ինչո՞ւն ստուերն էր. որ վառիլ և չայրիլ բնութեան դէմ է. եթէ ոչ Մարիամին գերբնական յղութեան ստուերն էր. այն տեղին «սուրբ երկիր» ըսուեցաւ. Մովսէս վախուն չէր կրնար նայիլ, (Ելից Գ. 2—6.) ասիկայ Մարիամին միշտ կոյս մնալէն զատ ուրիշ յարմար օրինակ մը չենք կրնար նմանցնել. որովհետև Ստեփանոսէն աւելի շընորհօք լեցուն մարդիկ չենք. զի Ստեփանոսին հրէից առաջ պատմելուն նպատակը Քըրիստոսի ծննդեան ստուերը ըլլալը իմացնել էր (Գործ. Է. 30). որ ըսել է այդ բնութեան դէմ եղած հուրը նոյն իսկ Մարիամին վրայ տեսնուեցաւ, զի Քրիստոս «հուր եկի» ըսաւ. Հոգին Սուրբ հրով մաքրեց. նոյնպէս Պօղոս կը վաւերացնէ այն ծուխին հուրը որ մորենին չայրեց (Եբր. ԺԲ. 29.) «Սուրբ երկիր է ոտքդ հանէ» այն է «մեղօք մի մօտենար». Քրիստոսէն զատ ուրիշ անմեղք մարդ մ՚ալ չկար որ անկէ ծնէր (1); զի անի

(1) Ոմանք «Մարիամին վրայօք սուրբ գրոց մէջ բան մը չկայ» կ՚ըսեն. այն է՝ Քրիստոս և կամ առաքեալք բան մը չըսին (տես յանուանէթ. երես 31.) բայց անոնք թող ըսեն, մենք գիտենք որ Աստուածաշունչին սկիզբէն մինչև վերջ յար-

կայ Քրիստոսի համար պատրաստուած սուրբ երկիր էր. « Հոգին Սուրբ եկեսցէ ՚ի քեզ » (Ղուկ. Ա: 35.)։ Թէ որ այս կէտերը չըլլային նորը հինին մէջ ծածկուած չըլլար, ի՞նչ պէտք էր Աստուածաշունչ կարդալ. Աւետարանը բաւական էր. իսկ անոր ամեն մէկ նշանախեցներուն մէջ, մենք փնտռելիք ունինք. անոր համար կը կարդանք։

6. — « Ծնաւ կատարելապէս » « թէ որ կատարեալ մարդ կատարեալ Աստուած պիտի դաւանինք, հապա ի՞նչպէս Մարիամին միշտ կոյս պիտի ըսենք » ըսողները Եւտիքա-

---

դուած է, անոր համար Եսայի, Երեմիա, Եզեկիէլ, Դաւիթ, Սողոմոն, հազարաւոր տարիներ առաջ « լուռ, դուռն », « յղացի կոյս » կանչելէն զատ Եզեկիէլ այդ դրան օրինակով տեսաւ զայն. « Իսրայելի Տէր Աստուածը անցաւ ուրիշը պիտի չանցնի » իշխանը հաց պիտի պատրաստէ հոն (Եզեկիէլ ԽԴ. 1—8.)։ Այո՛, անցաւ, հացը հոն պատրաստեց. և անկէ առած մարմնով փրկեց զմեզ, անկէ առած մարմնոյն համար ըսաւ « ԱՅԻԿ ՄԱՐՄԻՆ» թէ ոտուերպայէս զինակներով, թէ իրական գուշակութեամբ գրուելուն համար եկեղեցին միշտ կոյս կը դաւանի, երեք առնկալի խորհրդով, Ա. անարատ յղութիւն, Բ. անապական Ծնունդ, Գ. յետ ծննդեան կուսութիւն, զի մարմնին չի մոխրեցաւ և Իսրայելին Տէր Աստուածը անցնելուն համար, ուրիշը պիտի չանցնէր։

կան, Մակեդոնական խմոր մը կը կազմեն իրենց մէջ, զի Աստուածային հրաշալիքը նորէն մոռցան. որովհետեւ Քրիստոսի մարդկութիւնը՝ Աստուածութեանը, եւ Աստուածութիւնը՝ մարդկութեանը թերութիւն չբերաւ. թէ որ այսպէս չըլլար, անճառելի ծնունդ ըսելու հարկ չէր մնար, զի Քրիստոսի ծնունդը յատուկ է, անման սկզբնական և ներգործական մեղաց, ինչպէս որ հրեշտակը աւետիս տուած ատեն «Հոգին Սուրբ եկեսցէ 'ի քեզ» ըսաւ, որ նախապէս մաքրըուեցաւ Մարիամ գերբնական շնորհօք. «չէ գտեր զշնորս յԱստուծոյ» (Ղուկ. Ա. 30.) որով յղացաւ և անմիջապէս «ծնունդ» ըսուեցաւ. «որ 'ի նմայն ծնեալ է» (Մատթ. Ա. 20.) մինչդեռ հասարակ ծնունդներ սերմէն և արիւնէն կը բաղկանան առաջին անգամ, որ նախ յղութիւն կ'ըսուին, և ինը ամիսէն վերջ ծնունդ. իսկ Քրիստոսի համար յղութիւն և ծնունդ անմիջապէս և յատուկ. զի յէութենէ Հօր, նախ քան զյաւիտեանս ծնունդ. ապա զարմանալի ծնունդ ըստ Աստուածութեան, և ըստ մարդկութեան այլ յետ ինն ամսեայ զարմանալի ծնունդ հրաշալի և անճառելի. ատոր համար մինչ Մարիամին յարգանքն էր, Եղիսաբեթ հոգւով սրբով լցուած «մայր Տեառն իմոյ» ըսաւ (Ղուկ. Ա. 42.)։

7. — Մարիամի միշտ կուսութիւն, Քրիստոսի կատարեալ մարդկութեան թերութիւն չէ, զի մեզի պէտքը չէ մեր գիտցածէն աւելին ճառել. մենք սուրբ գրոց մէջ Մարիամը սուրբ գտանք, Քրիստոս ալ ծնելէն վերջը մարդու պէս ննջեց, Աստուածապէս հովին ու ծովին սաստեց. Ղազարոսի գերեզմանին քով մարդու պէս լացաւ, մեռելը դուրս կանչեց Աստուածապէս. թէ կատարեալ մարդկութիւն և թէ կատարեալ Աստուածութիւն տեսնուեցաւ անոր վրայ. Մարիամէն այնպէս ծնելով, մարմինը երկինքէն չի բերաւ, այլ կոյսէն առաւ, իւր Աստուածութեանը հետ խառնեց, անոր համար նորա մօրը Աստուածածին ըսելու կասկած բերելն ալ մեծ մեղք է. վասն զի «ծնաւ կատարելապէս» կը դաւանինք, Քրիստոսի վրայ կատարեալ մարդկութիւն տեսնալուս համար. ուստի անոր մօրը Աստուածածին որ ըսենք, մարդկութիւնը հետն է, իսկ «Աստուածութիւնը չի ծնիր, չի մեռնիր, չի թաղուիր, հապա այն գործերը մարմնով էր, ուրեմն Մարիամ մարդածին է ոչ թէ Աստուածածին» որ ըսենք, կատարեալ մարդ-կատարեալ Աստուած խոստովանած չենք ըլլար; կամ Աստուածային հրաշալիքը իրական եղած չ'ըլլար, աս ալ հերետիկոսութիւն է։

Ուրիշ խօսքով. Աստուածածին ըսելով մարդածին ըսած ես, զի «ծին» ծնունդ բառին արմատն է, իսկ մարդածին որ ըսես, կատարեալ Աստուածութիւնը խոստովանած չես ըլլար, ասոր համար առաքելական եկեղեցին «Աստուածածին կը խոստովանի։ Ինչպէս որ Եղիսաբեթին հոգւով սրբով լեցուած «մայր տեառն իմոյ» ըսելը, պարզապէս Աստուածածին ըսել է։

Մինչեւ հիմա ըսուածներէն հասկցանք թէ Մարիամ միշտ կոյս է, «անոր համար սուրբ գրոց մէջ բան մը չկայ» ըսողները, կը զրպարտեն. մինչի անգամ այնչափ գրուածներ, ու մարգարէութիւններ ալ չըլլային, Քրիստոսին անկէ ծնիլը բաւական էր, անգամ մ'ալ ինչ հարկ կար որ առաքեալները և կամ Քրիստոս, սուրբ կուսին վրայօք մեզի պատուէր տային. մենք գիտենք որ Քրիստոսի յարութենէն վերջ Մարիամ միշտ առաքելոց հետն էր (Գործ. առաք. Ա. 14.)։

9. — Քրիստոսի կատարեալ մարդկութեան թերութիւն չի գար, Աստուածածնի միշտ կուսութեան. զի անկէ առած մարմինը, անմասն 'ի մեղաց խառնեց իր Աստուածութեան հետ. այն մարմնով իր Աստուածութիւնը ցոյց տուաւ Թաբօր լեռը, այն մարմնովը խաչուեցաւ, գերեզման դրուեցաւ,

յայտնաւ, գերեզմանքին մէջ վարշամակները միայն մնացին, այն մեռելները առանց փոխելու դող դռնէն ներս մտաւ, մարմինը փոխած չըլլալը գիտցունելու համար Թովմային մասնաւորապէս կանչեց, «Հոգին ոսկոր չունենար, տես որ ես ունիմ» գամերուն տեղը ցոյց տուաւ, այն մարմնով, քառասուն օրուան մէջ աշակերտաց երեւցաւ յարութենէն վերջ, անոնց առջեւ հաց կերաւ, այն մարմնով համբարձաւ, Հօր Աստուծոյ աջ կողմը նստաւ, այն մարմնով պիտի գայ կենդանիները ու մեռելները դատելու համար. այն մարմնով այդչափ հրաշք գործողը, այն մարմնով իր մօրը կուսութիւնն ալ չ'ապականած կրնար ծննանիլ. Աստուածային հրաշքը բընութեան վերածելը հաւատոյ թերութիւն է։

Ոմանք այս մասին երբեմն սխալ գաղափարի մ'ալ կը դիմեն «մարմին ու արիւնը Աստուծոյ արքայութիւնը չեն կրնար ժառանգել» կամ թէ «ակնթարթ վայրկենի մէջ պիտի փոխուին, կարծել է Քրիստոս ալ փոխեց». այս խօսքը կատարեալ հերետիկոսութիւն է, և դէմ նիկիական հանգանակին, որ կը դաւանի «գալոց է նովին մարմընովին» որ խառնեց ընդ Աստուածութեան իւրում յաւիտենականապէս։

Այն մարմնով այնչափ հրաշագործեց.

Նոր գերեզմանի մէջ դրուեցաւ, որպէս զի կասկած չըլլայ թէ «մարգարէներէն մէկուն գերեզմանին պատահեցաւ, որ յարեաւ» ըսողներ ըլլան. զի Եղիսէ մարգարէին գերեզմանին պատահած մեռել մը ողջացած ըլլալը գիտէին։

Այն մարմինը որ խառն էր Աստուածութեանը հետ, յաւիտեան պահելու ուխտով առաւ և անով պիտի գայ. ասոր համար նոյն իսկ հրեշտակներ վկայեցին Քրիստոսի համբարձման ատեն թէ «ինչպէս որ երթալը կը տեսնէք. այնպէս ալ պիտի գայ» (Գործ. Ա. 11.) առաքելոյն ըսած փոփոխելի մարմինը մեղաց համար է։

Թէ որ Քրիստոս մարմինը փոխէր՝ գերեզմանին մէջ պէտք էր թողէր, բայց վարշամակէն զատ բան մը չը մնաց. նոյն իսկ պահապանք «աշակերտքն գողցան» ըսին, որոց դէմ երբեմն սա գեղեցիկ երկմայրաբանութիւնը ըսեր է թէ. «ո՛վ պահապաններ, կամ քուն էիք կամ արթուն, թէ որ քուն էիք, ինչպէ՞ս գիտցաք աշակերտներուն գողնալը, թէ որ արթուն էիք. ինչո՞ւ գողնալ տուիք. ուրեմն սուտ էք». ուրիշ խօսքով՝ ասոնց բնաւ հարկ չի կայ. Քրիստոս մարմինը պիտի չի փոխէր, զի մարդոց փրկութեան համար առած էր այս մարմինը. Իր մարդեղութենէն առաջ

մեռնողներուն ալ պիտի ներկայացնէր անշուշտ, ինչու որ, առաքեալն ալ վկայած է, «բանտին մէջ եղող հոգիներուն ալ քարոզեց» (Ա. Պետր. Գ. 19.)։

Ոմանք՝ «Քրիստոս իւր մայրը յանդիմանեց» եւ կամ թէ «զինքը ծնողաց երանութիւն 'տուող կնիկներուն խօսքը հերքեց» կ'ըսեն, բայց բոլորովին դէմ է Աւետարանական ճշմարտութեան. որովհետեւ Մարիամ Հոգւով Սրբով լեցուն «այսուհետեւ երանիեցեն» ըսաւ, ուրեմն ալ Քրիստոս այս երանութիւնը հերքելու չէր. ուստի է տաանկներուն ըսածին պէս չէ, հապա «ով կնիկներ՝ թէ ես, թէ ինծի ծնողը արդէն երանելի է. հապա անոնք երանելի ըլլալու կարօտ են ինծի հաւատալով». կամ թէ՝ գալիլեա ջուրը գինիի փոխելու ատեն» զի կայ իմ և քո» (Յովհ. Բ. 4.) ըսուած խօսքը իւր մայրը յանդիմանել չէր, այլ եւս գովել. այսինքն «ես և դու ի՞նչ ունինք» այնպէս որ «ո՛չ ես ո՛չ դու այս աշխարհիս կը վերաբերինք». կամ թէ «ինծի և քեզի ե՞նչ պէտք» որովհետեւ ԻՄ ինչ պաշտօն որ ունի ՔՈ ալ նոյնն է։

Եկեղեցին ինչպէս որ կը հաւատայ, նոյնպէս ալ կը գաղափարէ Մարիամի միշտ կուսութիւն։ Քրիստոսի կատարեալ Աստուա-

*ծութիւն, և կատարեալ մարդկութիւն ան-փոփոխելի հաւատալով, կը դաւանինք ան-երկբայապէսթէ « գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր, 'ի դատել զկենդանիս և զմեռ-եալս, որոյ թագաւորութեանն ո՛չ գոյ վախ-ճան »։*

---

## ԴԱՍ ԺԱ.

### ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ ՑՈՐԴԱՆԱՆ ԻՋԱՒ ԲՂԻԽԵԱԼ Ի ՀՕՐԷ

**1. — Սուրբ Հոգին ի՞նչ է։ 2. — Քրիստոսէն յառաջ ի՞նչպէս կը ներգործէր։ 3. — Սուրբ Հոգին ե՞րբ յայտնուեցաւ. ընդհանուր քրիստոնեայք ի՛նչպէս դաւանեցան. գիտունք ի՛նչպէս իմաստասիրեցին։ 3. — Ի՞նչու համար « ի Հօրէ և Որդւոյ » չենք ըսեր։ 5. — Շատ մը սուրբ հայրք ի՞նչու « ՔՐԻՍՏՈՍԻ ՀՈԳԻՆ » ըսին։ 6. — Անշըփոթ դաւանութիւնը ո՞րն է։**

1. — *Ամենասուրբ երրորդութիւնը ըստ էութեան Հոգի է (Յօհ. Դ. 24.) բայց մարդը երեքն համար սահմանեց 'ն* [illegible]

րէն Աստուծոյ ». անոր մէջ հոգի փչեց,՝ անոր համար երրորդութեան խորհուրդը մարդոց յայտնեց ՚ի ձեռն Հօր, խնամեց ՚ի ձեռն Որդւոյ և մաքրեց ՚ի ձեռն Հոգւոյ, որպէս զի մարդիկ կարողանան Աստուծոյ վրայ գաղափար մը ունենալ որչափ որ կարելի է. մեր այս գաղափարին ըմբռնում մը ըլլալու համար, Քրիստոս մինչեւ անգամ ըսաւ « Հայրս ինձմէ մեծ է » եթէ ո՛չ անոնց մէջ մեծութիւն և փոքրութիւն չ՚կայ, այդ խօսքերը սխալ չի հասկնալու համար անգամ մը ալ ըսաւ « ինծի որ տեսաք, Հայրս տեսած էք » « Ես եւ Հայր իմ մի եմք »։

2. — Սուրբ Հոգին՝ յորդանան իջնալէն յառաջ մարգարէից, թագաւորաց և քահանայից վրայ ուրիշ ձեւով կը ներգործէր, փառաւորելով զօրով Հօր և Որդւոյ, վասն զի երրորդութեան խորհուրդը յայտնելու ժամանակը հասած չէր, ըստ Աստուածային տնօրինական կարգադրութեան. մի միայն Նոյն առաքեալներն սկսեալ ինչ մը հասած էր Սուրբ Հոգին առնելու մէջ, որ ծնունդները կ՚առնէին. ինչպէս որ Աստուած Սամուէլին ըսաւ, « Ել Դաւիթը օծէ » և Սամուէլ իւղին եղջիւրը առաւ Դաւիթը օծեց, անկէ ետքը Տէրոջը Հոգին անոր վրայ խաղաց (Ա. Թագաւ-

ւորաց ԺԶ. 13.» այսպիսի շատեր կան հին կըտակարանին մէջ.

Սուրբ գրոց մէջ, չկայ բառ մը որ տառանց խորհրդի գրուած ըլլայ, չկայ խորհուրդ մը որ հաւատոյ մտօք ընթերցողէն ծածկուած ըլլայ. ըստ այսմ այն առաքելոց, մարգարէից օծումն Նոյին տապանէն կըսկսի, միջոց՝ Սուրբ Հոգին առնելու. որովհետեւ Նոյէն մինչեւ Մովսէս ստուեր մը կար բնական օրինօք, այն ստուերը Մովսէսի միջոցաւ լոյսի փոխուեցաւ Աստուածային գրաւոր կամ գրական օրինօք։ Մովսէսին յայտնուածը բնականին նկատմամբ լոյս էր, իսկ Քրիստոսի շնորհական օրինաց նըկատմամբ ստուեր. ինչպէս որ Նոյին տապանէն ձիթենւոյ տերեւ, Մովսէսի ձեռօք եփած իւղ. «զանազան ծաղիկներով խառնըւած, իւղ սրբութեան» (Ելից. Լ. 22. Զաք. Դ. 12—14.) ուստի ըսել է որ Քրիստոսէն առաջ Աստուծոյ հոգին այս կերպ միջոցաւ կը ներգործէր, եւ ընտրեալները կ'օծուէին Աստուծոյ հոգին առնելու համար, զորս Աստուած առանց միջոցի ալ կրնար ընել, բայց այնպէս ըրած է (տես [illegible] խորհրդոյն մէջ)։

Քրիստոսի յառաջակէս Օծեալ ըսուած էր, ամեն քրիստոնեայ եւ ճշմարիտ հաւատա-

ցեղոց՝ առաքեալք օծեալ ըսին, (Ա. Յովհ. Բ. 20) Քրիստոս ինքնիրեն օծեալ ըլլալուն համար, իրեն փառակից Սուրբ Հոգին ներկայացաւ յորդանան, վկայեց նաև Քրիստոսի Աստուածութիւնը, և ապա յայտնեց խորհուրդ ամենասուրբ Երրորդութեան։ Հայրը՝ վերէն, Հոգին բղխեալ անկէ. Որդին ջրոյ մէջ. հոն յայտնուեցաւ անձնաւորութիւն և միութիւն Երրորդութեան։ Նախ Հայրը յայտնուեցաւ արարչագործութեամբ, ետքը Որդին՝ ծննդեամբ. և ապա Սուրբ Հոգին առաքեալներուն իջմամբ։ Որդին երկրորդ անձ և Հոգին երրորդ անձ։ Ամենասուրբ Երրորդութիւն համափառ Սուրբ Հոգի գալով, անբաժանելի Աստուածութեամբ, 'ի յորդանան յայտնուեցաւ երեք անձնաւորութեամբ։

3. —Ընդհանուր քրիստոնէութիւնը յորդանանու եզերքը առաւ հաւատոյ դասը, որ յայտնուեցաւ Քրիստոսի մկրտուած ատեն. ՀԱՅՐ, ԲԱՆ և ՀՈԳԻ (Ա. Յովհ. Ե. 7.) Աստուածային անձնաւորութիւն ճառելու ատեն, այս կէտէն յառաջ և ետքը ճառողը թերի կը մնայ։ վասն զի անճառելի է. այս կէտիս վրայ քրիստոնէից տրուած է, հաւատալ երեք անձամբ մի բնութիւն համազօր, համակամ և համագոյ, ամէն ատենին մեծա-

ծոցը, իրեն տրուածէն աւելին ճառել ու-զած կ'ըլլայ :

Վերջերը սափկայ խնդիր ըրին թէ, քանի որ Աստուածային անձինք համազօր են, ուրեմն «Հոգին բղխեալ 'ի Հօրէ և յՈրդւոյ պէտք է դաւանինք», իրենց վկայութիւն առնելով Քրիստոսի աշակերտացը փչելը թէ «առէք Հոգի Սուրբ» (Յովհ. Ի. 22.) կամ թէ «յիմմէ անտի առնուցու» (Յովհ. ԺԶ. 15.) և այնպիսի քանի մը վկայութիւններով, որոնք երրորդութեան համազօրութեան կը վերաբերին, ո՛չ թէ ուրիշ վիճաբանութեան.

Ծառերն ալ սափկայ այդպէս չհասկնալով խոստովանեցան մէութիւն երրորդութեան, և զանազանութիւն անձնաւորութեան, զի ան-սան որ անճառելի է. թէ որ յորդանան յայտնըւած խորհրդէն չեղին պէտի մոլորին; կամ պէտի պաշարուին, ուստի հաստատեցին թէ. Հայրը վերէն վկայեց, Որդին ջրոյ մէջ, Հոգին Սուրբ Հօրմէն բղխելով եկաւ, այդ անճառելի խորհուրդը մեզի հոն յայտնուեցաւ, մենք ա-կէ չենք կրնար չեղիլ, «Հոգին ճշմարտութեան որ 'ի Հօրէ ելանէ» (Յովհ. ԺԵ. 26.)

Հայրը և յոյները այս վերջի դաւանութեան վրայ են մինչեւ ցայսօր. այն է «յիմմէ անտի առնուցու» խմ այն Հօրմէս պէտի առնէ. կամ թէ բղխեալ 'ի Հօրէ և առնույ

'ի Հօրէ և յՈրդւոյ, որ բղխեալ և առեալ աստուածաբանական տարբեր իմաստներ ունին ։

Լռեմք այս կէտին վրայ այնչափ ծանրացան որ «Հայերն ու Յոյներն երրորդութեան խորհուրդը կ'ուրանան» ըսելու համարձակեցան ։ (1)

---

(1) Բաց 'ի շատ մը գրուածներէ, նոր հեղինակութիւն մ'ալ այսօր անոնց պարսաւանքը կը գերազանցէ, այն է՝ Գ. Վ. Էմանուէլեան առաջն. Կեսարիոյ հայ կաթոլիկաց հետեւեալ կերպով։

« Յունաց եկեղեցին անիրաւաբար օրթօտօքս-
« սօս, այնպէս ալ Հայոց Էջմիածնական եկեղեցին
« սուրբ հոգւոյն 'ի հօրէ և յորդւոյ բղխումը կ'ու-
« րանան, ընաւ պատճառ մը ալ չունին, օրինաւոր
« փիլիսոփայութեան մը և կամ աստուածաբանու-
« թեան մը չի դիմելնուն համար, ամեն գլխէ
« ձայն մը կուգայ, սա ալ կաթոլիկաց եկեղեցի-
« էն դուրս մնացողներուն յայտնի կացութիւնն է»
(իմի իլահի պադ Ե. ՃՂԳ.)։

Այդ հեղինակին ըսածը նոր բան մը չէ. ուղղափառաց ականջները այդպիսի պարսաւանքներէն բան մը չեն իմանար, չոր աներեւն է որ ամեն հողմէ կը շարժի, ոչ թէ հաստատուն ապառաժը ։

« Կուրանան » կ'ըսէ, ոչ Հայք կուրանան և ոչ ալ յոյնք. Նիկիոյ հանգանակը ինքնին ալ կը խոստովանի, և մինչեւ ցայսօր թէ հայոց և թէ յունաց դաւանութիւն է հաւատալ 'ի մի Աստուած

Բնական փիլիսոփայութիւնը՝ գիտութիւնն է, բարոյականը՝ մտքերու լոյս տուող, իմացականը՝ խորհիլ սորվեցնող, իսկ Աստուածային գիտութիւնը մտքէ և խորհրդէ վեր ըլլալուն համար, Աստուած իրեն վրայօք չափազանց ճառելու միտք ունեցողները և անոնց իմաստութիւնը կուրացուց, զի աշխարհը՝ իմաստութիւնով չի ճանչցաւ զԱստ-

---

և միշտ կ'երգէ «երեք անձինք և մի բնութիւն և մի Աստուածութիւն, խոստովանելով յաւէտ զսուրբ երրորդութիւն» առիկայ ճիշդ սկզբունքը ըլլալը ամեն մարդ նա մանաւանդ Աստուած ալ գիտնալուն համար զրպարտութիւն կ'ընէ հայոց և յունաց։

Գալով որ «փիլիսոփայութիւն չեն գիտեր կըսէ» աս ալ նկատողութեան առնելու կէտ մ'է, զի փիլիսոփայութիւնը՝ Փիզիգականի, բնականի, իմացականի ևայլնի կը բաժնուի, արդեօք ասոնց մէջէն ո՞րն է աստուածաբանութեան մօտ եղածըն, որ անոր գիտենք. այս մասին գոհ են հայեր և յոյներ որ աստուածաբանութիւնը՝ փիլիսոփայութեան հետ չեն չփոթեր, մի միայն կը սորվին բնութեան գաղտնիքը, անոր արարիչը փառաւորելու համար. բարոյականէս կ'իմաստասիրեն մարդ ըլլալ սորվելու համար քան թէ նախապաշարեալ աստուածաբան. մանաւանդ Աթէնք գիտութեան աղբիւր եղած էր ժամանակ մը, բայց Աստուծոյ գոյութեան վրայ կասկածող ատենը անգամ այնպէս չիմաստասիրեց փիլիսոփայօրէն, ինչպէս որ այդպիսի աստուածաբանք.

ուած, այլ զինքը ճանչելու մասին յիմարու֊
թիւնը կը սիրէ (Ա. Կորնթ. Գ. 18—20.) զին֊
քը սորվելու մասին ալ գիտուն. լոկ անձին գի֊
տութիւնը խորամանկութիւն է, առանց ա֊
ղաւնական միաբանութեան; և լոկ միամտու֊
թիւն ալ յիմարութիւն (Մատթ. Ժ. 10.) «ըզ֊
գուշացէք որ մէկը ձեզ փիլիսոփայութեան
փուճ խօսքերով չի խաբէ» (Կող. Բ. 8.)։

4. — Իրական ճշմարտութենէն կը սոր֊
վինք որ; Ամենասուրբ Երրորդութիւնը ըստ
էութեան Հոգի է, երեք անձինք և մի բնու֊
թիւն, մի Աստուածութիւն, համակամ, համա֊
գոյ, համազօր, համարուն և համափառ. ա֊
րեւի և կամ խնձորի նմանութեամբ գաղափար
մը տալէն անդին չենք կրնար անցնիլ. անձ֊
նաւորութեան մասին ալ յորդանանու եղեր֊
քէն բնաւ անդին չենք կրնար դիմել, անոր
համար է որ կ՚ըսենք «՚ի Հօրէ», թէ որ այսպէս
չ՚ըսենք անձնաւորութիւն չենք կրնար ըմբռ֊
նել. կամ զատ զատ անձնաւորութիւն ըսե֊
լու չենք, կամ միութիւնն ալ անձնաւորու֊
թեան հետ ըմբռնելու համար նախապէս;
Հայր; Բ. Որդի ծագումն ՚ի Հօրէ, Գ. Սուրբ
Հոգի բղխումն ՚ի Հօրէ, ասկէ աւելին անճա֊
ռելի է. մենք չենք ըսեր որ Քրիստոսի մէջ
ալ այն հոգին չկայր զի ճամբայը կը խոստո֊
վանինք, բայց Քրիստոս աստուածութիւնն

մէջ փչեց ու ըսաւ « առէք Հոգի Սուրբ » ի՞նչու չ՚առին, հապա և Քրիստոս երթալէն վերջ զրկեց. չ՚կա՞ր որ չ՚առին, քաւ լիցի, իսկ Աստուածային անօրէնութիւնը այնպէս կը պահանջէր, մարդոց խելքին մօտ վարուելու համար. այս պատճառաւ էր որ Քրիստոս ըսաւ թէ « ես պիտի երթամ ու զրկեմ, կամ Հօրմէս պիտի ելլայ ու պիտի գայ ( Յովհ. ԺԵ. 26.) 'ի Հօրէ ելանէ և 'ի յՈրդւոյ առնու « յիմէ անտի առնուցու ( Յովհ. ԺԶ. 15.) : Ի Հօրէ ելանէ » կ՚ըսէ, յորդամանու եզերքը յայտնուածին համեմատ. « յիմէ անտի առնուցու » ըսածն ալ՝ ինձմէն ու Հօրմէս ըսել չէ, որովհետեւ հայերէն լեզուի մէջ, անոր տեղ, մակբայները, այս, այն ցուցական ածականաց տեղ կը բանին, որ ըսել է « այն խմինէս պիտի առնէ » թէ որ այսպէս չ՚ըլլար մէջտեղը եւ շաղկապն ալ պէտք էր բաղհիւսելու համար, այն է « յիմէ և անտի, առնուցու » քանի որ այսպէս ըսած չէ; մենք չենք կրնար ըսել թէ Քրիստոս երկփխմի խօսք մը զրուցեց բոլոր աշխարհը վէճի տակ ձգելու համար, զի երրորդութիւնը մեզի ծանօթացած տեղը յորդամնան է, մեր աչքը մինչեւ իսկ տեսած տեղը կրնայ դիտել. մանաւանդ Քրիստոս պարզած է մեր զաւանելիքը. «'ի Հօրէ ելանէ » ինքն ալ համաձայնութիւնը գիտ-

ցընելու համար ; «հայրս ինչ որ ունի իմս է», «այն իմինէս պիտի առնէ»։ (1)

5. — Ի՞նչ պէտք են Բարսեղ, Կիւրեղ, Աղեքսանդր, Տաթեւացի եւայլն «այսպէս կ'ըսեն» ըսելով Թուղթերու կաղմ շատցընել, նոյն իսկ առաքելոց մէջ շատ է թէ որ Արիոսին դէմ պիտի ըսես. «Ցիսուսի Հոգին

(1) Ասոր նկատմամբ շատ մը շարականներ կ'երգուին առ սուրբ հոգի թէ «բղխեալ 'ի Հօրէ եւ առեալ յՈրդւոյ» նոյնպէս Տաթեւացին ունի այս իմաստով գրուածներ, մանաւանդ Նարեկացին կ'ըսէ «Որդին Հօրը մէջ, եւ Հոգին 'ի Նոսին եւ 'ի Նոցունց». ոմանք այս խօսքերէն իրենց համայնաշտութեան ույժ կ'առնեն թէ «հայոց վարդապետներն ալ այսպէս կը խոստովանին», մինչդեռ իրենց սկզբունքը Տաթեւացւոյն եւ Նարեկացւոյն ըսածին բնաւ չի յարմարիր. Հոգեգալստեան շարականի ճաշուն, բճ. որ 'ի յարաշարժ աղբերէն . . . անհատապար բղխեալ 'ի յՈրդւոյ» ասոնք ամենն ալ մի միայն համազօրութիւն խոստովանելու իմաստովեն Արիոսի դէմ, ոչ պապականաց եւ հայոց մէջ եղածն դէմ. մենք ալ արդէն Քրիստոսի համազօրութիւն կը խոստովանինք, բայց անձնաւորութիւն չի շփոթելու եւ չորրորդութիւն դաւանելու պէս չի դաւանելու համար, «բղխեալ 'ի Հօրէ» կ'ըսենք. ո՛չ թէ Քրիստոսի համահաւասարութիւն ստոր ձգելով, այլ անճառելի հաւատալով յորդանմանէն անդին չենք անցնիր.

ղանոնք չի թողուց» (Գործք. ԺԶ. 7.) մար-դու մը վրայ եթէ Քրիստոսի հոգին չ'գայ ա-նոր չէ (Հռովմ. Ը. 9.) Աստուած իր Որդ-ւոյն Հոգին ղրկեց, սուրբ գրոց մէջ դեռ այսպիսի շատեր կան, որ Հայրը բնաւ չի յիշ-ուիր, Հոգին ալ Քրիստոսի ծննդենէն վերջ յայտնուեցաւ ուրեմն մինակ 'ի յՈրդւո՞յ ը-սենք, բայց սխալ է:

6. — Հայաստանեայց Կաթողիկէ և Ա-ռաքելական Եկեղեցին կը խոստովանի գոյու-թիւն և միութիւն Աստուծոյ. և ըստ սմին երրորդութիւն Աստուածային անձանց. սուրբ Հոգին ալ բղխումն Հօր անքննաբար, առող յՈրդւոց անճառաբար. ըստ ըսածն ալ Քրիս-տոսի խօսքին նկատմամբ է «յիմմէ առնի առ-նուցու» ալ քանի որ «այն իմ Հօրմէս պիտի առնէ» ըսած է, արդէն որդին հօրը ժա-ռանգն է «հայրը ինչ որ ունի իմս է». հայ-րը իմ մէջս է, ես ալ անոր մէջ» ուրեմն «բղխեալ 'ի Հօրէ» խոստովանելով համագո-յութիւնը հեռու է, զի Որդին Հօրը մէջ է, ալ անգամ մ'ալ հարկ չ'կայ. Որդին Հօրմէն բաժնել միութեան կարգին մէջ: Գալով անձ-նաւորութեան, զատ զատ յայտնուելուն հա-մար զանազանութիւն անձանց կը դաւա-նենք,, ալ հարկ չ'կայ չփոթելու «'ի Հօրէ ե-լանէ (Յովհ. ԺԵ. 26.) միով բանիւ,, քանի

միութեան, 'ի նոսին և 'ի նոցունց, իսկ՝ ըստ անձնաւորութեան և աղաւնակերպ իջման «բղխեալ 'ի Հօրէ», ո՛չ թէ 'ի Հօրէ և յՈրդւոյ ըսելով՝ խառնաշփոթ դաւանութիւն մը։

Աշխարհի ստեղծմանէն առաջ ջրոց վրայ պտըտելով Աստուծոյ հոգւին քննել, կամ մարգարէից չի յայտնուած գաղտնիքը յորդանան որ յայտնուեցաւ, այն կարգը ձեռքէ ձգելով՝ իրեն կամաց չի հետեւողին ուրացող ըսելը աւելորդ և յանդգնութիւն է։



## ԳԼՈՒԽ Գ.

## ԴԱՍ ԺԲ.

### ԱՐԱՐՉԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, ՆԱԽԱԽՆԱՄՈՒԹԻՒՆ ԱԶԱՏ ԿԱՄՔ՝, ԵՒ ՇՆՈՐՀՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ

1. — Արարչագործ ի՞նչ ըսել է։ 2. — Աշխարհ ի՞նչպէս կը կառավարուի. տարերք որո՞նք են. բնութեան վրայ խօսելէն ի՞նչ կիմացուի։ 3. — Հրեշտակներ կա՞ն. ի՞նչ են։ 4. — Բնութիւնը ի՞նչ օրէնքով կարգադրած է Աստուած։ 5. — Ի՞նչ են այդ կարգադրութիւնք. ամէնն ալ իրենց վիճակէն գո՞հ են։

*1. — Արարչագործ անունը այնպէս կը տրուի Աստուծոյ աստուածաբանօրէն, որ երկինքը ու երկիրը և անոնց մէջ բոլոր գտնուածները, թէ էակ ըլլայ թէ գոյակ, թէ անձ ըլլայ և թէ իր, բոլորն ալ Աստուած ստեղծեց, ոչ թէ յընչէ՝ այլ յոչնչէ. մի միայն բանական հոգին իւր սկիզբը Աստուծմէ կ'առնէ, իսկ միւս արարածներ «եղիցի» բառին հրամայողական ազդեցութենէն։*

Արարչագործ բառը իւր բուն նշանակութեամբ, բան մը ընել կամ գործ մը երեւան բերել կը նշանակէ, զոր օրինակ. ոսկերչութիւն, քանդակագործութիւն, ժամագործութիւն եւայլն արհեստներ ալ բան մը յառաջ կը բերեն: իսկ անձեր և էակներ արհեստով չեն ըլլար. նոյն իսկ իրերն ալ արդէն եղած և պատրաստուած իրերէն արհեստաւորաց ձեռքով նոր իրականութեան մը կը վերածուին. եթէ ոսկին, արծաթը, սնդիկը, պղինձը և երկաթը եւայլն նիւթեր արարչապետէն պատրաստուած որ չըլլային՝ արհեստաւորներ ի՞նչ պիտի չինէին. ուրեմն պատճառ պատճառաց Աստուած է միայն. և Արարիչ, Արարչագործ և Արարչապետ ստորոգելիները Աստուծոյ յատուկ են:

2. — Բնութեան հեղինակը անոնց մէջ զանազան ուժեր դրաւ աշխարհը կառավարելու համար. գլխաւորաբար ելեքտրական զօրութիւն և տաքը, որոնց գաղտնիքը սորվողները առաջին անգամ կարծեցին թէ աշխարհը բոլորովին անոնցմով կը կառավարուի, բայց գիտութեան մէջ յառաջ երթալով նայեցան որ իրենց չգիտցած գաղտնիք շատ կան. նա մանաւանդ գլխաւոր տարրներ առաջին անգամ չորս գիտէին, այն է, օդ, ջուր, հող և ջերմութիւն. ասոնք կազմէին մնաեր:

ունէին կը կարծուէր, ուրիշ շատ մարմիննե-րու համար նոյնպէս, բայց իրենց չը գիտ-ցածներէն շատերը յօդուածոյ մարմիններուն տակը գացին, նոյնպէս առաջի չորսերն ալ իրենց կազմիչ մասեր ունենալը հաստատուե-ցաւ և շատ բնագէտներէ վաւերացաւ, այն-պէս որ բնութեան գաղտնիքին մինչև դրանը քով հասան, բայց և ոչ բնագէտ մը ներս մտնել կարողացաւ, այնպէս որ ելեքտրիկը կը գործէ, իսկ անիկայ իր ուժը ուսկի՞ց ա-ռաւ: ([1])

Օդ, ջուր, հող և ջերմութիւն են դարձ-եալ գլխաւոր տարրները, որոց կայութիւնը ամէն թանձր աճեցական մարմիններու պէտք է, իսկ չորսն ալ զատ զատ իրարու հակա-ռակողներ են, այնպէս որ օդը առանձին կը սառեցնէ թէ որ ջերմութիւնը չխառնուի,

([1]) Չորս տարերք, վերջը յիսուն և չորս ճիւղերու բաժնեցին, թթուածին, քլոր, ծծումբ և այլն· մինչեւ անգամ ածուխի, երկաթի, ոսկիի և արծաթի տարր ըսուեցաւ և անոնց մէջ՝ քիչ մար-մին կայ որ մէջը թթուածին չըլլայ ըսին, և ա-մեն մարմինները իրենց կազմիչ մասերուն վերա-ծեցին, բայց ամեն զատ զատ մասերու մէջ դարձ-եալ զատ զատ ուժեր գտնելով այն ուժը դնողին վրայ զարմացան ո՛չ թէ ուժին, անոնց արարիչն է գովելի ոչ թէ արարածը, որ գաղտնիքի մէջ գաղտնիք դրած է:

սիւնի կեցնողը մի և նոյն արարիչն է, որոյ-մով երկնի փառքը կը պատմուի (Սաղմ. ԺԸ. 1.)։

3. — Արարիչը անտեսանելի ըլլալուն համար, անտեսանելի պաշտօնեայներ ալ ունի, նախ երկինքը ու երկիրը ստեղծեց (Ծննդ. Ա. 1.) իսկ այն պաշտօնեայները երբ ըրաւ չենք գիտեր, միայն Աստուածային հաւատով սուրբ գրքէն կը սորվինք թէ՝ կան հրեշտակներ և հրեղէն արարածներ, ինչպէս որ Պօղոս Դաւիթէն առնելով կ'ըսէ «արար զպաշտօնեայս իւր 'ի հուր կիզելոյ, (Եբր. Ա. 7. Նոյնպէս այլ եւ այլ վկայութիւններ շատ և սուրբ գրոց մէջ, հրեշտակներու և անոնց մէջէն մեղանչող սատանայներու վրայօք (Յովհ. Ը. 44. և Յուդ. Ա. 6. Յոբ. Դ. 18.)։

4. Բնութեան հեղինակը անանկ սքանչելի կերպով կարգադրած է, որ առ հասարակ չորս եղանակաց մէջ երկիրը զանազան փոփոխութիւններ կը կրէ. գարուն և աշուն մէջա-օդ. ամառ և ձմեռ, տաք և պաղ; իսկ բնութիւնը դարձեալ նոյն է. ծառ մը այս տարի խնձոր՝ և միւս տարին՝ տանձ չկրնար բերել. ինչ տեսակի վրայ որ բուսած և կամ պատուաստուած է, նոյնը կը բերէ մշտա-ներոյց յաջողութեամբ. և երկիրը ամէն ուժով պտուղ կուտայ. ծառեր և տունկեր

կ'վազէ, ընդհակառակն՝ ամենամեծ գերան մը ջրոյ վրայէն կերթայ։

Յ. Արարչապետը՝ բնութիւնը ստեղծեց տիեզերքը կառավարելու համար, տիեզերքը և բնութիւնը ստեղծեց մարդուն համար, մարդը ստեղծեց իրեն համար. զոր օրինակ բնութիւնը իրեն կացութենէն գոհ է, նոյնպէս երկիրը մշտանորոգ է, ծառեր, տունկեր, բոյսեր, կը մեռնին, դարձեալ կը կենդանանան նոյն գոյութեամբ. անասունք և անբանք, չորքոտանիք և սողունք ամենքն ալ իրենց իրենց վիճակին մէջ գոհ են. գայլը՝ իւր վայրենութեան մէջ անօթի սատկիլ կը սիրէ, քան թէ ընտանեկան կերակուրն և խմելիքը, չկայ թռչուն մը որ լեռնային ծառի ոստ մը թագաւորական պալատի հետ փոխէ. ոսկի վանդակի մէջ դրուած թռչուն մը հաց կերակրուիլը երջանկութիւն չհամարիր, քան թէ լեռնային խոտոյ ունդ մը. կը թռչի ալ չուզեր յետ դառնալ. թէ որ դառնալու վարժուած ալ ըլլայ, դարձեալ թռչելը երջանկութիւն կը սեպէ. վերջապէս մարդոց համար ստեղծուած բոլոր արարածք իրենց վիճակին վրայ գոհ և երջանիկ են։ Մարդս իւր բանականութեամբ ամենէն գեղեցիկ և երջանիկ ըլլալու տեղ ամենէն միայն ապերջանիկ է. չկայ մարդ մը որ իւր վիճա-

կէն գոհ ըլլայ, կամ թէ այլոց վիճակաց չի ցանկայ. ամեն մարդ կուզէ որ ազնուական մը ըլլայ, եղողներն ալ իրենց վիճակէն կամ աւելին և պակասին կը ցանկան դարձեալ. բայց ընդհակառակն, չ՚կայ չորքոտանի մը՝ որ սողունին վիճակին ցանկայ, չ՚կայ սողուն մը որ թռչնոց ցանկայ. թէ որ սողուն մը թռչնոց նման ծառի մը ոստին վրայ դնես՝ հոն կենալ չ՚ուզեր, այլ դէպ ՚ի վար գալով ցեխ մը կը փնտռէ որ հոն մտնէ. չ՚կայ անասուն մը որ մարդուն վիճակին ցանկայ. ամեն մէկը իրենց վիճակին մէջ երջանիկ են։ Քանի որ մարդուս համար ստեղծուածները երջանիկ են, մարդը աւելի երջանիկ ըլլալ պէտք էր անշուշտ, քանի որ այս աշխարհը՝ մարդուն երջանկութիւն չ՚կայ, պէտք է որ ուրիշ տեղ մը փնտռէ իւր երջանկութիւնը։

Միւս արարածք՝ այս աշխարհիս համար ստեղծուած են, և հոս երջանիկ են. դիրք չը կարդացող մարդ մ՚անգամ կրնայ գտնել թէ ինքը այս աշխարհիս համար ստեղծած չէ. անբաններու, ճճիներու և բոլոր անասնոց վրայ ինչ յատկութիւններ որ կան մարդուս համար են, մարդն ալ՝ Աստուծոյ համար. մարդուն ալ ոչ թէ հողակոյտ մասը, հապա բանական հոգին, որ այն հողակոյտին մէջ հիւր մ՚է, ինչպէս որ կաթին մէջ

իւղը․ աման մը կաթէն գետինը թափուած մէկ կաթիլին մէջ ալ կայ իւղ, ամբողջ ամանին մէջ ալ կայ և չտեսնուիր․ իսկ երբ կաթը շատ մը երերի ամեն կողմէն իւղը կը միանայ դուրս կ'ելլէ, այնպէս ալ հոգին մարմնոյն մէջ իբր ծաւալական էութիւն մը չը տեսնուիր և կայ ամեն տեղ, գլուխէն մինչեւ մատանց ծայրը։

Ուրիշ խօսքով․ հոգին մարդուս մէջ հիւր մ'է ինչպէս որ թռչուն մը վանդակի մէջ։

Թռչունը՝ վանդակին մէկ տեղը կոտրելուն կը նայի որ թռչի, նոյնպէս հոգին ալ մարմնոյն հիւանդանալը իրեն պատեհութիւն սեպելով միշտ կ'աճապարէ որ երթայ իր տեղը։

# ԴԱՍ ԺԳ.

## ՆԱԽԱԽՆԱՄՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ.

1. — Նախախնամութիւնը ի՛նչ է, ի՞նչու համար է։ 2. — Աստուածային եւ մարդկային խնամոց մէջ ի՞նչ տարբերութիւններ կան։ 3. — Արարածք ՚ի բնէ չա՞ր են թէ բարի։ 4. — Մարդը ՚ի բնէ ի՞նչ է։ 5. — Խիղճը ի՞նչ է, եւ մարդոց մէջ ե՞րբ կայ. մարդը ՚ի բնէ բարի ստեղծուելուն ի՛նչ ապացոյց ունինք։

*1. — Աստուածային Նախախնամութիւնը նախասահման ըսել չէ, զի Աստուած թէ որ մէկ անգամ սահմանէ ալ իր սահմանէն չը անցնիր, օրինակի համար, մարդուն համար սահման մը դրաւ որ չի կրնար չեղիլ «հող էիր և ՚ի հող դարձիր» այս վճռական սահմանը թագաւորէն սկսեալ մինչ յետին աստիճան մուրացկանին մի և նոյն կերպով կը տիրէ, Դաւիթին ըսածին համեմատ, «մէկը այն սահմանէն չի կրնար չեղիլ»։*

*Հող դառնալու վճիռը՝ նախասահման է, իսկ՝ հող դառնալէն յառաջ աշխարհիս վրայ ապաշխարհելու միջոց տալը նախախնամու-*

թիւն է. իւր որդին աշխարհ ղրկելու խոստումը մասնաւորապէս նախասահման, ընդհանրապէս՝ նախախնամութիւն է, նախ մարդոց պէտոյքը, տարերց և տիեզերաց կարգադրութիւնը, և ապա մարդը սահղծելը նախախնամութիւն է. վերջապէս Աստուծոյ նախախնամութիւնը մարդոց համար է։

2. — Մարդիկ ալ իրարու խնամք կը տանին, բայց շատ անգամ խնամքնին կամ թերի կը մնայ. կամ անձնական շահը և կամ փառամոլութիւնը՝ այն խնամքը իրենց կը սեպհականեն, իսկ Աստուածային խնամքը՝ ոչ թերութիւն մը ունի և ոչ ուրիշին փառքին կարօտ է. ուզեն փառաւորեն ուզեն չփառաւորեն, ինքն իրեն փառաւորեալ է։ Եւ կամ թէ Աստուած մարդուս պէտոյքը թէ նիւթապէս և թէ բարոյապէս կանուխէն խնամած է, որ ամեն մարդ կրնայ զգալ իրեն վճռուածը՝ գտած տանեն. Աստուած այնչափ խնամած է զմարդիկ, որ երկնաւոր Հօր պէս կատարելութիւն և անոր որդիներ ըլլալու կարողութիւն տուած է. «եղերուք կատարեալ» նաև (Մատթ. Ե. 9—45. ։ Յովհ. Ա. 12.) մանաւանդ կանուխէն սահղծած տանեն «ըստ պատկերի մերում», «իբրև զմի 'ի մէնջ» մարդուն համար ըստ.

3. — Արարածոց մէջ չար բան մը չկե-

նայն ալ Աստուծոյ նախախնամութեան գործն է։ Նոյնպէս չ'կայ չարիք մը որ գայ մարդուս Աստուծմէ, «ետես Աստուած զի բարի են» կամ «Աստուած անփորձ է չարեաց» (Յակբ. Ա. 13.) ուստի Աստուծոյ կամացը վրայ տեղեկութիւն չունենալնուս է որ երբեմն տրտունջ կ'ընենք թէ «Աստուած այս ինչ բանը ինչո՞ւ ստեղծեր է» կամ «բնութիւնը այն անպիտան արարածներն ալ ինչու կը պաշտպանէ», արարածներուն մէջ ամենէն անպիտանը մժղուկն է, ան ալ դարձեալ պէտք է տղմուտ տեղերու ապականեալ օդը ծծելու համար, նոյն իսկ գազանները թէ որ 'ի բնէ չար ըլլային մարդկան չէին վախնար. անոնց ըրած վնասին նպատակը ո՛չ թէ ուրիշը վնասել է, այլ իրենց օգտին և կերակուրին համար է; մենք շատ անգամ մեզի օգուտ ալ չ'կենալ, թող զայլս, նոյն իսկ մեր պատկերակիցը կը վնասենք, ուրիշ խօսքով. Եզնիկ Կողբացւոյն ըսածին պէս, թէ որ գազանները անհնազանդ ու չար ըլլային Ադամին առջեւ չէին խոնարհէր անուանելու կանչել տալու (Ծննդ. Բ. 20.)

4. — Գալով մարդուն, 'ի բնէ չար չէր, զի Աստուածային շնորհ փչուած էր անոր մէջ. իսկ մարդը և թէ հարցնէ մը. Երբ չարակա-նէր ազատ կամքը մեղանչեցին, Երեւցանակ.

Տղայական, պատանեկական և երիտասարդական կրթութեան մէջ ոմանք քիչ և ոմանք շատ, ոմանք յոռի և ոմանք լաւ վարժութիւն ձեռք կը բերեն, ազատ կամօք ինչ որ սովորութիւն ընեն այնպէս կը վարժուին. «բազմաժամանակեայ սովորութիւն զբնութեան զօրութիւն առնու» կըսէ իմաստասէրին մէկը, օրինակի համար, բնութիւնը տղայութեան մէջ գինիէն, օղիէն, ծխախոտէն կը զզուի, իսկ վերջը սովորութիւնով անկէ չ'կրնար հեռանալ, զի սովորութիւնը՝ որ ազատ կամքէն կախեալ է, բնութեան ուժը առաւ:

Տղայական հասակին մէջ այս յանցանքները սովորութեան նշաններ են ոչ թէ մեղքեր, զի 'ի բնէ նախախնամութիւնը բարի ստեղծելուն համար, կը տեսնենք որ մանր տղայոց վրայ անմեղութիւն կը փայլի, առք գլուխ բաց, մինչեւ անգամ անոնց մերկութիւնն ալ սիրուն է. իսկ երբոր պատանեկութեան հասնին և բնութեան ու անոր հեղինակին դէմ մեղանչել որ սկսին վրայնին մազեր կը բուսնի, տարիքնին քանի որ չանցնայ մերկութիւննին այլանդակի մը կը փոխուի, մերկու մը երեւնալ չեն ուզեր. իսկ սա ալ կայ որ այս աղտեղութեանք հաղորդ վրայ չէր այլ մարմնոյն, որովհետեւ հոգին ինչ որ

է տղայութեան մէջ, նոյնն է ծերութեան մէջ,
բայց մարմինը հոգւոյն գործարանը ըլլալով
անոր աճելովը ազատ կամաց թէ բարի և թէ
չար գործերն ալ կ՚աճին ։

Աստուածային արարչագործութենէն և
նախախնամութենէն սորվեցանք որ չար բան
մը ըրած չէ . Նախ երկինք և երկիր և անոնց
մէջ եղածները ստեղծեր է ; բնութեան ձեռ-
քը յանձնելով մարդուս համար, մարդս ստեղ-
ծեր է որ զանոնք վայելէ իրեն համար. այն-
չափ խնամած է որ մարդիկ բնութեան գաղտ-
նիքը գիտնալով տունկերուն և բոյսերուն
բնութիւնները սորվին որոց մէջ մարմնոյ առ-
ողջացուցիչ յատկութիւններ կան . դաղտնեաց
մէջ եղած գաղտնեաց գիտութիւնը միայն ի-
րեն թողլով. Նոյնպէս ըստ բարոյականին ալ
խնամեր է , նախ իւր որդին աշխարհ ղրկե-
լով և չարն ու բարին ճանչնալու յատկու-
թիւնը անոնց մէջ դնելով բանական շնորհօք։
Բ. Նոյն շնորհօք բարւոյն հետեւողին խոստա-
ցած է իւր նախախնամութեան մէջ գերբնա-
կան շնորհքն ալ։

# ԴԱՍ ԺԴ.

## ԱԶԱՏ ԿԱՄՔ

1. — Նախասահմանը ի՞նչ է ։ 2. — Աստուծոյ կանխագիտութենէն նախասահմանն կը հետեւի՞։ 3. — Սուրբ գրոց վկայութիւնք ի՞նչ են ։ 4. — Հարստութիւնը ու աղքատութիւնը տուողը Աստուած չէ՞ ։ 5. — Օրհնեալ հարուստը ո՞րն է։ 6. — Սողոմոնի ընտրութիւնը, Պօղոսի կոչումը սահման չէ՞ն. չ'ընդունիլը մեղք չէ՞. արդարութիւն եւ ողորմութիւն ի՞նչ է ։ 7. — Աշխարհիս արկածները ու փորձանքները ուրկէ են ։

*1. — Աստուծոյ անհուն գիտութենէն առնելով ոմանք ըսել ուզեցին թէ, մարդումը թէ արդարութիւն և թէ մեղաւորութիւն, թէ հարստութիւն և թէ աղքատութիւն, թէ հիւանդութիւն և թէ առողջութիւն Աստուած կանուխէն սահմանած է, և ամեն մէկուն ինչ ըլլալիք ըլլալը գրած է իր հեռատեսութեան և կանխագիտութեան մէջ, որուն կ'ըսուի Նախասահման ։*

*Շատ աստուածաբաններ և փիլիսոփայ-*

ներ այս վէճը ըրին, բայց նախասահմանն հաւատացողներն ալ որչափ որ աստուծոյ կանխագիտութենէն չափելով կայ ըսին, այնչափ ալ մարդուն անձնիշխանութեանը նայելով կախեալ բերին. մինչեւ անգամ շատ մը վկայութիւններ գտան սուրբ գրքէն նախասահման հաստատելու համար. ինչպէս Դաւիթ կ'ըսէ «սահման դրիր որ չանցնին» նոյնպէս աշխարհի սկիզբէն ձեզի պատրաստուած արքայութիւնը ժառանգեցէք (Մատթ. ԻԵ. 34.) «Աստուած իւր սիրելիներուն պատրաստեց որ աչք տեսած չէ» (Ա. Կորնթ. Բ. 9.) դեռ ասոնց պէս շատեր կը գտնուին հին և նոր կտակարանի մէջ։

2. — Աստուածային կանխատեսութեան վրայ կախեալ չունինք, զի նախասահմանն ու ազատ կամքը երբ իրարու քով դան, թէ կատարեալ էակութեան մէջ ներգործական չծագհաց նկատմամբ ըլլայ և թէ փիլիսոփայօրէն ըլլայ, սկզբնական պատճառը երկրորդականէն առաջ է. առաջինը ետքինէն անկախութիւն կունենայ, իսկ ետքինը առաջինէն չունենար։ Աստուած մեզի ստեղծեց գիտակցութիւն հետ մեր ընկերը և ըմբռնելու ալ գիտէ, բայց հայր մը իւր որդւոյն պատիւն [illegible] պիտի [illegible] և պատիւն տեսնելով որդւոյն այն պատիւն վրայէն

էինալը հօրը տեսութեանը թերութիւն մը չէ, մանաւանդ որ բանական հոգին չարն ու բարին գիտէ ։

Աստուած 'ի սկզբանէ աշխարհի իւր սիրելիներուն տեղ պատրաստեց, կասկած չկայ, իսկ ով որ սիրուի այն է սիրելին, որ նախախնամութեան կը վերաբերի ու թէ նախասահմանի. մասնաւորապէս չի խոստացաւ, այլ ընդհանրապէս, ասոր համար Քրիստոս ըսած է, «Խնդրեցէք և տացի ձեզ (Մատթ. Է. 7.) թէ որ Աստուած՝ ծնելէն առաջ դըժոխքի համար սահմանած ըլլար խնդրելէն ի՞նչ օգուտ պիտի ըլլար.. նոյնպէս Պօղոս կ'ըսէ «արժանապէս չ'պատերազմողը չ'պսակուիր» (Բ. Տիմոթ. Բ. 5.). այն Աստուծոյ իսկզբանէ պատրաստած տեղը ամենն ալ կանչուած են, երթալն ու չերթալն ալ ազատ կամաց ձեռքն է. (Բ. Պետր. Ա. 11.)։

Բնութիւն, իմաստութիւն և կամք Աստուծոյ. թէ որ մտածուի, բնութիւնք անըսկիզբն է; արդար և ողորմած. իմաստութիւնը և գիտութիւնը անհուն ըլլալուն համար չ'չափուիր. գիտութիւնը գործողութենէն առաջ է, ընելէն առաջ իւր գիտութեան մէջ հարկաւ տեսած է. բայց բանական հոգին ու ազատ կամքն ալ չէին կրնար անոր գիտութեան առջեւէն հեռանալ, կը գործեն մինչեւ գերեզմանին դուռը ։

Այո՛, Աստուծոյ գիտութիւնը չ'սխալիր. մարդոց գիտութիւնը բնութեանը ներհակ կ'ըլլայ շատ անգամ, բնութիւնը կ'ուզէ որ այնինչ գործը գործէ, գիտութիւնը չ'ժամաներ. շատ անգամ ալ բնութիւնը թող չ'տար, խոկ Աստուածային անձինք ինչպէս որ անբաժանելի են, նոյնպէս ալ անոր գիտութիւնը, բնութիւնը, և կամքը չեն բաժնուիր իրարմէ. անոր համար մենք անոր սահմանելը և չ'սահմանելը չենք կրնար գիտնալ, մի միայն ըլլալէն վերջը կը գիտնանք որ սահմանուած է եղեր անյայտ ժամանակի մէջ, ան ալ մասնաւորապէս ոչ թէ ընդհանրապէս։

3. — Սուրբ գրոց մէջ տեսնուած սահմանի վերաբերեալ խօսքերը Աստուածային ընդհանուր կողման կը վերաբերին, Աստուած երբէք չուզեր որ բնաւ մէկը կորսուի. թէ որ անանկ սահման մը կենար, Քրիստոսի գալ խաչուելուն պէտքութիւն չէր կենար, մանաւոր սահմաններէն ալ աւելի ազատ կամքը մեզի ծանօթ է, անոր համար մենք չենք կրնար ըսել թէ մեզի մասնաւորապէս պիտի ընտրէ, կամ պիտի կանչէ, ինչպէս որ քանիներ ընտրեց ու կանչեց. հապա մենք մեզի պէտք է ընդհանուր կոչման մէջ ճանչնանք, երթալու ու չերթալու մեր ազատ կամաց ձեռքին է։

4. — Հարստութիւն ու աղքատութիւն դարձեալ այսպէս է, և երբեմն ալ դիպուած. թէ որ հարստութիւնը յաճախապէս Աստուածային պարգեւ է մասնաւոր անձերու, ըսել է որ հարուստները սիրելի են, վա՜յ աղքատներուն :

Հարստութիւն ու աղքատութիւն շատ անգամ աշխատութեան ու ծուլութեան արդիւնքն են, որուն համար Սողոմոն առակաց գրքին մէջ քանի տեղ ըսած է, և երբեմն ալ դիպուածով կ'ըլլայ. քանզի աշխարհիս վրայ շատ հարուստներ կան, որք հարստանալու արժանիք չունին դիպուածով եղած են. Նոյնպէս շատ ալ հարստութեան արժանիք ունեցող աղքատներ կան, որոց ձախողակ դիպուածը և պարագայն արգելք եղած են, թէ ոչ աղքատութիւնը թշուառութիւն է, Աստուած չուզեր որ մարդը թշուառ ըլլայ, Աստուած բարի է, բարիքէն չար չ'գար :

Ասոր համար և ընդհանրապէս այսպէս է, որ աղքատ կամաց կը վերջանի, իսկ Աստուածային կանխագիտութեան մէջ երբեմն մասնաւորներ կ'ըլլան որ ուրիշ են, օրինակի համար, Դաւիթ կ'ըսէ. «ամէն մեղաւորաց եւն յաջողեալ է նոցա». ուրիշ անգամ մ'ալ կը նայիս, «կին քո որպէս այգի վայելուչ կող-

ինքն տեղ մը կ'ըսէ «գէշ մարդիկն ալ հա-
րուստ կ'ըլլան» որ՝վերը ըսուած դիպուա-
ծին կը վերաբերի, քանի մը տեղ ալ աշխար-
հիս վայելքը բարի մարդոց կուտայ, աս ալ
ուրիշ խնդիր է. այնպէս որ ուզէ դիպուա-
ծով ըլլայ ուզէ աշխատութեամբ ըլլայ, ուզէ
գէշ մարդոց ձեռքը գտնուի, ուզէ բարի
մարդոց, աշխարհիս վրայ հարստութիւն դնո-
ղը Աստուած է, անոր համար մենք առհա-
սարակ «Աստուած տուերէ որ հարուստ ե-
ղեր է» կ'ըսենք, որ ըսել է հարստութիւնը
ըստ մասնաւորին Աստուծոյ տուրք չէ, ընդ-
հանրականին համեմատ ալ առանց Աստու-
ծոյ բան մը եղած չէ. գալով մասնաւորին
Աստուած Յոբին հարստութիւն տուաւ, ան-
կէ ետ առաւ. դարձեալ տուաւ. ասանկնե-
րուն Աստուածային մասնաւոր գաղտնիք կ'ըս-
ուին, որ մեր խելքէն վեր է, նոյնպէս Պօ-
ղոսին և միւս առաքելոց մասնաւոր կոչումը:

5. — Դաւիթին ըսած օրհնեալ հարուս-
տը «առաջուց օրհնեալ էր որ հարուստ եղաւ»
չենք կրնար ըսել, հապա հարստութիւնը
արդէն Աստուած աշխարհիս վրայ դրած էր
առհասարակ, թէ դիպուածով թէ խելքով
և թէ աշխատութեամբ հարուստ ըլլալէն վեր-
ջը կուգայ անոր անեծքն ու օրհնութիւնը,
այն է Դաւիթ հարուստներու վրայ առաքի-

նական պարտք մը կը դնէ. Նոյնպէս Պօղոս հարուստներուն առաքինի ըլլալ կը պատուիրէ. Նախ կ՚ըսէ որ արծաթասիրութիւնը կռապաշտութիւն է, (Ա. Տիմոթ. Զ. 10) վերջը կը դառնայ թէ հարուստները առատ թող ըլլան, ագահ հարուստին համար Յակոբ ալ վայ կը կարդայ, Քրիստոս շատ և շատ դժուար կը դատէ անոնց արքայութիւն մտնալը, որոնցմէ կը բովանդակուին թէ հարստութիւնը Աստուած ընդհանրապէս տըւած է, ամեն մարդու ձեռք կրնայ անցնիլ, հարուստ ըլլալու չի փափաքիլը եկեղեցականի համար պարտք է, աշխարհականի համար ալ ծուլութիւն է, գոհ չըլլալը ագահութիւն է, հարստութեան արժէքը չգիտնալը ոռկրամոլութիւն, շռայլութիւն և տգիտութիւն է, հարստութեամբը համեմատ առաքինութիւն չգործելը անիծեալ և վայուց արժանի պիղծ հարստութիւն է. որոնք ընդհանրապէս ազատ կամաց գործեր են ոչ թէ նախասահմանի:

Մենք նախասահմանութեան վկայութիւն փնտռած ատեննիս, Աստուածային մատենաւոր գաղտնիքներուն դիմելու իրաւունք չ՚ունինք. Հիւանդութիւնը՝ մարդուս վրայ շատ անգամ բնութեան դէմ մեղանչելէն կուգայ, որով մեղօք՝ մարդոց կեանքը, անգամ կար-

ճրցաւ. երբեմն ալ բնութեան հեղինակին դէմ մեղանչելով, որ դարձեալ մեղք ըսել է, այն է՝ հիւանդութիւնը մեծաւ մասամբ և առ հասարակ մեղքէն յառաջ կուգայ, որովհետեւ Աստուած մարդուս բնական կարողութիւն տուած է չարն ու բարին ճանաչելու, անոր համար Քրիստոս հիւանդաց կ'ըսէր «ահա ողջացար մի՛ եւս մեղանչեր» ըսել է մեղքէն յառաջ եկած է եղեր, ուրեմն ազատ կամաց գործ է։

6. — Աստուած իւր կանխագիտութեան մէջ կը սահմանէ մասնաւորապէս մէկու մը համար որ բարի ըլլայ. այն սահմանուածը անգամ ազատ կամօք սահմանին դէմ կրնայ կենալ, զոր օրինակ, ուրիշ մասնաւոր սահմաններ մեզմէ պահուած են, Սողոմոնի մասնաւորապէս և յայտնի սահմանը գիտենք թէ «քեզի պէս եկած չէ և չի պիտի գայ» ահա քեզի սահման, ասկէ վերջ գործը ազատ կամաց կը թողու, «թէ որ հայրդ Դաւիթին պէս քալես, (Գ. Թագ. Գ. 12—15.) նոյնպէս Պօղոս անօթ ընտրութեան կոչուեցաւ. իսկ Սողոմոն ազատ կամօք մեղանչեց, Պօղոս յաղթեց մարմնոյն վրայ եկած ցանկական կրից (Հռովմ. Է. 23.)։

Նախասահմանի դէմ խօսիլը, Աստուծոյ գիտութեան դէմ մեղանչել չէ, հապա

Աստուածային դաղանները անճառելութիւնը խոստովանիլ, մանաւանդ մարդկային ազգին մէջ դրած բանական հոգւոյն ուժը և կարողութիւնը պարզել, ուստի ըստ մասնաւորին թէ որ մէկը Աստուծոյ կողմէն պատժուի, դժգոհալու չէ, այլ պէտք է հաւատալ թէ Աստուծմէ եկածը բարի է, նա մանաւանդ Աստուած բարի է և արդար, արդարութիւնը վարձք և պատիժ կը պահանջէ. այսօր կը մեղանչենք կը զղջանք վաղը դարձեալ, ըստ արդարութեան հարկ կ'ըլլայ որ անմիջապէս պատժուինք, զի բանական հոգին՝ մեղանչելուն դէշ ըլլալը գիտէր, պէտք էր չի մեղանչել. իսկ այս աշխարհիս վրայ Աստուծոյ ողորմածութիւնը կը տիրէ իւր արդարութեան հետ, եթէ ոչ անոր արդարութեանը յառաջ ապրելու իրաւունք ալ չունինք. տես որ մեղանչող հրեշտակաց՝ չը ներեց անոր արդարութիւնը, զի անոնք հողեղէն չէին, իսկ՝ մենք հողեղէնքս անոր ողորմութեան և շնորհացը կարօտ ենք։

7. — Նոյն իսկ աշխարհիս վրայ ապրելու մէջ մեծ վտանգներ կան, նաւու մէջ նըստիլ, ձի հեծնալ, տան մէջ նստիլ, պատերազմիլ, վերջապէս աշխարհս վտանգ է, փայտի մը ծայրը՝ մարդ մը կը մեռցնէ թէ որ Աստուած չի խնամէ, ասոր համար է որ

Դաւիթ կ'ըսէ «եթէ ո՛չ տէր շինէ զտուն ունայն վաստակին շինողք նորա» այս վտանգներէն Աստուած զմեզ կը պահէ պահապան հրեշտակաց միջոցաւ «հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս հօր իմոյ որ յերկինս է» ասոր համեմատ թէ որ Աստուած մէկը չխնայել կամ պատժել ուզէ, ոչ թէ մէկը ծով ձգելու կը մղէ, հապա ըստ արդարութեան չողորմելով՝ պահպանութիւնը ետ կը քաշէ, վասն զի մարդը ինքն իրեն միշտ իյնալու հակամիտ է, Աստուած անփորձ է չարեաց, այս պատճառաւ Քրիստոս «և մի տանիր զմեզ 'ի փորձութիւն» աղօթել սորվեցուց:

Աստուծոյ ողորմութիւնը, արդարութիւնը և սահմանը չի չափուիր, կայ ըլլալը մեզ ծանօթ է, իսկ չափը գաղտնի, սակայն անոր նախախնամութիւնը և մեր ազատ կամքը յայտնի և ընդհանուր, ուստի մենք ընդհանուրի կը վերաբերինք ոչ թէ մասնաւորի, ուրեմն պէտք է չի մեղանչենք երկինքի համար, հոգւով և մարմնով չի պատժուելու համար. զի բնութեան հեղինակը՝ մարդուս մէջ բանական հոգի ալ դրած է, մասնաւոր վարձքըն ու պատիժն ալ Աստուծոյ կամքէն կախեալ է զորս մենք չենք գիտեր:

# ԴԱՍ ԺԵ.

## ՇՆՈՐՀՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ

1. — Աստուածային շնորհքը որո՞ց վրայ կայ. ամէն մարդ ունի՞ թէ ոչ. Դաւիթ ինչո՞ւ երբեմն անասունի կը նմանեցնէ։ 2. — Շնորհքը քանի՞ տեսակ է։ 3. — Ադամ նախապէս զայն ստացա՞ւ թէ ոչ։

1. — Աստուածային շնորհաց վրայ տեղեկութիւն չունեցողները կը կարծեն թէ, մարդ այն շնորհքը կամ ունի կամ չունի, «թէ որ ունի Աստուածային շնորհք՝ չի մեղանչեր» և վկայութիւն ունին Դաւթին «մարդ 'ի պատուի էր . . . հաւասարեցաւ անասնոց» ըսած խօսքը, և կամ Յովհաննու Կաթողիկեայ գրուածոց մէջէն թէ. «Աստուծոյ Հոգւին ունեցողը չը մեղանչեր» թէ որ այս խօսքերը ոմանց պէս խորթ ու ծուռ մեկնենք, նոյն առաքեալը կ'ըսէ թէ «մեղք չունիմ ըսողը սուտ է». ուստի եզրակացնենք թէ «մեղք չունեցող մարդ չկայ, Աստուծոյ շնորհաց եղած տեղը մեղք չըլլար, ուրեմն

Աստուծոյ շնորհքը ընաւ մարդու մը վրայ չ'կայ », որ ըսել է պարապի կ'աշխատինք։

Այդպիսի գաղափարներ Աստուծոյ շընորհաց բաժանման վրայ գաղափար և կամ հմտութիւն չունենալէն յառաջ կուգան, զի Աստուած իւր հոգին չափով չի տար։ Առաքելոյն ըսածին պէս « շնորհաց համեմատ տեսակ տեսակ շնորհք (Հռովմ. ԺԲ. 3—6.) դարձեալ թէ « շնորհքը կը բաժնուի, յաջողութիւնը կը բաժնուի, բայց հոգին մէկ է ». (Ա. Կորնթ. ԺԲ. 4.) այս հոգւով ոմանք բժշկութիւն կընեն, ոմանք իմաստութիւն կ'ունենան ոմանք ալ հաւատք (Նոյն 8.) որ ըսել է, չ'կայ մարդ մը որ շնորհք չունենայ, զի ամեն մարդ մէկ մարդէ մը յառաջ եկած է, այն մէկ մարդն ալ Աստուծոյ փչելովը հոգի առած է. իսկ ազատ կամօք կը մեղանչէ, որով Աստուծոյ հոգին կը տրտմի (Եփես. Դ. 30.) ալ թէ շնորհաց բաժինը անկէ կառնէ բոլորովին մինչեւ գերեզմանին դուռը. ըստ այսմ մարդուս բանականութիւնն ալ շընորհաց բաժին մ'է։

Դաւիթին ըսածը աւելի խիստ է, ինչպէս որ Սողոմոն ալ իւր հօրը խօսքը կը վերացնէ. ո՞վ «գիտէ թէ մարդոց հոգիները վերեւ կ'ելլեն (Ժող. Գ. 21.) այսինքն «մարդ'ի պատուի էր ... հաւասարեցաւ անասնոց»

ուրեմն ոչ թէ մարդն է չար եղողը, այլ աղտա կամաց գործը չար է. որով կը տրտմի Հոգին Աստուծոյ. անանկները բաւական շնորհք ունին, բայց գործերնին անբանի գործ է. այն է վնասել, վիրաւորել, իրեն չեղածին հետ միանալ, զայն յափշտակել և այլն: Ասոր համեմատ առանց գերբնական շնորհաց արժանանալու մեռնողները՝ տանջանաց համար կը մեռնին, հոս ալ անասնաբար տանջանքի մէջ են՝ անոնցը նորոգութիւն ըսել չէ, ինչպէս որ Պօղոս կ'ըսէ « ամենքս ալ պիտի մեռնինք բայց ամենքս ալ պիտի չը նորոգուինք. (Ա. Կորնթ. ԺԵ. 51.) ոչ թէ մարդը անասուն է այլ գործը չար է:

2. — Շնորհքը կը բաժնուի բառոյնէ, ընդհանրականէ, նորելէ, նորոգականէ, բնականէ, գերբնականէ, ուրբուրուրէ, ընդհանրապէս եօթնութեան կ'ըսուին, որոնք Աստուծմէն կը տրուին մարդոց, այնպէս որ բաւական շնորհօք առ հասարակ կը գործեն, կարելով իրարմէ կը տարբերին քիչ շատ կատարելութեամբ, բարոյականով և բնականով՝ ոմանք շատ ուժեղ են ոմանք քիչ, ոմանք շատ գեղեցիկ են ոմանք քիչ, ասոնց ամենքն ալ շնորհաց բաժիններ են, որոց վրայ կուգայ գերբնականը և գերբնականին վրայ արդարարը. ուրիշ խօսքով. գերբնականը կամ արդարարը մի և նոյն իմաստով առնելով մար-

զը բոլորովին Աստուծոյ համար միածող մը կը հանդիսանայ, ասոր համեմատ Պօղոս շնորհաց բաժինը համրած ատեն «յաջողութիւն գիտութիւն, հաւատք եւայլն» կըսէ, որով կը հասկցնէ թէ յաջողութիւնն ու գիտութիւնը միւս շնորհօք կըլլան. իսկ գերբնականը հաւատքին վրայ կուգայ. ինչպէս որ մարգարէից տրուեցաւ գերբնական շնորհք, առաքելոց տրուեցաւ գերբնական և սրբարար շնորք:

3. — Ոմանք վէճ ըրին թէ, Ադամ ի՞նչպէս որ ըլլար կրնար չի մեղանչել, կամ ի՞նչպէս շնորհօք ծնաւ. իսկ ասիկայ մեզի համար վէճի բան մը չէ. «Ադամ նախապէս ոչ մեղօք և ոչ գերբնական շնորհօք ստեղծուեցաւ» ալ որ ըսենք, Ադամին նախապէս գերբնական շնորհքը տրուեցաւ, ուզէ այն վայրկենին ըլլայ ուզէ ետքը ըլլայ. զի նախամարգարէն Ադամ եղաւ, որ կինը տեսածին պէս իւր ոսկորէն ըլլալը գիտցաւ, աւելին այն է անմահօրէն ստեղծուած էր. ուրեմն՝ գերբնականը բաւականէն ետքը գալով ազատ կամաց ձեռօք կրնայ մնալ մարդուս մէջ և կրնայ ալ դառնալ. ուրիշ խօսքով. մարդս ազատ կամօք միայն մեղանչելու կարող է Աստուծոյ դէմ:

# ԳԼՈՒԽ Դ.

## ԴԱՍ ԺԶ.

### ՔՐԻՍՏՈՍԻ ԵԿԵՂԵՑԻՆ ԵՒ ԱՆՈՐ ՑԱՏԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

1. — Եկեղեցին ի՞նչ կը նշանակէ. ի՞նչէն կը բաղկանայ: 2. — Գլուխ եկեղեցւոյ ո՛վ է: 3. — Քանի՛ նշան կամ յատկութիւն ունի:

*1. — Եկեղեցին ժողով կամ ընկերութիւն կը նշանակէ, որ Քրիստոսի անդամն է:* (1)

---

(1) *Քրիստոսի եկեղեցին մէկ է, առաջին երկրորդ և մինչեւ երրորդ ժողովներ տիեզերական և ընդհանուր ըլլալով առ հասարակ քրիստոնեայներէն ընդունուած են, սակայն վերջին յոյներ* կա- թողիկէ *բառը իրենց սեպհականել ուզեցին. Նոյնպէս ալ Լատինք. առաջինները* օրթօտօքսօս *վեր- ջինները* կաթոլիկ *անուանը, և այնչափ պաշտպանեցան որ իրենց դաւանութեան չը հետեւողները բնաւ քրիստոնեայ չի ճանչնալ քարոզեցին, բայց ճշմարտութիւնը հաւատոյ վրայ է ոչ թէ անունի: Հայաստանեայց եկեղեցին բաց կը թողու երկինքին դուռը բոլոր ճշմարիտ հաւատացելոց համար:*

Բարոյական եկեղեցին մարդոցմէ կը բաղկանայ, և կրօնքի վրայ կը հաստատուի, ինչպէս որ կ'ըսուի զինուորեալ կամ յաղթական եկեղեցի. ասոր համար է որ Քրիստոս՝ եկեղեցին հասարակ ժողովուրդէն կը տարբերէ «թէ որ ժողովուրդին չը լսէ եկեղեցւոյն ըսէ» կամ թէ «որ զձեզ ընդունի, զիս ընդունի» և այլն, այսպիսի շատեր ըսելէն զատ, յարութիւն առնելէն վերջը կրկին և կրկին վաւերացուց անխափան մնալու համար «ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ 'ի կատարած աշխարհի (Մատթ. ԻԸ. 20.) «առէ՛ք հոգի սուրբ, որ արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս (Յովհ. Ի. 23.) ուսկից կրնանք հետեւցնել թէ Քրիստոսի եկեղեցին նախապէս ձեռնադրեալներէ կը բաղկանայ. երկրորդ ձեռնադրեալներէն վերջ մէկտեղ ընդհանուր հաւատացեալներէ:

2. — Եկեղեցւոյն գլուխը Քրիստոս է (Եփես. Ե. 23.) Քրիստոս մէկ է, նոյնպէս թէ հաւատքը և թէ մկրտութիւնը մէկ է, որ ըսել է ճշմարտութիւնը մէկ է և իրարու հակառակ տեղեր չի կրնար բնակիլ:

3. — Եկեղեցի մը Քրիստոնէից եկեղեցի ըլլալու համար երեք յատկութիւնները ունենալու պէտքութիւն ունի, զի նախ՝ Քրիստոս մէկ է, կը պահանջէ միութիւն. երկրորդ

*տրբութիւն, զի սուրբ է. երրորդ ընդհանրականութիւն, քանզի բոլոր աշխարհին մի և նոյն հաւատքը պիտի քարոզուի. չորրորդ առաքելականութիւն, որովհետեւ առաքելոց ձեռքով քարոզուեցաւ:*



## ԴԱՍ ԺԼ.

### ՄԻՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

1. — Քրիստոսի եկեղեցւոյ միութեան վրայօք ի՞նչ կարծիքներ եղան: 2. — Պետրոս վէմ հաւատոյ չ՞է. Քրիստոս իւր խօսքը անոր ի՞նչու ուղղեց. Հռոմ ի՞նչու նստաւ. «մի հօտ եւ մի հովիւ» բանծը ի՛նչ է: 3. — Լոկ «Պետրոսական յաջորդութիւն» դաւանելէն ի՛նչ կը ծնտնի: 4. — Գլուխ եկեղեցւոյ ի՛նչպէս ճանչնալու ենք: 5. — Հայաստանեայց եկեղեցին ի՛նչպէս կը դաւանի:

*1. — Պապականաց գաղափարն է Ս. Քրիստոսի Պետրոսին ըսած այն խօսքը թէ «դու ես վէմ» և կամ «սատանան զքեզ ցորենի պէս խարբալել ուզեց, բայց ես քեզի համար աղաչեցի որ դարձի գաս և քու եղբայրներդ հաստատես* (Ղուկ. ԻԲ. 31.)

և կամ արածե՛ա զոչխարս իմ» ։ Բ. Պետրոս Հռովմնստաւ, Պօղոս հոն գլխատուեցաւ, որք՝ գլուխ առաքելոց էին, մանաւանդ Պետրոս ամեն առաքեալներէ սրտոտ էր, որ միւններէն առաջ ինք զինք թող տուաւ Քրիստոսի ըսելու թէ «դու ես որդի Աստուծոյ (Մատթ. ԺԶ. 16.) ։ Գ. Պօղոս մասնաւորապէս Հռովմայեցւոց հաւատքը կը գովէ (Հռովմ. Ա. 8.) և կամ հոն շատ նահատակներ եղան եւայլն, համրելով նախագահական յաջորդութիւնը միայն Պետրոսին և աթոռատեղին միայն Հռովմին կ'ուտան. Դ. «մի հօտ և մի հովիւ» խօսքին համեմատ այն հովուութիւնը պապին կ'ընծայեն ։ Ե. բնութենէն փոխ առնելով «եկեղեցւոյն գլուխը Քրիստոս է, եկեղեցին ալ Քրիստոսի անդամն է. ամեն անդամի մէկ գլուխ պէտք է, երկու գլուխ անկարելի է, եղածին պէս կը բաժնուի. անձին վրայ բաժնուած թագաւորութիւնն ալ չի կրնար կենալ» եւայլն ըսելով ասոնք հաստատելու համար հազարաւոր մատեաններ հրատարակած և միլիոնաւոր թղթեր սեւցուցած են ։ (1)

(1) Մասնաւորապէս ներկայ դարուս հեղինակներէն Պ. Վ. Էմմանուէլեանը՝ այս բոլոր դաղափարները ամփոփելով, ասկէ չեղողները հերետիկոս հրատարակել կը ձեւացնէ սա խօսքերով,

2. — Ա. Պետրոս՝ վէմ հաւատոյ, և կամ գլուխ եկեղեցւոյ, հայաստանեանց եկեղեցին ալ կ'երգէ, իսկ ճիշդ Քրիստոսի բառածին իմաստով, քանզի Քրիստոս՝ Պետրոսի անուան ստուգաբանութենէն առնելով. Եբրայերէն ՔԷՖԷ կամ Կեբաս, Յունարէն ՔԷՖՕ ապառաժի նշանակութեամբ առնելով Կեփաս բառը, այսինքն՝ իւր եկեղեցւոյն ընդհանրապէս հաստատուն հիման վրայ շինուելիք ըլլալը նշանակելու համար, ոչ թէ Պետրոսին անձը ուրիշներէն մասնաւորելու (Մատթ. ԺԸ. 18. և Յովհ. Ա. 42.)։

Բ. Թէ որ այդ խօսքը՝ Պետրոսի անձին մասնաւոր լինէր, Քրիստոս իւր սահմանը և խոստումը ետ առնելով «ե՛րթ յետս իմ սատանայ» չէր ըսեր, (Մատթ. ԺԶ. 23.) կամ թէ արձակելու իշխանութիւնը միայն Պետրոսին տուած ըլլար, վերջէն ալ այս կասկա-

«այս չորս յատկութիւնները միայն հռովմէական եկեղեցւոյն կը վայելէ, միւսներուն մէջ ոչ կայ և ոչ կը վայելէ (իմի իլահի ժէ.)։ Դարձեալ ուրիշ տեղ մ'ալ «Հայոց, Ռուսաց և Յունաց դաւանութիւնները կրօնական միութիւններ ունին, բայց տակաւին պաշտօնապէս հերետիկոս հրատարակուած չըլլալնուն համար եթէ չըսենք ալ, իսկ իրօք այնպէս են։ Եկեղեցին զանոնց պաշտօնապէս հերձեալ կ'ըսէ, ասոնք եթէ այսպէս մնան Քրիստոսին եկեղեցիէն դուրս են» (պապը խամիս Ժ.)

ծը փարատելու համար ամենուն մէջէն չէր ըսեր «զոր արձակիցէք յերկրի . . . » (Մատթ. ԺԸ. 18.) Նաեւ Պետրոս երեք անգամ չէր ուրանար. կամ թէ Պետրոս առաքեալներուն ամենէն սրտոտն էր, Յովհաննէսի ակնարկելու չէր (Յովհ. ԺԳ. 24.) և կամ թէ Յիսուս Պետրոսին համար մասնաւոր աղօթեց որ բոլոր եղբայրները դարձնողը Պետրոս պիտի ըլլար, և կամ թէ հաստատուն էր, Սուրբ Հոգին առնելէն վերջ սխալ գաղափարէն դառնալու համար Պօղոսէն չէր յանդիմանուիր. (Գաղ. Բ. 13—14.) կամ թէ Քրիստոս իւր մայրը Պետրոսին չյանձնեց հապա Յովհաննէսին, և կամ բանալին որ Պետրոսին տուաւ փուռը Յովհաննէսին յայտնեց Կիպրոսին մէջ: Դեռ սուրբ գրոց մէջ շատ վկայութիւններ կան որ Յովհաննէսը սիրելի էր Յիսուսի, քան զՊետրոս: Ուստի թէ որ այսօր յոյներ ալ մասնաւոր յաջորդութիւն մը ուզեն կազմել, Պօղոսը Պետրոսէն շատ վեր կրնան դասել, ճարտարաբանելով թէ «Պօղոսը անօթ ընտրութեան» եւայլն, կամ թէ Յովհաննէսին յաջորդութիւնը ևս առաւել կրնայ ըլլալ թէ Քրիստոս իւր գաղտնիքը անոր յայտնեց (Յայտ. Ա. 1.) մայրը՝ անոր յանձնեց. Քրիստոսի լանջը՝ յենողը ան էր եւայլն. ուրիշ կուզես ըսէ, բայց Քրիստոսի ճշմարտութիւնը՝ դէմ եկա-

ծին պէս, ամեն լեզու կը կենայ, ամեն գրիչ կանգ կ'առնու, զի ըսած է «աշխարհիս իշխաններն անոնց կը տիրեն բայց ձեր մէջ այնպէս չէ» (Ղուկ. ԻԲ. 25.)։

Գ. Պետրոս Հռովմ նստաւ ըսելով պաշարուիլն ալ սխալ գաղափար է, Յակոբոս ալ Երուսաղէմ նստաւ, Թադէոս Բարդուղիմէոս ալ Հայաստան գնացին, թէ որ քաղաքին դիրքին վրայ է, վա՜յ մանր քաղաքներուն, որ Պետրոսին ոտքը բնաւ կոխած չէ. այլ Հռովմ միայն թող պարծենայ, որովհետեւ Պօղոս Հռովմայ հաւատքը գովեց. հապա անոր ի՞նչ ըսենք որ Գաղատացւոց ալ «ո՜վ անմիտ Գաղատացիք» գրեց։

Դ. «Մի հօտ և մի հովիւ» ըսուածը հոգեւորի մասին ատանկ կարծիքներէ շատ տարբեր է, որչափ որ հոգին մարմինէն տարբեր է նոյնչափ ալ հոգեւոր միութիւնը մարմնաւոր միութենէն. բոլոր քրիստոնէութիւնը արդէն մի հօտ և մի հովիւ է. Քրիստոս տասներկու առաքելոց համար մի և նոյն աղաչանքը ըրաւ «Հա՜յր միացուր զասոնք ինչպէս որ մենք մի ենք» (Յովհ. ԺԷ. 11.) այսպէս է բնութենէն փոխ առածնին թէ «մէկ անդամին մէկ գլուխ պէտք է» խօսք ալ այնպէս է։

Աստուած մէկ է բայց իւր միութեան սքանչելիքը երրորդութեան մէջ է. եթէ ոչ

մէկը արդէն ինքն իրեն մէկ է, առն և կնոջ համար «եղիցին երկոքեան 'ի մարմին մի» կ'ըսէ, բայց զատ զատ են։

3. — Նախընթացներէն կրնանք հետեւցընել թէ Աստուած մէկ է, ունի իւր էակից Որդին և փառակից Սուրբ Հոգին. իւր միութիւնը անձնաւորութեան մէջ. համագոր, համակամ և համափառ է. իսկ որոնք որ չեն ուզեր ունենալ իւրեանց փառակիցը, և հոգեւորի մասին լոկ միութեան մէջ գլուխ կը հրատարակեն իրենք զիրենք, ըսել է որ իւրեանց աթոռը Աստուծոյ աթոռէն վեր դասել է, ուստի Եսային՝ թող խօսի իւր գըրուածքով «Իսրայէլը նորէն պիտի ընտրէ.. օտարազգիները պիտի միանան» (Եսայի ԺԴ. 1.). այս օտարազգիներ միանալով Նոր Իսրայէլ կանչուելուն մէջ անհաւատալք գլուխ ըլլալ ուզողներուն կ'ըսէ «իմ աթոռս Աստուծոյ աթոռէն վեր բարձրացնեմ ըսիր մտքիդ մէջ» (Նոյն 13.). չիտակ խօսելով այս միապետական իշխանութիւնը՝ աշխարհիս թագաւորութեան և քաղաքական պետութեան կը վերաբերի, ո՛չ թէ հոգեւորի, ինչպէս որ թագաւորաց թագաւորը՝ իւր միութիւնը հոգեւորապէս անձնաւորութեամբ ցոյց տուաւ, բայց երբ հոգեւորի գալու ըլլանք, մէկ գլուխ ըլլալու համար մի քանի մարմիններու մէջ

հոգի մը կենալով կըլլայ, որով միութեամբ կը ճանչցուին թէ Քրիստոսի աշակերտներն են ( Յովհ. ԺԳ. 34—35. ):

Եկեղեցական մը ինք զինք իւր գտնուած եկեղեցւոյն գլուխ ճանչնալու համար միւս եկեղեցեաց մէջ իրեն հաւասարապատիւ գըլուխ ճանչնալու է. որ աւետարանական ճշմարտութեան մօտիկնայ, եթէ ոչ անկէ հեռու է. այո՛; մենք զանոնք քահանայապետ ճանչնանք աստիճանակից Պօղոսի, Պետրոսի և Յովհաննու, իսկ իրենք զիրենք ալ պաշտօնակից թող ճանչնան իրարու, որ այն ատենը՝ զատ զատ մարմիններու մէջ մէկ հոգի լինելով, մէկ եկեղեցւոյ գլխաւոր ըսել ըլլան « Հա՛յր միացուր զասոնք ինչպէս որ մենք մի ենք » ( Յովհ. ԺԷ. 11. ) կամ թէ « ես քու մէջ, դուն ալ իմ մէջ, ասոնք ալ մեր մէջ, ( Նոյն 21. ) ( ոչ թէ Պետրոսին մէջ ), դարձեալ Պօղոսին այս խօսքը « մեր ուրախութիւնը լեցուցէք, ձեր մէջ մէկ սէր ունեցէք; միատեղ խորհեցէք. հոգին և միտքը մէկ է » ( Փիլիպ. Բ. 2. ) Պետրոս, Յակոբոս, Յովհաննէս հաւասար սիւն ( Գաղ. Բ. 9. ):

4. —Եթէ գլուխ եկեղեցւոյ և վէմ անկեան փնտռելու որ ըլլանք, Քրիստոսէն զատ չենք կրնար գտնել. եթէ այն հիման քարերը որ փնտռենք, Պետրոսը միայն չէ,

հաստ առաքեալներէն և մարգարէներէն ի֊րեն հաւասարը ունի․ ինչպէս որ Պօղոս կ՚ը֊սէ «դուք առաքեալներու և մարգարէներու հիման վրայ շինուած էք, որուն անկեան գլուխը՝ Քրիստոս է (Եփես. Բ.) չըսեր թէ «Պետրոսի հիման վրայ միայն»․ Յովհաննէս ալ նոյնպէս երկոտասան առաքելոց հիման վերայ շինուած կը տեսնէ, ոչ թէ միայն Պետրոսին (Յայտ. ԻԱ. 14.)․ առանց միապե֊տական կարծիք մը Պետրոսին մաքէն անգամ անցած չ՚ըլլալը, արեւու լոյսին պէս յայտ֊նի կեցած է, որովհետեւ Պետրոս ինք զինքը առաքեալներէն չէր բաժներ․ մինչդեռ սա֊կաւաթիւ էին, առանց նկատմամբ՝ երբեմն Պետրոս կը նախագահէր երբեմն Յակոբոս (Գործք. ԺԵ. 6–13.)․ երբ հաւատացելոց թիւը կը բազմանար, այն բազմութեան նը֊կատմամբ ամենայնը կրնարք մէկէն միախոհ և միախորհուրդ, ամենայնը զատ զատ մար֊միններու մէջ մէկ հոգի ընդունած զիրար համապատիւ կը ճանչնային (Գործ. Զ. 1.) անոնց սրտեր ու հոգիներ մէկ էին (Գործք. Դ. 32.)․ Պետրոսէն աւելի Պօղոս շատ ան֊գամ նախագահած է, մինչեւ անգամ Պօղոս կը յանդիմանէ երբեմն զՊետրոս, բայց մենք յանդիմանենք ըսելով ոչ Պօղոսը բարձր քան զՊետրոս և ոչ ալ Պետրոսի անձը միայնակ

վէմ կը ճանչնաք . Նաև ոչ ալ Քրիստոսի « արքայութեան բանալին՝ քեզի պիտի տամ » ըսածին համեմատ , Պետրոսին մասնաւոր կամ նիւթական բանալի մը տուած կը հաւատանք , ո՛չ ալ « երթ յետս իմ սատանայ » ըսած ըլլալուն համար Պետրոսը սատանայ կը ճանչնանք . այլ ինչպէս որ Աստուած մէկ է երեք որոշ անձամբ համապատիւ , նոյնպէս ալ առաքեալները ։ Եւ ո՛չ ալ «արածե՛ա ոչխարս իմ՝» ըսած ըլլալուն համար , բոլոր ոչխարները՝ մասնաւորապէս Պետրոսին յանձնուած կը ճանչնանք , քանզի յայտնի կեցած է որ Քրիստոսի առ Պետրոս ուղղած մասնաւոր խօսքերուն բոլորն ալ առ ժամանակեայ էին, վասն զի երբեմն « վէմ» երբեմն «սատանայ» իսկ յաւիտենականին համար անունին ստուգաբանութենէն « դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն , ո՛չ է այնպիսի 'ի միջի ձերում» ( Ղուկ. ԻԲ. 25. ) « դուք մի էք » ։ Մանաւանդ ինքն Պետրոս ալ կ՚ըսէ թէ « ձեզի յանձնուած հօտը արածեցէք » չ՚ըսեր « Քրիստոսէն մասնաւորապէս ինծի յանձնըւած ինձմէն ալ ձեզի յանձնուած» ( Ա. Պետ. Ե. 2. ) · ընդհանուր հովութիւն է , միապետութիւնը բաժանում ձգել է ( Գործք. Ի. 28. նաեւ Պետրոս ինքը հօտին վրայ բռնութիւն չի բանեցնել կը հրամայ է ։

5. — Քրիստոսի եկեղեցւոյն պահանջած միութիւնը՝ պահած է հայաստանեայց առաքելական եկեղեցին, գլուխ եկեղեցւոյ Քրիստոս է. Քրիստոսի եկեղեցին՝ ձեռնադրեալներն են առ հասարակ (Մատթ. ԺԸ. 17, 18.) այս եկեղեցին ալ կը պահանջէ իւր գլուխը, «զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս (Եփես. Դ.)։

Քրիստոսի եկեղեցին՝ հասարակ ժողովուրդէն տարբեր իշխանութիւն մը ունի «ես ընդ ձեզ եմ... մինչեւ 'ի կատարած աշխարհի (Մատթ. ԻԸ. 20.) «առէ՛ք հոգի սուրբ, զոր արձակիցէք յերկրի՝ արձակեալ եղիցի յերկինս» (Յովհ. Ի. 23.) այս իշխանութիւնը՝ իւր աստիճանը ունի, թէեւ Քրիստոս առ հասարակ փչեց, սակայն անկէ վերջ երբ քրիստոնեայք շատցան, անոնց նըկատմամբ առաքեալները եպիսկոպոսապետներ էին, որոնք կը ձեռնադրէին զեպիսկոպոսներ, սարկաւագներ և այլն. ըստ այսմ Տիմէթէոսի նկատմամբ՝ Պօղոս եպիսկոպոսապետ է. վասն զի Պօղոս էր Տիմէթէոսը եպիսկոպոս ձեռնադրողը, և Պօղոս Տիմէթէոսին կը հրամայէ և կը խրատէ զայն, այնպէս տասներկուքն ալ եպիսկոպոսապետներ կրնան սեպուիլ հանուր բազմութեանց նկատմամբ. ինչպէս որ շատ ձեռնադրութիւններ ըրին, զատ

զատ ալ իշխանութիւններ տուին , ժողովքներ կազմեցին ( գործք. ԺԳ. ԺԴ. ) ձեռնադրութեան աստիճաններ զատեցին , զատ զատ պաշտօններ տուին . ինչպէս որ Փիլիպպոսն ալ ձեռնադրեալ մ'էր . բայց ինքը ձեռնադրելու կամ կատարեալ մկրտելու իշխանութիւն չունէր ( Գործք. Ը. 14. ) տես նաև Յունադաւանեան և Լատինադաւանեան խորհուրդներուն վըրայօք : )

Ահաւասիկ ասոնց նայելով չիտակ է որ, եկեղեցին Քրիստոսի անդամն է , կը պահանջէ գլուխ , ձեռք , ոտք , այսինքն եպիսկոպոսապետ , եպիսկոպոս , վարդապետ, քահանայ , սարկաւագ և այլն , սակայն հոգեւորապէս , այն է քաղաքական դրից նկատմամբ ուզէ երեք ըլլայ ուզէ տասներկու եպիսկոպոսապետ , պէտք է որ համապատասխան ըլլան , զատ զատ մարմիններու մէջ մէկ հոգի և մէկ գլուխ եկեղեցւոյ ըստ աւետարանական ճըշմարտութեան : ( [1] )

( [1] ) Քրիստոսի վճիռը սէրն է , ընկեր չունեցողը չենք գիտեր թէ պիտի սիրէ՞ իւր ընկերը թէ ոչ , զի չունի որ իմացուի : Մանաւանդ Աստուածային անձինք երեք են , հրեշտակներ բազմաթիւ են : Գալով աշխարհիս վրայ , տէրութիւն մը կամ իշխանութիւն մը գիտէ որ աշխարհիս վրայ մինակ ինքը չէ տէր և իշխան , իրմէ զատ ուրիշներ ալ կան : Այնպէս որ արարիչը ոչ երկրի վերայ ոչ

Ահա այս սկզբան վրայ է Հայաստանեայց եկեղեցին. ունի այսօր Էջմիածին, Ցաղթամար և Կիլիկեա. կրօնականի մասին ինչ իշխանութիւն որ ունի առաջինը՝ նոյնը ունին միւսներն ալ, իսկ յարաբերութեան մասին վէճ մը պատահիլ ուրիշ խնդիր է, ինչպէս որ առաքելոց մէջ ալ կը պատահէր, (Գործք. ԺԵ. 36—39. Գաղ. Բ. 11). կամ թէ Պօղոս առաքեալին ըսածին պէս մարմնով տարբեր ալ որ գործեն, հոգւով Աստուծոյ կը ծառայեն (Հռովմ. Է. 25.) զի սկզբունքը զատ զատ մարմիններու մէջ մէկ հոգի բնակելու վրայ կայացած է։

---

երկինքի մէջ լոկ, առանձին, աննման բան մը ըստեղծած է, մինչեւ անգամ ինքն իսկ իւր աննմանութիւնը համազօր անձնաւորութեան մէջ յայտնեց։

# ԴԱՍ ԺԸ.

## ՍՐԲՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

— 1. Սրբութիւնը՝ եկեղեցւոյն ի՞նչպէս կը ներգործէ, ինչ է սրբութիւնը : 2. — Մանկամկըրտութիւնը ինչո՞ւ համար անհրաժեշտ է քրիստոնէից :

*1. — Սրբութիւն եկեղեցւոյ ըսածնիս արտաքինէն ներքին մակաբերելով մարդուս հոգւոյն, սրտին և մտաց խղճին կ'ազդէ հաւատով և Աստուածային վճռով :*

*Ուստի ամեն եկեղեցւոյ հպատակ դառնուող ժողովուրդին պարտք է հաղորդակից ըլլալ այս սրբութեան աւազանի լուացման միջոցաւ, ինչպէս որ Քրիստոս պատուիրեց «մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ» և Հօր Աստուծոյ աղօթեց «սրբէ ասոնք քու ճշմարտութիւնովդ»* ( Յովհ. ԺԷ. 17. ) *նաեւ Պօղոս կ'ըսէ «Քրիստոս իւր եկեղեցին սիրեց . . . աւազանին ջուրը խօս-*

քովը մաքրէց» (Եփես. Ե. 26.—27.) որ ըսել է, եկեղեցւոյ սրբութեան սկզբունքը մըկրտութիւնն է (Յովհ. Գ. 5.)։ (1)

---

(1) Եկեղեցւոյ սրբութեան յարգանքը ոմանք կը չափազանցեն. այնպէս թէ «քանի որ եկեղեցին սուրբ է, եկեղեցւոյն գլուխը անսխալ է. սուրբը չի սխալիր»։ Ոմանք ալ այնպէս կնեն որ եկեղեցւոյ սրբութիւնը՝ անգամ մը երկինքը կը բարձրացնեն որ մարդոց մոքեր անգամ չեն հասնիր, այնպէս թէ «հայրը՝ մայրը, անգամ որ չ'ըլլան զաւակը չ'մկրտուիր», և կամ «Քրիստոս երեսուն տարեկան մկրտուեցաւ» վերջէն զայս կը թողուն, երկինքէն կիջեցնեն գետնին յատակը անցնել կը ձևացնեն. այնպէս թէ «Նահապետք, մարգարէք և Քրիստոսէն առաջ գտնուող բոլոր սուրբեր չի մկրտուեցան» կամ «աւազակն ալ չի մկրտուած Քրիստոս դրախտը տանիլ խոստացաւ խաչելութեան ժամանակ» որ ըսել կ'ըլլայ թէ «չի մկրտուիլն ալ քրիստոնէութիւն է,» բայց հայաստանեայց եկեղեցին ոչ կը չափէ և ոչ կագահէ, այլ Աստուածային սահմանին համեմատ 'ի գործ կը դնէ. այնպէս որ եկեղեցւոյն սրբութիւնը կը քարոզէ. «որոց մէջ որ Աստուծոյ հոգին կայ չեն մեղանչեր» կ'ըսէ Յովհաննէսին հետ (Կաթ. Գ. 9.) իբր թէ եկեղեցւոյն անմեղութեան սրբութիւնն կը փայլէ, բայց նոյն կէտն ալ կը պահէ թէ «չեմ մեղանչեր ըսողը իւր անձը սուտ կ'անէ» դարձեալ նոյն Յովհաննէսին է. (Կաթ. Ա. 8.10.) անկէ սորվելով առաջին անգամ իւր եկեղեց-

2. — Քանի որ հայրը մայրը Քրիստոսի կը հաւատան երախան պիտի մկրտուի Աստուծոյ բաժին լինելու համար Քրիստոսի վճիռին համեմատ, ինչպէս որ առաքեալներն ալ հաւատացող ընտանիք մը անմիջապէս կը մկրտէին (Գործք ԺԶ. 14—33.) վասն զի ամեն մարդ Ադամային մեղքի մէջ ծնած է, «մէկ մարդով մեղքը աշխարհ մտաւ» (Հռովմայեցւոց Ե. 12.) դարձեալ «իրաւ որ ուրիշներու պէս. մեղաց որդիներ էինք» (Եփես. Բ. 2.) ուստի Քրիստոսէն զատ չկայ ծնունդ մը որ առանց մեղքի ըլլայ և Ադամային մեղքի մէջ ծնած չըլլայ, որովհետեւ «Ադամին սերունդէն չեմ» չի կրնար ըսել, ուստի

---

ւոյն պաշտօնեայները՝ հոգեւոր պաշտօններու մէջ անմեղք կը ճանչնայ, այնպէս որ եկեղեցականի մը ըրած մկրտութիւն սուրբ է. Նոյնպէս պատարագ պակ, խոստովանանք և այլն սրբազան պաշտօնք Աստուածային են, ոյն է հոգւով Աստուծոյ կը ծառայեն (Հռովմ. Է. 25.) սակայն այսու ամենայնիւ մարդ են. անսխալ ենք ըսելն ալ սուտ են. մատուցած պաշտօննին ժողովրդեան համար սուրբ է. իրենք մարմնաւոր ըլլալնուն համար անմեղք չեն և ոչ ալ անսխալ., ասոր համար, գլխաւորին մասնաւոր աւելորդ անսխալութիւն մ'ալ աւելցնելով ժողովուրդը՝ տարակուսութեան մէջ չի ձգեր. զի սրբութիւնը եկեղեցւոյն հասարակ է, ոչ թէ եպիսկոպոսապետներուն յատուկ.

եկեղեցւոյ ժողովուրդ ըլլալու ուխտած վայրկենին պէտք է աւազանին միջոցաւ սրբուի . ասոր համեմատ առաքելոց ըրածէն զատ փորձն ալ սորվեցուցած է, որ մկրտուող երախայներէն հարիւրին իննսուն և ինը Քրիստոսի հաւատալով մեծցած են, բայց մեծնալէն վերջ ազատ կամօք կը մեղանչէ եղեր, ինքը պիտի դատապարտուի ։

Մեր ընթերցողը, աշխատելու ենք որ քրիստոնէի մը զաւակը՝ Ադամային մեղքէն չի սրբած գերեզման չ'դնենք, բայց վերջը ինչ կ'ըլլայ մեր գիտնալիքը չէ, վասն զի նահապետք մարգարէք թէ որ մկրտուած ըլլային Քրիստոս գալու հարկ չէր մնար, մենք ի՞նչ գիտենք թէ անոնք ինչպէս մկրտուեցան, քանի որ յարութենէն վերջ բանտին մէջ եղող հոգիներուն ալ քարոզեց (Ա. Պետ. Գ. 19.) կամ թէ աւազակը ճիշդ Քրիստոսի կողքէն մկրտուեցաւ . ուստի քանի որ առանց մկրտութեան գերեզման դրուելու չեն, նոյնպէս ալ առանց անոր քրիստոնեայ անունով և լոկ աղօթելու նպատակաւ եկեղեցւոյ ժողովուրդ կոչուելու իրաւունք չունին . ըստ այսմ հայաստանեայց առաքելական եկեղեցին քրիստոնեայ ծնողքէ մը ծնածին պէս իւր հոգեւոր պատմուճանը կը հագցնէ, մատանին մատը կը դնէ, ինքն ալ ուզէ զայն կը

վայելէ ուզէ կը մերկանայ անապականութեամբ, ուզէ նորէն «Հա՛յր, մեղայ յերկինս և առաջի քո» գոչելով այն զգեստին ու մատանւոյն կ'արժանանայ, իրեն համար պահուածի մէջ. ինչպէս որ առաքելոց մկրտածներէն և իրենց հետ պտըտողներէն շատերը չեղեցան, ոմանք սատանային մատնուեցան ոմանք ետ դարձան (Տիմ. Ա. 20.) ուստի հայաստանեայց եկեղեցին չունի ժողովուրդ մը որ Ադամային մեղքէ սրբուած չըլլայ, «յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ մկրտուած չըլլայ» ուրեմն սուրբ է սրբութիւնը վայելած է իրէն:

---

## ԴԱՍ ԺԹ.

### ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

1. — Ո՞րն է ընդհանրականութիւնը: 2. — Հայաստանեայց եկեղեցին ունի՞: 3. — Քանի՛ ժողովք կ'ընդունի. ի՞նչէն յայտնի է թէ ընդհանուր է:

1. — Քրիստոսի եկեղեցւոյն ընդհանրականութիւն կը վայելէ, որովհետեւ ինքը մէկ է. իրեն հպատակողները՝ ինչ ազգէ և ինչ լեզուէ կ'ըլլան թող ըլլան բաւական է որ հաւատան և իւր կամացը համեմատ գործեն, ինչպէս որ խոստացաւ թէ «քաջ հովիւը՝ ես եմ, այս գաւթէն չեղողն ալ ներս պիտի բերեմ» (Յովհ. Ժ. 14.). նոյնպէս Պօղոս կը հերքէ պօղոսեան և ապողօսեան վէճերը (Ա. Կորնթ. Ա. 12.) դարձեալ թէ «չիք խտիր ոչ հրէի և ոչ հեթանոսի» (Գաղ. Գ. 27.):

2. — Հայաստանեայց առաքելական եկեղեցին ունի այս ընդհանրականութիւնը ճիշդ Քրիստոսի կամացը համեմատ:

Նախ եկեղեցի կ'ճանչնայ հանուր պաշ-

տօնեայները ըստ վճռելոյն Քրիստոսի (Մատթ. ԺԶ. 18.) Բ. անոնց մէջէն կ'ընտրէ գլուխ այն եկեղեցւոյն, եպիսկոպոսապետներ, քաղաքական դրից համեմատ քանի հատ որ պէտք ըլլայ, քանի մը մարմիններու մէջ մէկ հոգի գաղափարելով, որուն դասը Քրիստոսէն առած է, որ զատել պէտք ըլլալու ատեն Պետրոսը, Յակոբոսը, ու Յովհաննէսը առաւ, ինչպէս որ Թափօր լեռը տանելու ժամանակ (Ղուկ. Թ. 28.) կամ Յայրոսի աղջիկը յարուցանելու ատեն (Մարկ. Ե. 35—43.) որ ըսել կ'ըլլայ «ինչ որ է Պետրոսը՝ նոյնն է Յակոբոսն և Յովհաննէսն ալ» ինչ որ է Էջմիածնի Կաթողիկոսին պաշտօնը նոյնն է Կիլիկեայինն ալ, ինչ որ կը կը ճանչնայ Կիլիկեոյ ժողովուրդը իւր Կաթողիկոսը, նոյն գաղափարը ունի Էջմիածնայ Կաթողիկոսին վրայ ալ, որ ըսել է հոգեւորապէս ընդհանուր է, բաժանումը մարմնաւորի և քաղաքականի մասին է, թէ որ մէկ Կաթողիկոս նստիլ պէտք ըլլայ, դարձեալ սկզբունքը՛ առաքելական յաջորդութիւն է։

3. —Երեք տիեզերական ժողովք կ'ընդունի (1) որովհետեւ ընդհանուր են. և ոչ որ

(1) Այս տիեզերականներէն զատ շատ մը ժողովքներ ալ նոյն անունը կրեցին, բայց գահերէցութիւն ու փառամոլութիւն գտնուելուն համար

անոնց դէմ կրնայ խօսիլ, վասն զի առաքելական միութիւն մ'էր ։

---

տիեզերական ըսել չէր վայլեր, վասն զի ոչ թէ հերետիկոսութեանց դէմ էր նզովքնին, հապա իրենց կամացը դէմ կեցողներուն ալ ամեն կանոնի տակ նզովք կը կարդային ։

Ամեն սկիզբ իւր վախճանէն կը չափուի, առաջին տիեզերական երեք ժողովքները Քրիստոսի առաքելոց մօտ և անոնց ժամանակակից, սուրբ աւանդութեան ձեռնհասու ըլլալով, հաստատութիւն հաւատոյ, մարմնաւորութիւն Աստուծոյ Որդւոյն, յարութիւն մեռելոց և վերջին դատաստան սորվեցուցին ։

Այս տիեզերական առաջին ժողովը 'ի Նիկիա 325 թուականին Քրիստոսի 318 հայրապետաց գումարմամբ, ուր խմբագրուեցաւ հաւատոյ հանգանակը, և սահմանուեցաւ եկեղեցական կանոններ, Բ. Կ. Պոլիս 381 ին 150 հայրապետաց գումարմամբ ի հերքումն Մակեդոնական հոգեմարտութեան, Գ. Եփեսացւոց ժողովքը 431 ին 200 հայրապետաց գումարմամբ 'ի մերժումն Նեստորեան մոլութեան ինչպէս որ Արիոս, Մակեդոն, Նեստոր ուրացողներ էին և արժանի նզովից և մատնութեան սատանայի, ինչպէս որ առաքեալք ալ կը նզովէին այսպիսիները (Ա. Կորնթ. ԺԶ. 22.) և սատանային կը մատնէին (Ա. Տիմ. Ա. 19.) ասոնցմէ զատ գտնուած միւս ժողովքներու մէջ՝ անիրաւի նզովք, փառամոլական գահերէցութիւն պակաս չըլլալը պատմագէտներէն գաղտնի չէ. գլխաւորը Քաղկեդոնականն էր, որ Եփեսոսէն ետքը 451 ին

Յայսօր Հայոց եկեղեցին, Դամիանոս, Կոզմայ անարծաթ բժիշկները, Վառելաւի Ել-ղիս եւայլն այդպէս յոյն մարտիրոսները կը տօնէ. որ ըսել է ոչ գաւերէցութիւն եւ ոչ փառասիրութիւն կը նկատուի Հայաստանեայց եկեղեցւոյն մէջ այլ ընդհանուր քրիստո-

---

դաւանութեան, որոց մանրամասն պատմութիւնները մեր նիւթին չպատկանիր։ Այս ժողովները տարբեր միջոցներով դաւանութեան հետզհետէ մինչեւ ԺԹ․ երրորդ ժողովքի համներով, որոց մանրամասնութիւնը պատմականութեան կը վերաբերի։ Այս միջոցները Տրիտենթեան եւ ամենէն վերջ 1869ին Վատիկանի ժողովը դաւանութեան Պիոս Թ․ Պապին նախագահութեան տակ, որուն գլխաւոր որոշումն էր « Քրիստոսի փոխանորդը երկրի վրայ եւ գլուխ եկեղեցւոյ, Աստուծմէ իրեն տրուած իշխանութիւնը կրօնի մասին եւ բնաւորապէս, մինչ խօսի յաթոռոյ յորոշման անսխալ է» Նոյնպէս Տրիտենթեան ժողովը ամէն որոշման տակ նզովք մը, ուղէ հաւատոյ մաս ըլլայ ուղէ չըլլայ․ օրինակի համար․ « ով որ պատարագի ատեն բաժակի գինիին մէջ ջուր չխառնէ նզովեալ է » ( Նիստ ԻԲ․ » այսպիսի որոշմանց տակ միշտ նզովքներ Քրիստոսի օրհնութեան դէմ եւ հակառակ։ Այս որոշումներն առաջիններուն հետ բաղդատող հասուն խորհրդածութիւն մը կրնայ գտնել ա-եղերական ըլլալն ու չըլլալը։

Այսպիսի ժողովոց արդիւնքներն իրենք իրենց մէջ բաժնուիլ եղաւ․ հասունեան հակահասունեան վէճր մեծաւ մասամբ կրօնական է ոչ թէ քաղա-

*նչութիւն, ոչ պօղոսեանը գիտէ և ոչ ապօ-ղոսեանը այլ Քրիստոսեանը, ոչ հասունեանը և ոչ հակահասունեանը, ոչ երէցականը և*

---

*քական (Արքայեանք գոնէ « սուրբ իրաւունք հայրենեաց » կը կոչեն): Ասոնցմէ զատ նոր նոր անթիւ բաժանմունք միայն քրիստոնէութեան մէջ, այն է.* երեցական, մեթոտիսթ, քուէյքր, մկրտիչ-եան. պէքսբերեաց, երաստոսական *և այլն և այլն, որոնք բոլորն ալ բողոքական անունը կրելով ամեն մէկը մէկ մէկ յարանուանական ժողովքի կը պատ-կանին, « էական կէտերու մէջ ամենքս մէկ ենք » ըսելնուն՝ վիճակնուն վրայ տեղեկութիւն ունե-ցողները չեն հաւատար, որովհետեւ զատ զատ դաւանութիւններ, զատ զատ կրօնապետներ ու-նին, թէ որ մկրտիչեանը՝ պէքսթէրեանին. մէկալը միւսին երթայ շատ մը ուրանալու և շատ մը ալ խոստովանելու պարագայներ ունի, որովհետեւ բողոքէն բողոք ելած և օր ըստ օրէ ելլալու վրայ է. Թէ որ հրէայ մը քրիստոնեայ ըլլալ ուզէ որո՞ն պիտի դիմէ չենք գիտեր, եթէ « ամենքս մէկ ենք » ըսելով միութիւն ըլլայ արդէն բոլոր քրիս-տոնէից դաւանածը մէկ Քրիստոսն է: Պօղոս ա-ռաքեալ՝ իւր և Ապողոսին ու Կեփասին անունովը պարծեցողները կը մերժէ, ուր մնաց քուէյքր ու մէթոտիսթ: Հայաստանեայց առաքելական եկեղե-ցին ինքը իւր մէջ բաժանում չունենալէն զատ մի-նակ Քրիստոսով կը պարծենայ և ամաչելու բան մը ալ չունենալնուն ընդհանրականութեան մէջ իւր պարզութիւնք և ճշմարիտ ազատամտութիւնը յայտնի է:*

ոչ եպիսկոպոսականը, այլ առաքելականը. Նա մանաւանդ առաքելոց դէմ նզովք կը կարդայ անոնց՝ որք երրորդութեան համար-րութեան և Քրիստոսի մարդեղութեան վը-րայօք կասկածոտ են (Ա. Կորնթ. ԺԶ. 22.) այս կէտին վրայ շիտակ հաւատք ունեցողնե-րուն եկեղեցականը եկեղեցական և ժողովուր-դը ժողովուրդ կը ճանչնայ, ոչ հերձեալ և ոչ ալ դեղծեալ. մինչեւ անդամ այսօր Ասորին, Ղպտին, Յակոբիկեանին, Քիլդանիին հետ յարաբերութիւն կը կապեն աղէաք եղած ջանքերը չի խնայելով, (մինչդեռ Հռովմայ ե-կեղեցին իբր թէ հերետիկոս կը ճանչնայ զանոնք, որբազան պապը առանձին յաջորդ չի դաւանելնուն համար, բաւէ որ, եթէ հաւատային ու դաւանէին հերետիկոս չէին):

Ահա ասոնք ամենը և այսպիսի շատեր կը վկայեն. թէ հայաստանեայց եկեղեցին ընդհանրականութիւնն ալ պահած է միու-թեան և սրբութեան հետ. չի խաբելով ճշմա-րիտ հաւատացեալները. մանաւանդ ինքը ընդհանրական ըլլալուն համար ընդհանուր կը ճանչնայ բոլոր ճշմարիտ հաւատացեալնե-րը: Ոմանք Քրիստոսի եկեղեցւոյն ընդհան-րականութեան իմաստը չ՚գիտնալով, Պապերը կը հրատարակեն իրենց կամացը չի հետեւող-ները, որ մը՝ ալ Կաթոլիկս հրատարակելու մը-տօք, կարծեն թէ ըսելով կ՚ըլլայ:

## ԴԱՍ Ի.

### ԱՌԱՔԵԼԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ

1. — Ի՞նչու առաքելական կըսուի ։ 2. — Ի՞նչպէս կսկսի ։ 3. — Ուրկէ՞ կառնէ սկիզբը։

*1. — Նախախնամութիւնը կարող էր ամէն բան առանց միջոցի ընել, բայց բնաւ բան մը տնօրինած չէ առանց միջոցի, Քրիստոս կարող էր մարդոց ընելիքներուն բոլորն ալ ինքը ձեռօքը գրել պարզ և անկարօտ վարդապետութեան, բայց տող մը բան անգամ չի գրեց առաքեալներուն տալու համար, այլ միշտ խօսքով և խօստումով կը վարուէր անոնց հետ. «երկնից մէջի ու երկրիս վրայի իշխանութիւնները ինձ տրուեցան. հայրս ինծի ինչպէս որ տուաւ, ես ալ ձեզի տուի . . . գնացէք ուսուցէք անոնց որ ձեզի պատուիրածներս պահեն» որ այն մեռած առաքելոց նկատմամբ էր, իսկ այդ իշխանութիւնը յաջորդական ըլլալը վաւերացընելու համար «մինչեւ 'ի կատարած աշխարհի» բառերն ալ արտասանեց, (Մատթ. ԻԸ.) վերջէն Պօղոսն ալ կանչեց (Գործք. Թ.). լոկ քարոզելու համար, ասոնք և ասոնց գրը-*

ուածները բաւական ըլլալ պէտք էին , բայց տեսանք ալ որ ըստ օրէ ձեռնադրութիւններ շարունակեցին , Մատաթեան՝ Յուդայի տեղը (Գործք. Ա. 26.) Պօղոսը յատկապէս. նաեւ սարկաւագներ ու պաշտօնեաններ ձեռնադրեցին (Գործք. Զ. 6.) շատ անգամ միախոհ ժողովքներ կազմեցին (Գործ. ԺԳ. ԺԴ.) Պօղոս կը ձեռնադրէ եպիսկոպոսներ , Տիմէթէոսն ու Տիտոսը եւայլն , այսպիսի շարունակութեամբ յաջորդական ձեռնադրութիւնը կուգայ մինչեւ այսօր և մինչեւ աշխարհիս վերջը մնալու խոստմամբ ։ [1]

---

[1] Ամենքն ալ հայաստանեայց եկեղեցւոյն առաքելականութիւնը գործքով կը վաւերացնեն · ինչպէս որ այսօր բողոքականք շատ հայ քարոզիչներ և ըստ իւրեանց եկեղեցւոյ անդամներ ունին ; թէ որ հայոց եկեղեցին առաքելական չէ այն եկեղեցին մկրտուածները պէտք էր չ՛ընդունէին ու նորէն մկրտէին · այս կը նշանակէ կամ մկրտութեան արժէքը ստորացնելու ջանալ , և կամ հայաստանեայց եկեղեցւոյն առաքելական իշխանութիւնը բարձրացնել · թէ որ մկրտութիւնը իրենց համար արժէք չունի , աւետարան կարդալնին աւելորդ է , թէ որ մկրտութիւնը քրիստոնէութեան սկիզբն է ալ անկէ բաժնուելնին սխալ է , զի շատ մը քարոզիչներ ու անդամներ այն եկեղեցւոյ աւազանէն ծնած ու իրենց քրիստոնէական մաքրութեան սկիզբը անկէ առած են առաքելական յաջորդի մը ձեռքով , որոնք միայն ունին այն իշխանութիւնը ոչ թէ հասարակութիւնը ։

2. — Առաքելական ձեռնադրութիւնը նախայէս ընտրելութեամբ եղաւ վերջը ձեռնադրութեամբ. Քրիստոս ընտրեց (ես զձեզ ընտրեցի. Յովհ. ԺԵ. 16.) Հոգին Սուրբ ձեռնադրեց վերնատան մէջ. (Գործ. Բ.) ինչպէս որ Քրիստոս ընտրելէն վերջ խոստացած էր Սուրբ Հոգիէն ձեռնադրութիւնն (Յովհ. ԺԵ. 26.). Պետրոս Հռովմէն Պօղոս Աթէնքէն, Տարսոնէն, Իկոնիայէն և այլն շատ տեղերէ, Թադէոս ու Բարդողիմէոս Հայաստանէն ըսկըսան քարոզելնուն հետ մէկտեղ ձեռնադրութիւններ ալ ընել։

3. — Մէկը չի կրնար ըսել թէ այս ինչ եկեղեցականը այն ինչ եպիսկոպոսէն կ՚առնէ իւր ձեռնադրութեան սկիզբը, հապա եպիսկոպոսին միջոցաւը որ առաքելական յաջորդութիւն մ՚է, Քրիստոսէն և Սուրբ Հոգիէն առած ըսել է։

Ինչպէս որ բոլոր մարդկային ազգը Ադամէն կ՚սկսի, նոյնպէս ալ բոլոր ձեռնադրեալներ իրենց աստիճանին սկիզբը առաքելական շղթայակերպ միջոցաւ Սուրբ Հոգիէն կ՚առնեն. «փչեաց 'ի նոսա և ասէ, առէ՛ք Հոգի Սուրբ» (Յովհ. Ի. 22.)։

# ԳԼՈՒԽ Ե.

## ԴԱՍ ԻԱ.

### ՔՐԻՍՏՈՍԻ ԵԿԵՂԵՑՒՈՑՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԸ

**1. — Եկեղեցւոյ խորհուրդները քանի՞ են. որոնք են։ 2. — Խորհուրդ ի՞նչ կը նշանակէ։ 3. — Ի՞նչու սուրբ խորհուրդ կ'ըսենք։ 4. — Քանի՞ տեսակ է։ 5. Եօթը ըլլալը ի՞նչէն յայտնի է։**

*1. — Եկեղեցական իշխանութիւնը՝ գըլխաւորաբար Աստուածային խորհուրդներուն կը վերաբերին, որոնք եօթն են 1. Մկրտութիւն, 2. Դրոշմ, 3. Ապաշխարութիւն, 4. Հաղորդութիւն, 5. Պսակ Ամուսնութեան, 6. Կարգ կամ Ձեռնադրութիւն, 7. Այցելութիւն կամ Օծումն Հիւանդաց, որոնք եկեղեցականաց ձեռքով պիտի կատարուին Աստուածային օրհնութեամբ, զի հասարակութիւնը չունի այդ իշխանութիւնը. «ատոր կեղծիքը շինողը պիտի պատժուի» (Ելից. Լ. 33—38.) «Աստուծոյ խորհրդոց հազարապետները.» (Ա. Կորնթ. Դ. 1.) «հաշտութեան պաշտօնը մեզի տուաւ» (Բ. Կորնթ. Ե. 18.)։*

Զ. — « Խորհուրդ » բառը նախ « գաղտնիք » նշանակութեամբ, առեւտրական, պատերազմական, քաղաքական եւայլն բանակցութիւններ կիմացուին, իբր (ռզր)։ Ք. Աստուածային խորհուրդ, որ արտաքին կերպով մարդկային ազգը Աստուծոյ սիրուն հետ կը կապէ, այս կապը ճանչցողները Աստուածային կամաց հետ կապուեցան, չի ճանչցողները անբանական կենաց մէջ պատժուեցան. օրինակի համար. ամուսնութիւնք յարգողները ջրհեղեղէն ազատեցան (Ծննդ. Է. 1.) չի յարգողները կորան. « ուտէին ըմպէին կանայս առնէին և արանց լինէին » (Ծննդ. Զ. 1.) ոչ թէ կին առնելը մեղք էր, այլ առանց Աստուածային օրհնութեան և պսակի անասնաբար ուզածնուն հետ միանալնին պատժոյ արժան էր, ինչպէս որ Պօղոս ալ գրած է. « ամուսնութիւն արգիլողներ պիտի գան յետքի ժամանակ (Ա. Տիմ. Դ. 3.) իրօք ալ եկան և այսօր ալ կան « պսակը ի՞նչ է. մարդ մը իւր ուզածը թող առնէ. կամ զայն կը ձգէ և ուրիշ մը կ՚առնու » ըսող անհաւատներ, նոյնպէս պատժուեցան չ՚ապաշխարողներն ալ. Սոդոմ, Գոմոր եւայլն, ձուտի. եկեղեցւոյ խորհուրդը Աստուածային է, Աստուածային ըլլալուն համար Սուրբ խորհուրդ է։

3. — Քրիստոսի եկեղեցւոյն խորհուրդները սուրբ խորհուրդ ըսելու արժանի են. վասն զի ի՞նչպէս բան մը կամ գործողութիւն մը ըլլալու էր որ մարդը սրբելու կարողանար Ադամային մեղքէն, եթէ ոչ անտեսանելի հուր մը, կամ Աստուածային հրաշք մը հազիւ հազ կարողանալու էին զմեզ այն ծանր մեղքէն սրբել. ելեքտրական զօրութիւն մը կամ երկաթակուռ շղթայ մը անկարելի էր որ մեզի կարողանար Քրիստոսին հաղորդակից ընելու, իսկ հասարակ ջուրը միջոց սրբութեան և հասարակ հացը ու գինին միջոց հաղորդութեան սահմանուեցան Քրիստոսէն մեզի համար. Նիւթապէս ջուր, բարոյապէս հոգւոյ մաքրութիւն, և նիւթապէս հաց, բարոյապէս մարմին Քրիստոսի, ուրեմն ո՞ր բերան կրնայ համարձակիլ «սուրբ խորհուրդ» չըսելու։

4. — Խորհրդը երկուքի կը բաժնուի, այն է «Անհրաժեշտ խորհուրդի և Հարկադրական խորհուրդի։

Անհրաժեշտը այն է, որ քրիստոնէի մը համար առանց անոր փրկութիւն չկայ. առհասարակ պէտք է, Մկրտութիւն, Դրոշմ, Ապաշխարհութիւն ու Հաղորդութիւն, որոնք հետեւ Քրիստոս վճռած է. իսկ միւս երեք խորհուրդները այն է, Ամուսնութիւն, Ձեռ-

նադրութիւն, Այցելութիւն հիւանդաց, Հար-կադրական խորհուրդներ են, կամ մասնաւոր շնորհք. զի մարդ կայ որ չ'ամուսնանար, Քրիստոսի համար ներքինի կը սեպէ ինք զինքը, ամեն մարդիկ ալ եկեղեցական չեն ձեռնադրուիր, կը պատահի քրիստոնէի մ'ալ որ իւր հաւատոյ և բարեպաշտութեան մէջ օտար երկիր կը մեռնի կամ ծովը կ'իյնի, զի այս վերջի երեք խորհուրդները զատ զատ վախճան և նպատակ ունին, և ասոր հետ մէկտեղ խորհուրդները եօթէն աւելի կամ պակաս են չենք կրնար ըսել, որովհետեւ սուրբ գրոց վկայութեամբ հաստատուած են։

Յ. — Եկեղեցւոյ խորհուրդը ճիշդ եօթն է. «Իմաստութիւն շինեաց զիւր տուն և կանգնեաց 'ի նմա սիւնս եօթն» (Առակ. Թ. 1.) Աստուծոյ երկրիս վրայ պատող աշտանակէ կամ քարի վրայի եօթը աչքը (Զաք. Գ. 9.) ինչպէս որ այն աշտանակը և քարը «դու ես վէմ» ըսելով Քրիստոսի եկեղեցին ըլլալը ինքն ալ գիտցուց. Նաև, (Մատթ. Ե. 15.) Նաեւ Սողոմոնին տեսած եօթը սիւնը Քրիստոսի ու առաքելոց հիման վրայ շինուած եկեղեցւոյ եօթը խորհուրդէն զատ բնաւ բան մը չենք կրնար տալ, թէ որ տալ ուզենք անգամ չենք կրնար յարմարցնել, քանզի Աստուծմէն զատ չկայ իմաստութիւն մը որ չի սը-

*խալի . ճիշդ Իմաստութիւն ինքն Աստուած է . նոյն իսկ եօթը խորհուրդներուն հեղինակը և կարգադրողն ալ ինքն է . որոց վրայօք զատ զատ խօսելով, պիտի տեսնենք թէ ճիշդ եօթն է, ոչ աւելի և ոչ պակաս ։*



## ԴԱՍ ԻԲ.

### ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

1. Մկրտութիւնը ե՞րբ սկսեց . ի՞նչ օրինակով Յովհաննու մկրտութիւնը ի՞նչ էր ։ 2. — Քրիստոս ինքն ալ մկրտե՞ց ։ 3. — Մկրտութեան սկզբունքը ի՞նչ է . մեղքը քանի՞ կերպ է ։ 4. — Սկզբնական մեղքի որո՞նք ենթակայ են ։ 5. Երախան մեղք ունի՞ . ե՞րբ մկրտել պէտք է . ի՞նչ ձեւով . վախճանը ի՞նչ է ։ 6. — Մկրտութիւն ի՞նչ ըսել է . ուրիշ ի՞նչ նշանակութիւն ունի ։ 7. — Մկրտուելով վերստին ծնած կըլլա՞յ ։

1. — *Մկրտութիւնը՝ նախ ստուերապէս և ապա Քրիստոսով ՚ի լոյս ընծայուեցաւ, ինչպէս որ հինը նորոյն ստուերն էր* ( *Եբր.* Ը. 5. Թ. 23. ) ։ *Այս ստուերը աշխարհքս սկըզ-*

բէն սկսեց. « Հոգի Աստուծոյ շրջէր 'ի վերայ ջուրց » (Ծննդ. Ա. 2.) Նոյնն՝ նոյն ջրոյ միջոցաւ ազատիլը, Մովսէսին կարմիր ծովը ճեղքելը մըկրտութեան ստուեր ըլլալնին Պօղոս ալ վաւերացուցած է. « ամենքն ալ Մովսէսով մկրտուեցան ամպին ու ծովուն մէջը (Ա. Կորնթ. Ժ. 2.) դարձեալ. « ութ հոգի ջրէն ապրեցան այնպէս ալ մկրտութիւնը զմեզ կ'ապրեցնէ (Ա. Պետ. Գ. 20.) նոյնպէս ալ Յովհաննէսին մկրտութիւնը Քրիստոսի մկրտութեան նախապատրաստութիւնն է (Մատթ. Գ. 11. Մարկ. Ա. 8. Յովհ. Ա. 33):

2. — Քրիստոսի մկրտութեան վրայօք ալ վէճեր եղան թէ Քրիստոս անձամբ մկրտած էր զոմանս (Յովհ. Գ. 22. Դ. 1.) սա ալ կայ թէ « չէ թէ Յիսուս ինքը կը մկրտէր հապա աշակերտները ». բայց ինչպէս որ ըլլայ թող ըլլայ, յայտնի է որ շնորհական օրինաց մկրտութեան հեղինակը Քրիստոս ինքն է. թագաւոր մը իւր հրովարտակը ուզէ ձեռօքը գրէ, ուզէ դրագրին հրամայէ որ գրէ. դարձեալ հրովարտակը թագաւորին է, մինչդեռ Քրիստոս անձամբ Յովհաննէսէն մկրտուելով սկիզբը դրած է և առհասարակ վճռած է որ, մօրմէն չի ծնողին աշխարհ եկած չըլլալուն պէս, աւազանէն չի մկրտուողին ալ քրիստոնեայ չըլլալը (Յօհ-

Գ. Եփես. Ե. 25.) զի մարդիկ աւազանին մաքրութեամբը սրբուեցան ։ [1]

3. — Մկրտութեան գլխաւոր սկզբունքը Ադամային մեղքէն ազատելու համար է ։ մեղքը երկու կերպ է. սկզբնական և ներգործական. սկզբնականը Ադամայ գործած մեղքն է, սկըզբնական ըսուելուն պատճառը առաջին մարդէն առաջին մեղք ըլլալն է. այն է՝ անհնազանդութիւն. ներգործականը այն է, որ մարդս մկրտուելէն վերջը կը գործէ. առաջինը՝ բոլոր մարդկային ազգին տիրեց, իսկ վերջինը՝ միայն մեղանչողները զրկեց և կը զրկէ Աստուածային փառքէն ։

4. — Սկզբնական մեղքը՝ առ հասարակ

---

(1) Աստուածային շնորհքը իւր բաժանումը ունի անոր համար Պօղոսին աչքը չի մկրտուած բացուեցաւ, շատ հիւանդներ ալ բժշկած էր Քրիստոս, բայց ատոնք մասնաւոր զատ գործողութիւն են, մկրտութիւնը՝ ընդհանուր գործողութիւն և անհերքելի վճիռ է, զի Պօղոս աչքը բացուելէն վերջ նորէն մկրտուեցաւ (Գործք. Թ. 18.) նոյնպէս Կոռնելիոս սուրբ հոգին առաւ, բայց նորէն մկրտուեցաւ (Գործք. Ժ. 44.) որ ըսել է կերպ կերպ է և Աստուածային պարգևաց բաժին մ'է, նոյնպէս Քրիստոսի երեսուն տարեկան մկրտուիլը, երախան չի մկրտուելու փաստ չէր կրնար ըլլալ վասն զի մեռնիլ ու չի մեռնիլ իւր կամքէն կախեալ է ։

ազգեցութիւն ըրած ըլլալուն համար․ ամեն մարդիկ անոր մէջ կը ծնանին, զի զաւակը հօրը թէ պարտուց և թէ ստացուածոց ժառանգն է․ «մայրս զիս մեղքի մէջ ծնաւ» (Սաղմ. Ծ. 5.) մարդէ մը մեղքը աշխարհ մտաւ» (Հռովմ. Ե. 12.) «ուրիշներուն պէս մեղաց որդիներ էինք» (Եփես. Բ. 3.) իսկ ներգործականը՝ մկրտուելէն վերջը՝ ազատ կամօք կը մեղանչէ, անկէ ալ ազատելու համար ապաշխարելու է։

5. — Երախան ոչ մեղք ունի և ոչ վարձք սակայն Քրիստոս արգիլած չէ իրեն երթալու․ (Մատթ. ԺԹ. 14.) շատ փառք կը վայելէ կամ քիչ կը վայելէ չենք գիտեր «Տիրոջը միտքը ո՞վ գիտցաւ» հայրը մայրը թէ որ սուրբ ալ ըլլան երախան պիտի մկրտուի, վասն զի Պօղոս և Կոռնելիոս սրբուելէն վերջը դարձեալ մկրտուեցան, միակ հաւատացեալ ալ ըլլայ պէտք է մկրտենք, ինչպէս որ առաքեալներն ալ կը մկրտէին. «իրենց սրտերուն մէջ զղջացին . . . ու այն օրը մկրտուեցան և երեք հազար հոգիի չափ աւելցան» (Գործք. Բ. 37.) ինքը և իր տունը մկրտուեցաւ (ԺԶ. 15—32.) ո՞վ կրնայ ըսել թէ, այն երեք հազարներուն մէջ և այս ընտանիքներու մէջ երախայ չկար, մինչդեռ նոր հաւատացողները անգամ երախայի պէս էին, զի

կան մեղօք ապականուելուն համար, արտասուքի, հառաչանքի ու մեղայի միջոցաւ վերըստին ծնիլ պէտք է, ոչ թէ երկրորդ անգամ ջրով. որովհետեւ Քրիստոսի մկրտութիւնը մէկ է (Եփես. Դ.) Քրիստոսի չարչարանքն ալ մեր մեղաց համար էր, ոչ թէ ինքը մեղք ունէր։

7. — Քրիստոսի մկրտութիւնը Աստուածային խորհուրդ է. իսկ ամեն քրիստոնեայ եղողներ սա կէտը աղէկ մոռցեր են թէ; վերստին ծնունդը մինակ մկրտուելով չըլլար. Քրիստոս ըսած է «Ջուրէն ու Հոգիէն ծնողը արքայութիւն կ'երթայ» Քրիստոս իւր խօսքը եւս չ'առնէր, ուրեմն ամեն մկրտուողները կերթան որ ըսենք մենք մեղի խափած կ'ըլլանք. մկրտուելէն վերջը գործուած մեղքը մարդուս վրայ աւելի կը ծանրանայ, ինչու որ տէրոջը կամքը գիտցող ու չի կատարող ծառային պատիժը ծանր է։ Սակայն քրիստոնէից համար մկրտութիւնը անհրաժեշտ ըլլալուն էական կէտը սա է որ Ադամային մեղկութեան վրայ Քրիստոսի զգեստը կը հագնի, եթէ մեղանչէ ու հանուի և դառնայ նորէն մեղայ որ կոչէ այն հանած հագուստը պատրաստ եղած կ'ըլլայ. վասն զի չի մկրտըւող քրիստոնեան գայ ու մեղայ ալ որ կոչէ Քրիստոս զգեցած ու հանած չէր որ իրեն

համար պահուած ըլլար և նորէն հագնէր որ ըսել է մկրտութիւնը Քրիստոս հագնիլ է (Հռովմ. ԺԴ. 14. Գաղատ. Գ. 27. Եփես. Դ. 24. Կողոս. Գ. 10.) բայց նախ հագուելով կըլլայ վայելելը, վայելումը հագնելուն վրայ կուգայ. ոչ թէ հագնիլը վայելման վրայ:

Ահաւասիկ Քրիստոսի վճիռը. այն է՝ « որ ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի հոգւոյ ոչ կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ » ըսածը ասոր վրայօք է. նաև հոգեւոր իմաստով է. « մարմինէն ծնածը մարմին է հոգիէն ծնածը հոգի է ». ուստի մարդս նախ մարմինէն կը ծնի մեղքի մէջ, նորէն հոգեւոր ծնելու համար մկրտութիւնը անհրաժեշտ քարոզեց Քրիստոս. որ ըսել է մարմնաւորի մասին մկրտութիւնը վերստին ծնունդ է, իսկ հոգեւորի մասին առաջին ծնունդ եղաւ ոչ թէ վերստին:

Վերստին ծնելու համար բոլոր ներգործական մեղքերէն սրբուիլն է, « սիրտ սուրբ և հոգի ուղիղ » ունենալ պետք է նորոգութեամբ (Սաղմ. Ծ. 10.) միով բանիւ, հոգեւոր և վերստին ծնունդը սուրբ հոգւոյն սերմն է, հերկուած երկիրը՝ նախապէս ջրով մկրտեալներն են առ հասարակ:

## ԴԱՍ ԻԳ.

### ԴՐՈՇՄԸ՝ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԽՈՐՀՈՒՐԴ Է

1. — Դրօշմը ի՛նչպէս սահմանուեցաւ. որո՞նք կ'օծուէին ։ 2. — Ի՛նչ բանի միջոց է ։ 3. — Քրիստոս ալ օրինակ տուա՞ւ ։ 4. — Ի՞նչու համար սահմանուած է. առաքեալք ալ ըրի՞ն. թէ որ ըրածէն ի՞նչու գրած չեն ։

1. — Դրօշմը նոր բան մը չէ. այլ Հայրն Աստուած ստուերապէս տնօրինեց, Սուրբ Հոգին վաւերացուց. որդին Աստուած՝ իւր առաքելոց ձեռօք 'ի գործ դրաւ ։ Հայր Աստուծոյ կողմէն դրոշմ կամ նշան ձիթոյ Նոյի տապանէն սկիզբ կ'առնու, աղաւնոյն ձիթենւոյ մը տերեւը բերելով. (Ծննդ. Ը. 10.) Նաեւ Մովսէսին հրահանգ կը տրուի սրբալոյս ձէթը եփելու (Ելից Լ. 22.) անով Ահարոնին որդիքը պիտի օծուէին, այն է ընտրեալները « ոչ թէ ամեն մարդու մարմնին վրայ պիտի թափուի » (Ելից. Լ. 33—38.) ասոր համեմատ միւռոնը եկեղեցւոյ գլուխ եղողները միայն կ'եփեն, ընտրեալները օծելու, ոչ թէ օտարները ։

Քրիստոնեայք Ադամային մեղքէն սըր-
բուելով Քրիստոսի բաժին կ'ընտրուին, քան-
զի այս Աստուածային տնօրէնութենէն վերջ՝
նահապետք, Թագաւորք, մարգարէք օծուե-
ցան, և օծուելէն վերջ, Աստուծոյ հոգին
անոնց վերայ խաղաց. (Ա. Թագ. ԺԶ. 12.)
Նոր ուխտի քահանայք ընդհանուր ընտրելոց
մէջէն կրկին ընտրուելնուն համար կրկին կ'օծ-
ուին:

2. — Այս ստուերական տնօրէնութիւ-
նը՝ Սուրբ հոգին վաւերացուց թէ, ինչպէս
որ ամեն բան իւր միջոցը ունի, նոյնպէս մե-
ռոնը սուրբ հոգին առնելու միջոց է. և կամ
Նոյի բերուած ձիթենին մի օրինակ էր, ուս-
տի սուրբ գրոց մէջ յիշուած ցորեն, գինի և
ձէթ շատ անգամ խորհրդաւոր են, ոչ թէ
լոկ պատմութիւն, վասն զի շատ անգամ ի-
բարու հետ կը յիշուին (Սաղմ. Դ. 7. Եզեկ.
ԻԹ. 40) Զաքարեան կը պարզէ, (Դ. 12—14)
որ ըսել է; հնուց 'ի վեր սուրբ հոգին առ-
նելու միջոցի համար իւղ մը սահմանուած է;
և սուրբ հոգին աղաւնակերպ գալով զայն
վաւերացուց:

3. — Քրիստոս ալ Գլին գնացքը՝ կը վա-
ւերացնէ, ճամբուն վերայ ինկած հիւանդին
վէրքը ձէթն ու գինին դնելով (Ղուկ. Ժ. 34.)
մանաւանդին հաշիւը, ձէթի և ցորենի պարատ.

մ՚ալ կայ ընդհանրապէս . « անատենը ձեռքերնին դրին,ու սուրբ հոգին առին » . ( Գործ. Ը. 17.) . ասոր ի՞նչ անուն տանք արդեօք, Փիլիպպոսն ալ աշակերտ էր , ի՞նչու թերի սեպուեցաւ ըրած մկրտութիւնը , մինչդեռ ներքինոյն առաջէն հրեշտակը յափշտակեց ալ , ատանկ անձի մը ըրած մկրտութիւնը թերի մնալու չէր . ուրեմն ուրիշ բան չենք կրնար ըսել, միայն թէ ինքը սարկաւագ էր . ( Գործք. Զ 5.) դրոշմը տալու իշխանութիւն չունէր , միայն առաքեալք կուտային ( Գործք. ԺԹ. 6.) Նաեւ մկրտութեան վարդապետութեան հետ է ձեռք դնելն ալ, որ յայտնի դրոշմ է , ասոր համար Պօղոս կ՚ըսէ « մկրտութիւններուն ու ձեռք դնելուն վարդապետութեանը » . ( Եբր. Զ. 2.) . և սուրբ գրոց մէջ քրիստոնէից օծեալ կ՚ըսուի « մեզի հետ Քրիստոսով հաստատեց , ու օծեց » . ( Բ. Կորնթ. Ա. 21.) . դարձեալ Պօղոս առ հասարակ օծում կենալը , և օծեալ Քրիստոսը ուրիշ օծեալներէն տարբերիլը Դաւիթէն առնելով կը վաւերացնէ. « քու Աստուածդ ուրախութեան իւղով օծեց քեզ, քու ընկերներէդ աւելի » (Եբր. Ա. 9) տես նաև (Ա. Յովհ. Բ. 20.27.) :

Ասոնց կարելի էր ըսել թէ « սուրբէն օծութիւն ունիք » այսինքն , սուրբ հոգին առած էք բայց մարդիկ եղէք ևայլն , իւղով

օծելու միջոցաւ սուրբ Հոգին առած էք չի հասկնայինք, սակայն աչքերնիս հին և նոր կտակարանին վրայ դարձնելով կը տեսնանք որ, Աստուած ամեն բանի համար մէկմէկ միջոց տուածին պէս սուրբ Հոգին առնելու համար ալ, սուրբ իւղ մը միջոց դրած է, Նոյեան տապանէն սկսելով. ուրեմն անկարելի էր որ առաքեալները չընէին. ուստի մենք ալ պիտի ընենք, Աստուածային եօթը խորհուրդէն մէկը հաւատալով։

4. — Ամեն հաւատք իւր ծէսն կունենայ, ամեն ներքին արտաքին մը կուզէ, առանց արտաքինի լոկ ներքինը անմաւեր է. ուստի սուրբ Հոգին ներգործելու համար արարողութեան մը պէտք ունինք, այս արարողութիւնն ալ պէտք է սուրբ գրոց մէջէն փնտռենք, հոն տեղ ալ սուրբ և օրհնեալ իւղ մը կը գտնենք. ընդհանուր քրիստոնէից «օծեալ» կ'ըսուի, այս «օծեալ» խօսքը մեռեալ կը մնայ թէ որ դուրսէն չ'ապացուցուի մանաւանդ որ խորհուրդը եօթն է, վեց չէ, եօթնի լրացնելու համար ասկէ զատը չենք կրնար գտնել, ուրեմն առաքեալք ալ գիտէին. հաւատոյ արարողութիւններու և ծէսերու պէտքը. քանի որ քրիստոնէից «օծեալ» ըսին խօսքով, անշուշտ գործնականն ալ հետն էր. ուստի յայտնի եղած բանի մ'ալ մասնաւոր հրահանգ մը տալ պէտք չէր։

# ԴԱՍ ԻԴ.

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

1. — Ապաշխարութիւն ի՞նչ ըսել է. ո՛վ տնօրինեց. ապաշխարութեան միջոցը ի՛նչ է: 2. — Խորհուրդ ըլլալու համար ի՛նչ պէտք է: 3. — Քանի՛ տեսակ ներողութիւն կայ. ո՛րն է կատարեալը ո՞րն է անկատարը. ո՞րն է մասնաւորը. ո՞րոնք ունին իշխանութիւն ներելու: 4. — Մեղքերը քանի՛ տեսակ են. ներգործականը քանի՞ տեսակ է. ո՞րն է ներելին. ո՞րնէ է մահացուն. ասոնք կը փոխուի՛ն: 5. — Յուսով մեղանչել ի՞նչ ըսել է: 6. — Մեղքերը ի՞նչ բանի կը նմանցնէ: 7. — Ապաշխարութեան խորհուրդ ըլլալը ի՞նչէն յայտնի է և ի՞նչպէս կրնաս բացատրել: 8. — Աստուծո՞յ պէտք խոստովանինք թէ մարդոց. աշխարհականի իրարո՞ւ թէ եկեղեցւոյն.

*1. — Ապաշխարութիւն — ապա — աշխարել, այսինքն ետքը լալ. որ միւս խորհրդոց պէս Հօր Աստուծմէ անօրինուեցաւ, Քրիստոսով և առաքելոց ձեռքով վաւերացաւ. ասոնկայ ապրուած ապաշխարից մէջ ընդհանրա-*

՝ցած է . ամէն մարդ կը վկայէ որ ՝մեղանչողին « մեղայ » կոչել պէտք է , իսկ անոր ներուելուն վրայօք եղած միջոցի մասին տարակուսութիւններ շատ են , և կամ « ապաշխարութիւնը՝ խորհուրդ չէ » ըսողներ ալ կան , բայց « Աստուած այս ինչ բանը առանց միջոցի ըրաւ » չեն կրնար ըսել . անոր համար ապաշխարութեան միջոցն ալ խոստովանանքն է։

2. — Գործողութիւն մը Աստուածային խորհուրդ ըլլալու համար առաջին յատկութիւնը՝ մարդկային ազգին. յաւիտենական փրկութեանը համար Աստուծմէն տնօրինուած ըլլալն է . Բ. ՝Քրիստոսով վաւերացած և շնորհական օրինաց հետ յարաբերութիւն ունենալն է . Գ. Ներքինը գաղափարելու յարմարութիւն ունեցող արտաքին գործողութիւնն է։ Ապաշխարելը պարտք է . անոր միջոցը խոստովանանք ըլլալը Հօր Աստուծմէն տնօրինուած է դրախտէն « Ադամ ո՞ւր ես » կանչելով , չի գիտէ՞ր անոր ուր ըլլալը , բայց յանցանքը խոստովանիլ կը պահանջէր ։ Մարդոց յանցանքը մարդոցմէն ներուելով շատ վէճեր ու դատեր հանդարտելով փոփոխութեան ենթարկուիլը բնական է . ուստի մարդը մարդուն յանցանքը ներելու յարմարութիւն ունի , վասն զի պատկեր Աստուծոյ է ։ (1) Զի

(1) Ոմանք սուրբ գրոց սահմանէն անցած են

տեսած Աստուածդ սիրելուն ապացոյցը տեսած ընկերդ սիրելն է. (Ա. Յովհ. Դ. 20.) չի տեսած Աստուծոյդ խոստովանելուն ապացոյցը տեսած մարդուդ խոստովանիլն ըլլալը Քրիստոս ալ վաւերացուցած է ; « որուն որ ներէք ներուած է. » (Յովհ. Ի. 23.) ուրեմն ապաշխարանքը Աստուածային խորհուրդ է ։

---

անճաքէմայի, ճզավքի, կամ բանադրանքի հոգեւոր իշխանութիւնը, աշխարհային գործողութեան մը վերածած լինելով. և չատ մ'ալ վկայութիւններ ունին. « Թէ որ այս ժողովուրդը իմ ձեռքս մատնես, պիտի կորուսանեմ (Թուոց ԻԱ. 2.) Իսրայէլի որդիքը Նզովքի վրայօք յանցանք գործեցին (Յեսու. Է. 1.) « քանզի Սաւուղ ժողովուրդին երդում տուած էր թէ, մինչեւ իրիկուն հաց ուտողը անիծեալ ըլլայ (Ա. Թագ. ԺԴ. 24.) Թէև ատոնք ապաշխարանաց կը վերաբերին, սակայն այդ ապաշխարանքը և նզովքը եկեղեցին ոչ թէ որոց դէմ որ ուզէ անոնց դէմ պիտի խօսի, այլ Աստուծոյ հակառակողին դէմ միայն ։ Կամ թէ եկեղեցին կը նզովէ զԱրիոս զՄակեդոն, զՆեստոր եւայլն հոգեմարտները, բայց այսօր եթէ ծածկաբար եկեղեցւոյն մէջ գտնուին այնպիսիներ արդէն նզովեալ և սատանային մատնուած են, զի մատնաւորը ընդհանուրին տակն է ։

Յոբէլեան ներողութիւնը յատուկ կը հաւատան ոմանք, Ղեւտական օրէնքին ծառայ (քէօլէ) արձակել. կամ մօխօսեօք եղած պարտքը ներելը վկայութիւն առնելով (Ղեւտ. ԻԵ. 28—37. ) որով

3. — Եկեղեցւոյ իշխանութենէն. և առաքելոց գործողութենէն կիմանանք երեք տեսակ ներողութիւն. այն է, Կատարեալ, Անկատար, և Մասնաւոր, որոցմով կը ներէ եկեղեցին իբր անտես տանն Աստուծոյ, այնպէս որ, յանցաւոր մը տան տէրոջը այսինքն Աստուծոյ պարտական է, ոչ թէ անտեսին, եկեղեցին անտես մ'է ոչ թէ բռնաւոր մը. անտես մը իւր տիրոջը ներողամտութեանը վստահելով պիտի ներէ պարտապանաց. ոչ թէ իւր անկէ առած իշխանութեանը վստահելով, զի միակ տեսուչ մ'է Աստուծոյ տանը վերայ (Եզեկ. Գ 17. 21.)։ Կատարեալ ներողութիւնը՝ կատարեալ զղջում ընողները կառնեն Աստուծմէն եկեղեցականաց միջոցաւ, և այս ներողութիւնը հասարակ է կաթուղիկոսէն մինչեւ քահանային, ինչպէս է կամաւ խոստովանողներուն համար տրուած ապաշխարանքը և արձակման ողորմեսցին «խոստովան եղերուք միմեանց զմեղս ձեր»

բոլոր ժողովուրդը ծառայ եղած պիտի ըլլայ ներողութեան կոնդակին. առաջ և առաքելական ներողութեան մէջ մեծամեծ խոտորներ կային առակաց ինքնիշխան կը ներէ, առաքելականը Քրիստոսի ներողութեան միջոց կը ճանչնայ ինքը զինք. «Այսուհետեւ չես ծառայ այլ որդի» կ'ըսէ առաքեալը (Գաղատ. Դ. 7.)

(Յակոբոս Ե. 16.)։ Անկատար ներողութիւնը՝ թերութեան մէջ իյնող, և չի խոստովանողները կ՚առնուն. ժամանակի մը համար ապաշխարանաց ենթարկուելով. ինչպէս է Պօղոսին Կորնթացի հօրը կնիկը առնողին դրած ապաշխարանքը (Ա. Կորնթ. Ե. 2.) և աս ալ դարձեալ հասարակ է եկեղեցւոյն, եպիսկոպոսաց և առաջնորդաց հրամանի և իշխանական քննութեան տակ, ինչպէս է Պօղոսին առ Տիմէթէոս գրածը. « երէցներուն համար եղած ամբաստանութիւնը չ՚ընդունիս առանց վկայի », (Ա. Տիմէթ. Ե. 19.). Առաջնորդներ այդպիսիները քննելէն վերջ, թէ որ եկեղեցական է փիլոնազուրկ կ՚առնեն. կամ ժամանակ մը այս ինչ վանքը կամ առեանէն դուրս ելլալ ժողովրդին մէջ կենալ կը հրամայեն, թէ որ աշխարհական է եկեղեցւոյ խորհուրդներէն կը զրկեն. որ անկատար ներողութիւն և կամ անկատար պատիժ ըսել եղաւ։

Մասնաւոր ներողութիւնը կամ պատիժը, եկեղեցւոյ գլուխ եղողներուն կը վերաբերի տալ, քանի որ եկեղեցին իւր սահմանը ունի. այնպէս որ հաւատոյ դէմ մեղանչելով ապաշխարանաց ենթարկուած անձը, և կամ փիլոնը առնուած եկեղեցականը այն իրենց յանցանքը երբոր կը չարունակեն, ապաշխարանաց չի հնազանդելով, մասնաւոր

պատիժի և նզովքի կ'արժանանան, եկեղեցւոյ գլուխ գտնուողներէն․ ուզէ կաթողիկոսներէն մէկը ըլլայ ուզէ պատրիարքներէն մէկը կամ անոնց ժողովքը ըլլայ, աս ալ եկեղեցին ըսել է, նաև այսպէս է Պօղոս առաքելոյն առ Տիմէթէոս գրածը թէ «սատանային մատնեցի» (Ա. Տիմ. Ա. 20. Զ. 21.) և կամ երեք տիեզերական ժողովոց մէջ կարդացուած նզովքները։

(Տիրտուղիանոս առաքելոց ժամանակին աւելի մօտ էր, «ամեն մեղքերու խոստովանանքով թողութիւն չըլլար, այլ թողութիւնը Աստուծմէն է» ըսելէն վերջ նորէն կը դառնայ թէ «խոստովանութեան ու ապաշխարութեան կարեւորութիւնը մենք ալ գիտենք» Յաղագս համբերութեան Ա. և Թ. գլուխներ)։

Երրորդ դարուն վարդապետներէն, Մելիտոս եպիսկոպոսն ալ Տերտուղիանոսի պէս գաղափարած է, սակայն ոմանք զՏերտուղիանոս որչափ որ գովեն ալ․ «Թողութիւնը Աստուծմէն է» ըսելուն համար սխալած ու աղտոտած կը սեպեն (Իւղ. Իւղկ. ՑԴԱ.)։

«Քրիստոս իւր եկեղեցւոյն իշխանութիւն տուած է, որու մեղքը որ ներէ, պիտի ներւի անշուշտ» ըսելով գաղափարելն ինք զինք խաբել է; գործուելէն վերջը զղջում բերուած մեղքը կը ներուի՝ եկեղեցւոյն ձեռօքը

բայց գործուելէն առաջ «Քրիստոս իւր եկեղեցւոյն իշխանութիւն տուած է, կը մեղանչեմ ու կը խոստովանիմ» ըսելով գործուած մեղքը մահացու է ։ առ հասարակ, Տերտուղիանոս այսպէս յուսով մեղանչելուն համար կ'ըսէ ՚ի խոստովանելով ամեն մեղքերու թողութիւն չ'ըլլար »։

4. — Մեղքերը սկզբնական ու ներգործական են, սկզբնականը մկրտութեամբ կ'երթայ. իսկ ներգործականը դարձեալ երկու կերպ է, մահացու և ներելի (Ա. Յովհ. Ե. 16.)։

Մեղք մը մէկ քանի պատճառներով մահացու կ'ըլլայ. Ա. ամեն յուսով գործածուած մեղքեր մահու չափ են առ հասարակ (1), ով որ յուսով մեղանչէ անյոյս պիտի կորնչի, զի «չիք երկիւղ յԱստուծոյ» ըսել է. Բ. ամենէն փոքր մեղքը մահու չափ կը ծանրանայ մարդուս վրայ յուսահատութեամբ չի խոստովանելով. Գ. գիտնալով գործուած, հպարտութիւն, նախանձ, բարկութիւն, ծուլութիւն, ագահութիւն, որկրամոլութիւն և բղջախոհութիւն իրենց մասերովը մահացու են. Դ. ամենէն գլխաւորն է սուրբ Հոգւոյն դէմ

(1) « Այսօր ընեմ ու վաղը չ'ընեմ, քանի մը տարի շարունակելէս վերջ այսինչ մեղքը չեմ գործեր, կամ մեղանչեմ ու խոստովանիմ ըսելով անհոգ ըլլալը յուսով մեղանչել է»։

եղած հայհոյութիւնը. այսինքն, Աստուածային կարողութիւնը անկարող սեպել, ճշմարիտ հաւատքը ուրանալ, անապաշխար մեռնիլ, ինչպէս որ Յուդան օրինակ ունինք որդի կորստեան, վասն զի սուրբ հոգին զինքը մաքրելու կարող էր, անոր կարողութեան վրայ յուսահատելով խեղդուեցաւ, իսկ որդւոյն Աստուծոյ դէմ եղած մեղքերը ու հայհոյանքները ներուեցան ։

Պետրոս ալ ուրացաւ, բայց լալովը ներուեցաւ. Քրիստոս զինքը խաչողներուն ու դէմը հայհոյողներուն համար ներում խնդրեց, Պօղոս՝ հալածանաց մէջէն «անօթ ընտրութեան» կոչուեցաւ ։ Ասոնք և ասոնց պէս հազարաւորներ Որդւոյն դէմ հայհոյութիւններ ու մեղքեր էին, բայց ներուեցան. իսկ անհաւատութեամբ և յուսահատութեամբ մեղաց չարունակութիւնք թող չեն տար որ մարդը Սուրբ հոգիէն վերստին ծնի. անկէ չի ծնիլն ալ կերպով մը զայն հայհոյելով մեղքի մէջ մեռնիլ է. ուստի չի պիտի ներուի, ոչ այս աշխարհի և ոչ ալ հանդերձելոյն մէջ (Մատթ. ԺԲ. 32.) ։

5. — Յուսով մեղանչողին վրայ կը հասնի եօթը դեւերն առակը, (Ղուկ. ԺԱ. 24.) կամ շան մը իւր փսխածը ուտելը (Բ. Պետ. Բ. 22.) յուսահատին վրայ կուգայ Յուդային պատի-

ժը, իսկ ճշմարիտ հաւատով Աստուծոյ ողորմութեան յոյսը իւր մէջ պահողին համար կայ. Աստուծոյ խոստումը թէ «դարձարուք առ իս և ես դարձայց առ ձեզ». անգամ մ'ալ չի մեղանչելու ուխտով թէ որ դարձաւ առ Աստուած։ Իսկ մարդը սխալական ըլլալով կրկին որ մեղանչեց անոր համար ալ պատրաստ է եօթանասուն անգամ եօթը ներողութիւն։ Ըստ այսմ, ամեն մահացու կարծուած մեղքեր ներելի կրնան ըլլալ, սուրբ հոգւոյն դէմ եղած հայհոյութենէն զատ. այնպէս որ մարդը սխալական ըլլալով, բարոյական առաքինութեան միջին սահմանը չի ճանչնար., վեհանձնութեան տեղ փոքր ինչ հպարտութիւն, կրից չափաւորութեան տեղ չափազանց բարկութիւն ևայլն, մահացուները ակամայ գործելով կը մեղանչէ. իսկ չի գործելուն ուխտը Աստուծոյ գրաւ և իբր երաշխաւոր եթէ տայ կը ներուի խոստովանութեամբ, որ ըսել է ներելին մահացուք, մահու չափը ներելի վերածելը մարդոց ազատ կամքէն կախեալ է։

6. — Մեծ մեղքերը գերանի և փոքր մեղքերը շիւղի նմանեցուցեր է (Մատթ. Է. 4.) կամ ծծղուկի և ուղտի Քս. (Մատթ. ԻԳ. 24.) նոյնպէս Պօղոս ծանր մեղքերն կը թուէ (Գաղ. Ե. 19.) սակայն մեր գլխաւոր դիտ

նախկին յուսահատ չըլլալն է, Աստուած մե-ղաւորին կ'ըսէ «իմ ախտս ի՞նչու բերանդ կառնուս» կամ թէ «աղօթքդ պղնձի ձայնին պէս է» բայց մենք տակէ ալ յուսահատելու չենք, որովհետեւ ատիկայ կը նմանի հօր մը իր զաւակը խրատելուն, հայր մը իր զաւա-կին «այսուհետեւ որդիս չես, գնայ յի-նէն» ըսելու տեղ թէ որ որդին ալ երթայ այն հօրը տանէն գրկուեցաւ ըսել է, իսկ թէ որ ինքը յետ դառնայ. ու իր հօր առ-քը իյնայ, անշուշտ պիտի ներէ, ինչպէս որ Քրիստոս սորվեցուցած է այդ խօսքէն չի յուսահատելու համար «խնդրեցէ՛ք և տացի ձեզ» (Մատթ. Է. 7.) «բռնաւորք յափշտակեն զնա» և ես առաւել երեք նկանակ փոխ ուզե-լուն առակովը (Ղուկ. ԺԱ. 5—13.)։

7. — Ապաշխարհութեան խորհուրդը ըլ-լալը ասկէ յայտնի է, այնպէս որ, եթէ խոստովանանքը պարտք չըլլար, ապաշխար-նաց խորհուրդ ըսել հարկ չ'կար, ոմանց պէս մենք ալ կ'ըսէինք «քանի որ թողութիւնը Աստուծմէն է, խոստովանութիւն պէտք չէ» իսկ առանց խոստովանութեան ապաշխա-րանքը ; լոկ հոգիանալ ըսել է, ան ալ ան-կարելի ըլլալուն համար, Աստուած անհնա-րին՝ խոստովանութիւնը ապաշխարանաց միջոց և եկեղեցին ալ խոստովանութեան մի-

ջոց դրած է, որովհետեւ մարդը մեղանչելով Աստուծոյ երեսէն ինկաւ, Քրիստոս միջնորդ-հաշտութեան խաչուեցաւ մեղաց քաւութեան համար եղած զոհին տեղը. բայց Քրիստոսի խաչուիլը ընդհանուր հաւատացելոց փրկութեան և սկզբնական մեղաց բարձման կը վերաբերի, անոր մասնաւորը, ամեն մէկ անհատի զատ զատ մկրտուիլ ըլլալուն պէս, մեղաց քաւութիւնն ալ զատ զատ խոստովանելով ապաշխարելն է. ինչպէս որ Աստուած հինը նորի փոխելու կերպով ըսած է «Ձեր ամսագլուխներէն զզուեցայ» (Եսայի. Ա. 10—18) «Ձեր մեղքերէն ետ քաշուեցէք», «մեղքերդ ըսէ որ բժշկուիս», (Խգ. 25.) ո՞րու պիտի ըսէ, Աստուած արդէն գիտէ. եթէ ոչ իւր բերնովը նոր հովուի մը յառաջ խոստովանելու է. մանաւանդ ասոնք կը նշանակեն սրտով զղջալ, և Աստուած՝ Ադամին «ո՞ւր ես» կանչելը խոստովանութեան հրաւէր ըլլալը յայտնի է, ինչու որ ինքը գիտէր անշուշտ անոր ուր ըլլալը. «քու անօրէնութիւնդ ճանչցի՛ր ... ձեզի իմ սրտիս համեմատ հովիւներ պիտի տամ ... որ տապանակ ուխտին չի փնտռէք», (Երեմ. Գ. 13—16.) ոչ թէ միայն քարոզելու համար, հապա մեղքերէն դարձողներուն համար ալ նոր հովիւներ պէտք են եղեր, ուրեմն թէ Աստուածային

անօրէնութիւնը և թէ բնութիւնը այդպէս կը պահանջէ . մարդ մը սուր մը ձեռքն կառնու մէկումը զարնելու համար , սկզբնապատճառ՝ զարնող մարդն է . բայց մերձաւոր պատճառը սուրն է , կամ թէ ջուրը բղխողը աղբիւրն է իսկ վազցնողը խողովակն է :

Այսր համեմատ զղջման ալ օրէնքն բղխիլը սկզբնապատճառ է . բերնով խոստովանիլը մերձաւոր պատճառ է : Պատճառաց պատճառը Աստուած է , իսկ անոր մինակ հոգւով կընանք մօտիկնալ , մարմնաւոր անկէ շատ հեռու ըլլալնուս համար նոր հովիւներ տուաւ իբր մերձաւոր պատճառ , որ նախ Յովհաննէս Մկրտչէն ըսկսաւ, մարգարէից լրումն և առաքելոց սկիզբը :

8. — Յովհաննէս Մկրտչին կերթային կը խոստովանէին (Մատթ. Գ. 6.) և այն խոստովանողները Յովհաննէսին դէմ մեղանչած չէին , այլ Աստուծոյ և իրարու դէմ. ուստի աշխարհականը աշխարհականին հետ հաշտուելու պարտք ունի , ոչ թէ խոստովանելու (Մատթ. Ե. 23.) , այս հաշտութիւնը արդէն եկեղեցին կը պատուիրէ խոստովանողին : Քրիստոս ալ կը խոստովանցնէր չարերը. կոյրին աչքը բանալու ատեն « կը հաւատա՞ս» ըսելով անոր հաւատքը կը գրաւէր, նոյնպէս առաքելոց ըսաւ , « դուք ինծի համար ո՞վ է

կ'ըսէք» . Զաքէոս յայտնապէս խոստովանեցաւ ։ Անիկայ մտքէն կ'անցունէր որ Քրիստոս տեսնայ , իսկ հասակաւ կարճ էր , ժանտա թզենոյն վրայ ելաւ , Քրիստոս անոր մտքէն փափաքիլը գիտէր . բայց մինչեւ որ ծառը չելաւ չի կանչեց . Զաքէոսին տունը երթալէն վերջ , անիկայ ինքնիրեն խոստովանեցաւ թէ «զով որ զրկեցի չորեքպատիկը հատուցանեմ» Քրիստոս ալ անոր չ'ըսաւ թէ «գնա հատո՛ւր որ փրկութիւն գտնես» հապա անոր սրտին փափաքին համեմատ «՛այսօր այս տանը փըրկութիւն եղաւ» ըսաւ անմիջապէս։

Այսպէս է ամեն խոստովանողներուն համմար , որ նախապէս սրտով փափագին ու զըղջան , թէ որ ձեռքերնին հասնի զրկածնին տեղը վճարեն . թէ որ բոլորովին անկարելի ըլլայ , անգամ մ'ալ չի զրկելուն ուխտը և խոստովանանքը բաւական է ներելու . ճիշդ այսպէս է անառակ որդւոյն առակն ալ։ Մըտքէն անցաւ որ մեղայ կոչէ բայց թէ որ իրօք ալ հօրը դիրկը չիյնար , ի՞նչ օգուտ էր անոր մտքէն զղջալը . ուստի երբոր զղջաց , ու իրօք դուրսէն ալ մեղայ կոչեց , այն ատեն անառակութեամբ վատնած ստակը ետ բերել չի պահանջուեցաւ . զի անկարելի էր . Նոյնպէս աւազակը խաչին վրայ խոստովանեցաւ անալ հոն փրկուեցաւ . ուրեմն խոստովանե-

լու համար յուսահատութիւն պէտք չէ, անդամ մ'ալ չընելուն ուխտը բաւական է շատ անգամ։

Մինչեւ հիմայ գրուածներէն յայտնի է որ. խոստովանութիւնը դրախտէն սկսեալ Հօր Աստուծմէն տնօրինուած, Քրիստոսէն վաւերացած և առաքեալցմէն 'ի գործ դրուած է. «հաւատացեալներէն շատերը կը խոստովանէին իրենց ըրածները կը պատմէին» (Գործ. ԺԹ. 18.) «մեղքերնիդ իրարու խոստովանեցէք» (Յակբս. Ե. 16.) «իրարու» ըսած խօսքը, ոչ աշխարհականք իրարու, այլ աշխարհականներէն եկեղեցւոյն, վասն զի Յակոբոս այդ խօսքը հիւանդին ու էրեցին մէջ տեղը կը խօսի. «հիւանդը՝ թէ որ մեղք ալ գործերէ, պիտի ներուի անոր, ձեր յանցանքը իրարու խոստովանեցէք ու աղօթք ըրէք իրարու համար». սա յայտնի ճշմարտութիւն է, որ հիւանդէն եկեղեցականին խոստովանանք, եկեղեցականէն հիւանդին աղօթք. ուստի այս կը նշանակէ խոստովանիլ, ոչ աշխարհականք իրարու, և ոչ եկեղեցականանք աշխարհականաց. այլ աշխարհականք եկեղեցականաց. զի խոստովանանքի մէջ «ըրած սխալ է» ըսելը յանդիմանութիւն և արհամարանք է, ժողովուրդն ալ եկեղեցականը արհամարհելու իրաւունք չունի (Տիտ. Բ. 15.). Յա-

կովբոսին այս խօսքը կեղծ վարդապետութիւն չ՚ընդունիր, զի պարզ է, և բնութիւնն ալ մտքի կը սորվեցնէ որ հօր մը ու զաւկի մը մէջտեղ «իրարու հնազանդ եղէք» ըսելով տրուած պատուէրը, զաւկէն հօրը հընազանդութիւն ըսել է, ոչ թէ հօրմէն զաւկին. սուրբ գրոց մէջ այսպիսի խօսքեր շատ են «իրարու հնազանդ եղէք» (Եփես. Ե. 21.) այս հնազանդութիւնը՝ պզտիկէն մեծին ըսել է, ոչ թէ մեծէն պզտիկին, ինչպէս որ վաւերացած ալ է. «Ձեր առաջնորդներուն հնազանդ եղէք» (Եբր. ԺԳ. 17.) «իրարու հիւրասիրութիւն ցոյց տուէք, ամեն մէկը ինչ տեսակ շնորհք որ առիք, իրարու մատակարարեցէք Աստուծոյ շնորհաց հազարապետներուն պէս» (Ա. Պետ. Դ. 9.). ամենն ալ Աստուծոյ հազարապետներն չեն. ամենն ալ հիւր չեն. հապա մեկը հազարապետ պիտի ըլլայ որ միւսը հպատակի. մէկը հիւրասէր պիտի ըլլայ որ միւսը հիւր ըլլայ: Ցակոբին խօսքն ալ հիւանդին ու երեցին մէջտեղը այսպէս է:

Մանաւանդ որ Քրիստոսով հաշտուեցանք Աստուծոյ հետ ընդհանրապէս, բայց մասնաւոր հաշտութեան պէտք ունինք, զի մեղանչող մարդիկ ըլլալով միակերպ չենք, մէջերնիս հաշտութեան պաշտօն ունեցող մար-

դէմ միշտ ունենալու ենք մինչեւ 'ի կատարած աշխարհի · այս պաշտօնն ալ Քրիստոս եկեղեցւոյն տուաւ (Մատթ. ԺԸ. 18. Յովհ. Ի. 23.) « մենք Աստուծոյ խորհուրդներուն հազարապետն ենք » (Ա. Կորնթ. Դ. 1.) « Յիսուս Քրիստոսի ձեռքով Աստուած զմեզ իրեն հետ հաշտեցուց, ու հաշտութեան պաշտօնը մեզի տուաւ » (Բ. Կորնթ. Ե. 18.) Յովհաննէս աւելի կը պարզէ · « թէ որ մեղք չունինք ըսենք, մենք մեզ կը խաբենք » (Ա. Կաթ. Ա. 8.) · հոս մեղք մը ծածկելու խնդիր կայ, « խոստովանինք » կըսէ ուստի մի պահէք ըսել է, ո՞րմէն չի պահել կը պատուիրէ արդեօք, Աստուած արդէն դիտէ, մեր խղճերն ալ կը վկայեն, ուրեմն հաշտութեան պաշտօն ունեցող խոստովանահօրմէն պիտի չը պահենք, որ անոր միջոցաւ Աստուած ների ու սրբէ :

Մենք մեղանչական մարդիկ ենք · մըտաքերնուս զղջալ կուզենք, այնպէս թէ Զաքէոսին պէս Քրիստոսը տեսնալ կուզենք, իսկ հասակաւ կարճ ենք, այսինքն մեղաւոր ենք, չենք կրնար տեսնալ, ուրեմն ծառը ելնենք, այսինքն Քրիստոսի եկեղեցւոյն դիմենք · ծառը ժանտաթզենի մ'է վրանիս կը պատռէ, այսինքն ապաշխարանք կը դնէ · անոր յանձնառու ըլլանք, որ զՔրիստոս մեր տունը

ընդունելու արժանի ըլլանք, եթէ ոչ մինակ մտքերնուս Աստուծոյ կը խոստովանիք թէ որ ըսենք, մենք Աստուծմէ աւելի բան չենք կըր-նար. խորհիր Աստուած այնպէս տնօրինած է. Թէ որ նախ մտքերնուս չի զգլլանք, ու կամ իբր սովորութիւն և կամ լոկ եկեղեցւոյ իշ-խանութեան վստահելով խոստովանինք, այն ատենը Աստուծոյ ապաւինած չենք ըլլար, հա-պա լոկ մարդոց. բայց մտօք Աստուծոյ պիտի խոստովանինք. դրսէն եկեղեցւոյն։

Քրիստոս «ինծի եկէք, ո՛վ աշխատեալ-ներ» կըսէ, բայց տնօրէնութիւն մը և Աստ-ուածային կանոն մը ունի իրեն երթալու հա-մար. Կորխը այն կանոնին չի հնազանդեցաւ, «ի՞նչ պէտք են Մովսէս Ահարոն՝ մենք մեզի կերթանք Աստուծոյ» ըսին պատժուեցան (Թուոց. ԺԶ, 1—3). ուստի թէ որ եկեղեց-ւոյն չխոստովանինք Կորխին պէս կը պատ-ժուինք. թէ որ սխալ խոստովանինք Անանիային ու սափիրային պէս կը պատժուինք, (Գործ. ք. Ե. 1—10.)։



## ԴԱՍ ԻԵ.

### Ս. ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ

1. — Սուրբ հաղորդութիւնը ի՞նչ է։ 2. — Քրիստոսի մէկ անգամ ըրած պատարագը բաւական չէ՞ր։ 3. — Քրիստոսի ըսած խօսքը հացի ու գինիի կը վերաբերէի՞ն թէ ոչ։ 4. — Անարժանութեամբ կառնուի՞։ 5. — Մարդիկ իրենց զիրե՞նք պիտի փորձեն թէ ուրիշները պիտի փորձուին. երախան հաղորդուելու իրաւունք ունի՛. չափահասները քանի՛ անգամ։ 6. — Քահանայութիւնը Քրիստոսի վրայ չի վերջացա՛ւ։ 7. — Առաքեալները ալ կընէի՞ն։ 8. — Գոյափոխութեան է՞րբ կսկսի։ 9. — Հացին ու գինիին գոյութիւնը կը փոխուի՞ 10, — Ցիշատակութենէն զատ ի՞նչ խորհուրդ ունի։ 11. — Գոյափոխութեան վրայօք սուրբ հարց զաղափարը ինչ էր. *մեռեալ* եւ *կենդանի* խօսքերուն վրայ ին՞չ վէճեր կան։ — 12. Հաղորդութեան նիւթը ի՞նչ է. ձեւը ի՞նչ է. խմորեա՞լ թէ անխմոր. ուրիշ ի՞նչ վէճեր կան։ 13. — Մենք ինչո՞ւ բաժակին ջուր չենք խառներ։ 14. — Ի՞նչ ձեւօք հաղորդուիլ պէտք է։ 15. — Արժանաւոր ժողովուրդք քահանայից ճաշակածէն հաղորդուելու իրաւունք ունին։ 16. — Հաղորդութեան մատակարարը որո՞նք են։

1. — *Ամենասուրբ հաղորդութեան, Քրիստոսի «եղ» կըսենք մանանային նկատմամբ.*

դափնւոյ և ոսկւոյ կըսեն Գառն Աստուծոյ զոհւելուն նկատմամբ, ([1]) ինչպէս որ Աստուածահաճոյ նուէրներուն և աղօթքներուն ալ պատարագ կ'ըսուէր. «անոր պատարագ բերին» (Մատթ. Բ. 11.) «երբոր պատարագըդ սեղանին վերայ կը մօտեցնես» (Մատթ. Ե. 23.) «համբարձումն ձեռաց իմոց, պատարագ երեկոյի» (Սաղմ. ՃԽ. 2.) ըստ այսըմ սուրբ գրոց մէջ դարձեալ պատարագը երկու կերպ է. նախերգական և ընթացական, այն է արեան պատարագ, ինչպէս որ հին օրինաց մէջ կար, որ Քրիստոսի վերայ վերջացաւ, «մէկ անգամ պատարագ եղաւ» (Եբր. Է. 27.). Խաչին վերայ Գառն Աստուծոյ. ասոր համար Քրիստոսի մահուան և արեան խորհըր-

---

([1]) Հինին մէջ խորհուրդին ստուերը չորս էր; այն է թլփատութիւն, զոհ, քահանայագործութիւն և սրբագործութիւն, բայց հայելւոյ օրհ-նակաւ (Ա. Կորնթ, ԺԳ. 12.) վասն զի փրկու-թեան միջոց չէին, այլ գալիք միջոցներուն ստուերը (Եբր: Է. Ծ. Թ. 23. Ժ. 1.) ուստի զոհը Քրիստոսի մահուան, քահանայագործութիւնը՝ Նոր ծէսերու, սրբագործութիւնը՝ ամբողջը կը բո-վանդակէր և քահանայից կը վերաբերէր: Մովսէսին աւանդուած Մանանային սափորն ալ սրբութեան սեղանին վրայ կենալէն կ'ապացուցուի թէ հաղորդութեան ստուերը կրկին էր; նախ: Մանանայ; Բ: զոհին արիւնը և հացն առաջաւոր:

դին սեղան ու պատարագ կ'ըսենք, աղօթիւք և ողորմութեամբ. յաւիտենական հաց ըլլալուն համար սուրբ պատարագ է։ (1)

---

(1) Ոմանք բերանացի խորհուրդ կը համարին հաղորդութիւնը, բայց սկզբունքով անկէ հեռու են. նախ կ'ըսեն թէ «Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ, այլ ի՞նչ պէտք» Բ. «Քրիստոս. այս է մարմին իմ» խօսքը խաչին վրայ տարածուած մարմնոյն համար ըսաւ, հացին վերաբերեալ բան մը չը կայ, անի միայն յիշատակութիւն մը է»։

Ասոր վկայութիւն առին սա խօսքը թէ «Հոգին է կենդանի, մարմինը շահ մը չ'ներ. այն խօսքը որ ես ձեզի խօսեցայ հոգի ու կեանք են» (Յովհ. Զ. 64.) կամ Պօղոսին ըսածը թէ «հին օրինաց մէջ եղածները. «. խղճմտանքի կողմէ կատարեալ չէին. հապա միայն կերակուրներով ու խմելիքներով կերպ կերպ արարողութիւններ» (Եբր. Թ. 9.). այս կէտը մինչեւ անգամ լրագրաց մէջ տարածեցին թէ. չ'ըլլայ որ քրիստոնէի մը միտքը ուղղակի հաւատք ունենայ գէթ Քրիստոսի այս խորհուրդին վրայ. ջանացին որ անկէ ալ մոլորցնեն խեղճ ռամիկները. ասոր վրայօք աւելի ծանրացան թէ «Մկրտութիւն, հաղորդութիւն, և միւս խորհուրդներ փրկութեան ի՞նչ օգուտ ունին. փրկութիւնը՝ վերստին ծնիլ. այսինքն մեղքէ ետ քաշուիլն է. թէ որ մեղքէն չի քաշուի. կրնա՞յ հաղորդուելով փրկուիլ»։ Մենք հիմայ այս խօսքերուն կամ տղայական ըսելու ենք կամ խաբէական. զի մեղքի մէջ առնելու արդէն

2. — Քրիստոս պատարագ եղաւ մէկ անգամ, այսու տարբերութեամբ, այն է ըստ կարգին Մելքիսեդեկի յաւիտենական քահանայ, և ամեն անգամի միեւնոյն զոհը, ոչ թէ այս տարի այսինչ ճերմակ երինջը, գալեք տարի ալ այն ինչ սեւ նոխազը, զի անոնց

---

ամեն մարդ կը վախէ, և այս գաղափարն ալ ընդհանուր է որ՛ այս մասին տղայական է. գալով միւս կերպին՛, ի՞նչ եղրակացութիւն կ'ելլէ, «մեղքէն ետ չի կեցողը ատոցմով չի կրնար փրկուիլ. մեղքէն ետ կեցողն ալ արդէն վերստին ծնած ու փրկուած է. ուրեմն ատոնց հարկ չի կայ» ըսել է պարզապէս. աս ալ խաբեբայական է. զի մեղքէն ետ քաշուելու համար դարձեալ միջոց պէտք է. քաշուելէն ետքը կրկին. «անարժանութեամբ մի մօտիկնար» կըսէ. ուրեմն արժանի ըլլալ մեղքէն քաշուիլ ըսել է. մեղքէ սրբուելէն վերջ նորէն մօտիկնալ պարտքն է. թէ որ չըլլայ չիլլար ըսած է Քրիստոս:

Թէ որ այն հացը Քրիստոսի մարմնոյն հետ յարաբերութիւն պիտի չունենար ու լոկ պատմութիւն էր. աւետարան կարդալն ալ բաւական էր. նիւթի ի՞նչ պէտքութիւն կար, հեթանոսներն ալ կը պատմեն և կը յիշատակեն թէ «Գալիլեացի մը շատ հրաշք ըրաւ, խաչուեցաւ մեռաւ». հապա անարժանութիւնը ո՞ւր մնաց. կամ թէ լոկ պատմութիւն է. ի՞նչ պէտք է անդամ որոշել. «Քրիսսի ըսած խօսքը հոգի է անոր հաւատալը ճշտակել է. Քրիստոս հացը իբր առակ խօսեցաւ» կամ թէ Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ» կը-

տեղը Քրիստոս ինքը զոհ եղաւ մէկ անգամ և իւր մարմինը թողուց. միեւնոյն օր մի եւ նոյն ժամուն հազարաւոր եկեղեցիներու մէջ հազարաւոր քահանայներ մեղաց քաւութեան համար պատարագ որ մատուցանեն, զատ զատ երինջներ ու գառնուկներ կամ նոխազներ չեն, հապա միեւնոյն գառն Աստուծոյ. ասոր համար կ'ըսէ մէկ անգամ պատարագ եղաւ» ինչպէս որ Քրիստոս ալ ըսած էր «քանի անգամ որ ընէք իմ յիշատակիս համար է» այսինքն, ոչ թէ այսինչ նոխազին, միւս անգամին ալ այնինչ գառին յիշատակն է. Նոյնպէս Պօղոս հաստատելով և ճիշդ Քրիստոսի խօսքէն առնելով կ'ըսէ «տիրոջմէն ընդունեցի ու ձեզի աւանդեցի ..: քանի որ ընէք զիս յիշելու համար է» (Ա. Կորնթ. ԺԱ. 23.) դարձեալ թէ «անարժանութեամբ ուտողը տիրոջը մարմնոյն և արեանը պարտական պիտի մնայ ... զի տիրոջը մարմինը չ'որոշեր»

---

նէ (Այնուատէթ երես 96.) այս խօսքերով բողոքովին փճացնել կուզէ։

Ճշմարտութեան շառաւիղը աչքը մտնելով միւս երեսին մէջ կեղծելով մը կ'ըսէ «սուրբ խորհուրդ է, ընել պէտք է»։ Առաքեալները «պէտք է» կ'ըսեն ճշմարիտ հաւատացեալք պարտք է կը հաւատան. որ շատ տարբեր է. այսօր պէտք է, կըսեն վաղն ալ պէտք չէ ընելնին կըլլայ։

(27—30. համար)․ որ ըսել է հացութենէ եղած է բարոյապէս, զի հացէն որոշուելուն համար հացին պարտական չի մնար, այլ ամբողջը մարմինին ։

3. — Քրիստոսի որոշած հացը այլաբանութիւն չ’ընդունիր․ վասն զի Աստուածային վճիռ է, այն Յովհաննու ըսածը թէ «իմ խօսքերս հոգի է․» Նախապաշարեալ հրէից նկատմամբ էր ։ Անոնք տեսան որ երկու հացով հինգ հազար մարդ կշտացուց (Յովհ. Զ. 12.) այս մարդիկը զՔրիստոս թագաւոր ընել ուզելով գլուխը կը ժողովուէին․ որպէս զի կորստեան ապականացու կերակուրէն կշտանան միշտ․ Քրիստոս ալ մտքերնին կը բացատրէ թէ «դուք հրաշքի համար չեկաք, հապա կշտանալու համար․ ոչ թէ կորստեան կերակուրին, հապա կենդանութեան կերակուրին համար գործեցէք» (Յովհ. Զ. 20.)։

Այս կէտը շարունակելով և երդման ձեւով կ’ըսէ թէ «ճշմարիտ ճշմարիտ կ’ըսեմ ձեզի . . . իմ մարմինս ճշմարիտ կերակուր է արիւնս ճշմարիտ ըմպելի (Նոյն 54—56.) այս խօսքը աշակերտներն ալ կասկածի մէջ ձգելուն համար Քրիստոս բացատրել ուզեց, վասն զի միշտ խօսած առակները և օրինակները իւր աշակերտներուն կը մեկնէր կամ քիչ մը առաջ կամ քիչ մը ետքը․ ինչպէս որ

անլուայ ձեռօք ուտելուն համար ըսած խօսքը բացատրած է թէ. հրէական լուացման համար է. «դեռ անմի՞տ էք, անլուայ ձեռօք ուտելը չի պղծեր» (Մատթ. ԺԵ. 20.) «ըսած առակները իւր աշակերտներուն կը մեկնէր առանձին», (Մարկ. Դ. 33—35.) տոր համեմատ. հացին խօսքը հոգեւոր խորհուրդ մը ըլլալը իմացնելու համար «մարմինը օգուտ չ'ըներ իմ խօսքս հոգի է» ըսաւ. այնպէս որ մարմնաւոր աչօք տեսածնուդ մէջ հոգեւոր տեսութիւն կայ, իմ խօսքս հոգեւոր կերակրոյ մը վրայօք է. Նաեւ այս խօսքերը խաչուելէն առաջ էր, խաչուելիք գիշերը «ճշմարիտ ճշմարիտ» եբրայականէն զատ մեզի համար ալ երդում եղած խօսքը տեղը բերաւ: Ճիշդ հացով ու գինիով ըլլալիք ըլլալը անշուշտ աշակերտներուն ըսած էր. ինչպէս որ հիմայ մէկ քանիներուն խելքին չի հանգչիր հացն ու գինին Քրիստոսի մարմինն ու արիւնն ըլլալը. Նոյնպէս աշակերտողներէն ոմանց ալ մաքէն վեր եկաւ որ քովէն հեռացան, թէ որ այսպէս չըլլար [illegible]լուկ Ներքին հաւատոյ վերաբերեալ խօսք մը ըլլար չէին փախչիր, վասն զի առաջուց հաւատացած էին (Յովհ. Զ. 67.). բայց որոնք որ հաստատուն կերպով հաւատային՝ վերնատան մէջ վերջին գիշերը աչքովնին տեսան, որ հացը

և բաժակը օրհնեց և առաջուց ըսածը իրօք վաւերացուց (Մատթ. ԻԶ. 26.). Թէ որ այս հացն ու գինին առակի կամ օրինակի համար խօսուած խօսք մ'ըլլար, առակին մէջ ի՞նչ մեղք պիտի կենար. որ առաքեալը անարժանութեամբ չի մօտենալ կը հրամայ է. «մարդ֊ ինք զինք թող փորձէ ու ետքը մօտենայ». Թէ որ առակի՝ վերաբերեալ բան մը կար կամ Քրիստոս և կամ առաքեալք գոնէ բան մը ըսելու էին. «հացը ձեռքը առաւ օրհնեց ու ըսաւ, այս է մարմին իմ» «ես եմ հացն կենդանի, մարմին իմ ճշմարիտ կերակուր է» այս խօսքերը ըսողը չորս օրուան մեռնողին «ե՛լ դուրս եկուր» ըսող բերանն է: Նաեւ կասկած չի բերելու համար, յարութենէն վերջն ալ վաւերացուց. «հացը օրհնեց կտրեց տուաւ, այն ատենը անոնց աչքերը բացուեցաւ» (Ղուկ. ԻԴ. 32.) այս հոգեւոր սուրբ խորհուրդի միջոցաւ բացուեցաւ աչքերնին. նոյնպէս Պօղոսին ըսած հացը ու գաւաթը Քրիստոսի Խաչին վրայի մարմինը չըլլալէն զատ գոնէ վերտանան մէջ օրհնուած հացէն կտորներէն ալ չէր. հապա զատ հաց մ'էր, որուն համար կըսէ «դուք ձեզէն ընտրեցէք. օրհնած գաւաթնիս տէրոջ արիւնը չէ՞, կամ հացը տէրոջը մարմնոյն հաղորդութիւնը չէ՞» (Ա. Կորն. Ժ. 16.) ուրեմն առաջուց սովորա-

պէս մանանայ և զօհ, վերջէն. Նոր ուխտի համար հացն ու գինին Քրիստոսի մարմինն ու արիւնն «՚ի թողութիւն մեղաց». անոր համար «՚ի սրբութիւն սրբոց» կ'ըսենք:

4. — Մարդ մը սրբութեն վերջ հաղորդուելու պարտք ունի, թէ որ չի մաքրըւած ուտէ իւր անձին դատապարտութիւն կ'ընդունի (Ա. Կորնթ. ԺԱ. 27.) թէ որ մաքրուի և բնաւ վրան ալ մեղաց նշան չի կենայ ու չի հաղորդուի, դարձեալ Քրիստոսի հետ բաժին չունի, վասն զի չինուած սուր մը թէ որ չի կտրէ, չի չինուած ըսել է «թէ որ մարմինը չուտէք, ու արիւնը չի խմէք կեանք չէք ունենար» (Յովհ. Զ. 54.):

Այն մարմինը մինչեւ անգամ Քրիստոսէն յառաջ մեռնողներուն ալ ներկայացաւ Աստուածային հրաշիւք, որպէս զի չի մկրտուած ու չի հաղորդուած չիլլան (Ա. Պետ. Գ. 19.) ուրեմն վերստին ծննդեան ապացոյցը՝ այն է չինուած սուրին սրիչը ըսել է հաղորդութիւնը. «՚ի սրբութիւն սրբոց» առանց անոր՝ սրբութիւն չապացուցուիր:

5. — Հաւատացեալ մը լինք զինք փորձել պէտք է ոչ թէ ուրիշէն անոր գործքը փորձուիլ. «մարդ մը լինքը զինք թող փորձէ ու ետքը մօտենայ» այս վերջնական վճիռուրեմն հաւատացեալ քրիստոնեայք խոստ

վանելով ու ապաշխարհելով անոր կրնան մօտենալ, իսկ Թերահաւատից համար չէ ; Նոյնպէս երախայից մկրտուելու իրաւունք ունենալը գրած ենք, սակայն ճաշակելու անկարող ըլլալնուն, Պօղոս կ՚ըսէ «մանկունք հաղորդեցան մարմնոյ և արեան» անոր համար յետ մկրտութեան՝ մանկանց բերնին կը տանինք Թէ, Քրիստոսի բաժին եղար, նոր Իսրայէլ կոչեցար։

Հաւատացեալ չափահաս մ՚ալ յուսահատելու չէ Յուդային պէս, հապա տարին քանի մը անգամ Քրիստոսի սեղանին մօտենալու է. զի մարդ մը անմեղ չ՚ըլլար, սակայն Աստուծոյ ողորմութիւնը շատ է (տես. ապաշխարանաց ԺԶ)։

6. — Մինչեւ հիմայ դրածնուս կերեւնայ Թէ, Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ. բայց ոչ պատարագը վերջացաւ, և ոչ ալ քահանայութիւնը, հապա Նորի փոխուեցաւ «այս է արիւն իմ Նորոյ ուխտի». Հին օրինաց քահանայները անպաշտօն չէին «քանզի ամեն քահանայապետ պատարագներ ու զոհեր մատուցանելու համար որոշուած էր» (Եբր. Ը. 3.) «քանի որ Քրիստոս ալ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏ անունը առաւ ան ալ հարկ էր որ բան մը ունենար։ Առաջինները ասոր շուքն էին, զի իրենց չեղած արիւնովը կ՚ընէին. անոր համար շատ անգամ կ՚ընէին

և ամեն անգամի ալ զատ զատ , այս տարի երինջ՝ մը, գալ տարի ալ նոխազ մը. բայց Քրիստոսի զոհողութիւն իրեն մարդկութեան մէջ էր . մարդն ալ տարին անգամ մը մեռնիլ չըլլար , անոր համար Քրիստոս անգամ մը պատարագ եղաւ ( Եբր. Թ. 27. ) մեզի ալ պատուիրեց թէ , « քանի անգամ որ ընէք զիս յիշելու համար է » , ոչ թէ այսինչ երինջը կամ այնինչ նոխազը պիտի յիշէք , Քրիստոսի այս պատուէր մեզի համար կտակ մ'է « ուր որ կտակ կայ , հարկ է որ կտակ ընողին մահը մէջ մտնէ ( Եբր. Թ. 16. ) . Քրիստոսի մահը վերջնական զոհ էր . ուրեմն ամեն քահանայ պաշտօն մը պիտի ունենայ անշուշտ որ մատուցանէ :

Քրիստոս իրեն եկեղեցի ընտրեց իւր աշակերտները՝ իւր մարմինը ընծայել պատուիրեց անոնց . ուրեմն այս նոր ուխտին ալ նոր քահանայներ անհրաժեշտ են , ինչպէս որ Աստուած խոստացած է « նոր Ղեւտացիներ պիտի ընտրեմ ( Եսայի ԿԶ. 21. Երեմ. Գ. 15. ) և անոնց ամենուն մատուցածը միենոյն զոհը ըլլալուն համար, Քրիստոսէն կ'առնենք Քրիստոսի կը մատուցանենք «և զքոյս 'ի քոյոց քեզ մատուցանեմք » ըսելով . « տիրոջմէն ընդունեցի ու ձեզ աւանդեցի » ( Ա. Կորնթ. ԺԱ. 23. ) այս աւանդը հազարաւոր անգամ

որ ընծենք միեւ նոյն է ([1])․ չի փոխուիր եւ չի հատնիր։

7. — Առաքեալք շատ կ'ընէին այս Ս. պատարագը գրեթէ ամեն օր (Գործք. Բ. 42.) դէթ միաշաբաթի օրեր (Ի. 7.) այս պատճառաւ է որ Քրիստոսի եկեղեցին շաբաթը քանի մը անգամ դէթ մէկ անգամ պատարագ մատուցանել կը պարտի, վասն զի Քրիստոսի

---

([1]) Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ․ դուք շատ կ'ընէք ըսելով զմեզ մեղադրողներին՝ հաղորդութիւն մի ընէք ըսել է պարզապէս, զի Պօղոս Եբրայեցւոց զոհին նկատմամբ ըսած է անոնք ալ Քրիստոսի մարմնոյն նկատմամբ կ'ըսեն, բայց թող ըսեն եւ պիտի ըսեն․ զի վերջի ժամանակն է անշուշտ շատերը իրենց հաւատքէն պիտի թուլանան, մեզի համար Քրիստոսի մարմինը անապականելի է․ ինքը մէկ անգամ եղաւ․ եկեղեցին առաքելոց պէս միշտ կ'ընէ, ժողովրդեան ալ տարին քանի մ'անգամ այն սուրբ սեղանին մօտենալ կը պատուիրէ․ իսկ թէ որ այսօր Եբրայեցւոց մը Քրիստոս քարոզել պէտք ըլլայ, հարկաւ մենք ալ Պօղոսին պէս «Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ» պիտի ըսենք, որպէս զի յոյսերնին նախապէս արիւնին վրայէն Քրիստոսի արեան դարձնեն, զի Քրիստոսի արիւն Քրիստոսի սեղանին կը վայելէ, որ հին սեղանին ձեւին մօտ է, ինչպէս որ հին սեղանին համար կ'ըսէ առաքեալը «Աստուծոյ սեղանը» (Ա. Կորնթ. Ժ. 21.)․ որ ըսել է առաքեալներն ալ նոյն ձեւով ըրած են, ինչպէս որ կ'ընենք մենք։

մարդոյ հետ ըրած հաղորդութեան խորհուր-
դըն է. Ժողովքն ալ մէկը միաբանական են.
մէկը հաղորդութեան պէտք ունին. Անոր հա-
մար Քրիստոս այս պատարագը իւր եկեղեցւոյն
տուաւ « Աստուծոյ խորհրդոց հազարապետ-
ներն ենք (Ա. Կորնթ. Դ. 1.) « հաղորդու-
թեան պատարագը մեզի տուաւ » նոր հոգիներ
անոր ալ աղբերէն խառնուած էր:

8. — Քրիստոս երբոր հացը ձեռքը ա-
ռաւ, օրհնեց ու ըսաւ «այս է մարմին իմ»
և բաժակը «այս է արիւն իմ» այն ատենէ
կ'էտէն կ'ըսկսի ճշմարիտ մարմին և արիւն Տեան-
լինել. (¹) և Սուրբ հոգւոյն ազդեցութեամբ
կը կատարելագործուի: Ինչպէս որ «ե՞ս փչեց
ու ըսաւ առէ՛ք հոգի սուրբ» (Յովհ. Ի. 22.)
բայց այն րոպէին չառին. ու թէ Քրիստոսի
մէջ չկար որ չառին, այլ առնուլ սկսան ու
վերջը առին. զի Աստուածային տնօրէնու-
թիւնը այնպէս կը պահանջէր, այնպէս ալ
Քրիստոսի սահմանով ոչ թէ չի փոխուիր,
այլ փոխուիլ կ'ըսկսի, ու սուրբ հոգւով կը
կատարելագործուի ըստ Աստուածային տնօ-
րէնութեան:

---

(¹) Ոմանք գոյափոխութեան վրայ շատ վէ-
ճեր ունին, այսինչ հայրապետը այսպէս ըսաւ,
այնինչ հայրապետն ալ « Քրիստոս հացը իւր մարմ-
նոյն օրինակ տուաւ » ըսած է կ'ըսեն. բայց մենք

9. — Քրիստոս երբոր հացը ձեռքը առաւ ու օրհնեց, այն հացը հասարակ սեղանի հացէն տարբերեցաւ « այս է մարմին իմ » Աստուածային արտասանութեամբ սահմանուեցաւ. ինչպէս որ Աստուած մարդուն շունչ

---

այսօր անանկ ըսող՝ հայրապետներէն ձեռքերնիս գրուածքներ ունինք որ « անարժանութեամբ ուտողը զՔրիստոս կրկին խաչը կը հանէ » կ'ըսեն· մանաւանդ որ Նորուս քրիստոնէից համոզման համար քիչ շատ դիտողութիւններ պիտի ըլլային· զի ծանր խնդիր մ'էր· հացը լոկ յիշատակութիւն չի հասկնալու համար « Քրիստոսի մարմնոյն օրինակն է » ըսին· « հայոց եկեղեցին ալ գոյափոխութիւնը ամենէն վերջ ընդունեցաւ » ըսելով մեզի կեղծ պատիւ մ'ալ կընծայեն, բայց մենք անանկ խօսքերուն խաբուելու չենք, հին և նոր կտակարանը այսօր աչքերնուս առջևը ունինք։

Սա ալ նկատողութեան առնելու կէտ մ'է որ, Քրիստոսի հաղորդութեան խորհուրդը թեթևցընելու համար է բռնած ճամբանին ու սկզբունքնին իսկ խօսքով եկեղեցւոյ անդամ ընտրելնին ալ որ նայինք, գոյափոխութիւնը մեզմէ աւելի կը դաւանին· վասն զի թէ որ անոր մէջ ներքին ու Աստուածային փոփոխութիւն մը չ'կայ, վկայութեան ու անդամութեան ինչ հարկ կայ, ըստ իւրեանց լոկ հաց ըլլալու է, ինչպէս որ կ'ըսեն « համը ու գոյնը չի փոխուիր »· փոխանակ անոր փոփոխութիւնը հոգւոյ աչքով տեսնալու, արտաքին փոփոխութեան կը նային։

փչեց, աման մը կաթին ամեն մէկ կաթիլին
մէջ խուղ կենալուն պէս մարդուս հոգին ա-
մեն մէկ անդամին մէջ տարածուեցաւ ան-
տեսանելի կերպով, նոյնպէս Քրիստոսի կա-
տարեալ մարդկութեան մէջ կատարեալ Աստ-
ուածութիւնը թէ ամբողջ հասակին մէջ և
թէ անոր մասին ծայրը բովանդակէ. ինչպէս
որ հոգին կը տարածուի ու չի բաժնուիր,
նոյնպէս Քրիստոսի Աստուածութիւնը անբա-
ժանելի է: Հօր Աստուծոյ ծոցէն Մարիամին
յարգանդը իջաւ, դարձեալ անկէ չի բաժուե-
ցաւ. ասոր համեմատ ալ քանի որ հացին ու
գինիին ալ սահման դրաւ, այն օրհնուած
հացին ամեն մէկ մասին, և գինիին ամէն մէկ
կաթիլին մէջ Քրիստոսի մարմինն ու արիւնը
պարունակուած է. թէ ճաշակելէն յառաջ
և թէ վերջ անոր մնացածը օրհնուած է..
թէեւ ոմանք մնացորդը հասարակ հաց կը
սեպեն. ասիկայ հերետիկոսութիւն է. հա-
ւատացեալի մը համար Քրիստոսի սահմանը
պատճառ չ'ընդունիր. իսկ թերահաւատի մը
համար Քրիստոսի մարդանալն ալ դժուար է
ըմբռնել. մարդուս մէջ անտեսանելի հոգի
մը ալ կենալը կասկածելի է ոմանց համար.
բայց Աստուածային հրաշալեաց մէջ ամեն
բան կարելի է հաւատացելոց համար, այս
պատճառաւ է որ Ամենասուրբ հաղորդու-

թիւնը խորհուրդ կը դաւանինք. և անոր ամէն մէկ մասերուն մէջ բովանդակ է զօրութիւն Քրիստոսի, վասն զի մասը ամբողջին հետ առնչութիւն ունի. որուն համար բժշկական օրէնքի վերածելով «համը հացի համ է. գոյնը գինիի գոյն է» ըսե՞լն և Աստուածային սահմանին դէմ վիճելը, խթանի դէմ կից նետել է, նոր աղանդից հեղինակներն ալ այդչափ չըրին. քանի որ մարդու մը «ա՛ռ քեզի թող ըլլայ» ըսած խօսքովը նուէր մը նուիրատուէն կելնէ և նուիրառուին կը սեպհականի, հապա ո՞րչափ ևս առաւել Քրիստոսի վճռով նիւթականը բարոյականի կը փոխուի. ուրեմն գոյափոխութիւն դաւանելու ենք։

10. — Քրիստոսի մարմին ու արիւն լոկ յիշատակութիւն ու Քրիստոսի մահուան պատմութիւն չէ. ասոնց համար Աւետարան կարդալն ալ բաւական է, բայց մեր Փրկիչը Քրիստոս Կոյսէն մարմին առաւ, այն մարմինը զոհելով մեզ փրկեց. ամենէն վերջի գիշերը ցաւալի ժամուն նոյն մարմինը հացի միջոցաւ մեզի յիշատակ թողուց. քանզի հոգին հոգի է բայց մարմնոյ միջոցաւ աշխարհիս վըրայ է, մարմնոյ միջոցաւ մեզի երեւեցաւ. մինչդեռ անմարմին ալ փրկելու կարող էր, իսկ «Էմմանուէլ» որ Աստուած մեզի հետ ըսել է, մեր մէջ երեւեցաւ «մինչեւ 'ի

կատարած աշխարհի ձեզի հետ եմ» ըսելով գնաց, Քրիստոս չեկած Ադամին ձայն կու-տար դրախտէն, Մովսէսին կը խօսէր Սինա-յէն, որ ուխտի հետ ըսել էր ինք. «Աստ-ուած մարդոց հետ էր» ըսելով մասնաւոր խօսք մը չեղաւ, միայն Քրիստոսի անձամբ երեւնալուն վրայօք «Էմմանուէլ» ըսուեցաւ. ուստի քանի որ մինչ՝ի կատարած աշխարհի մե-զի հետ պիտի ըլլայ իր մարդկութեան նկա-մամբ, աւրեմն անոր մարմինն ալ միշտ մեր աչքի առջեւ պիտի երեւնար. ինչպէս որ անոր Աստ-ուածութիւնը մարդկութեան միջոցաւ մեզի ե-րեւեցաւ, նոյնպէս ալ անոր մարմինը հացի մի-ջոցաւ երեւնալ սորվեցուց. քանի որ կատար-եալ Աստուած կատարեալ մարդ էր, իր առնուած հացն ալ կատարեալ մարմին Քրի-ստոսի է, որ մեր մէջ երեւնալու տեղն, Աստուծոյ մեզի երեւնալը կերդենք «Աստ-ուած մեր եւ Տէր մեր երեւեցաւ մեզ» ը-սելով։

11. — Սուրբ խորհրդոյս վրայօք Ներ-սէս Լամբրոնացին կ'ըսէ թէ «առէ՛ք, կե-րէ՛ք» ըսուած ժամանակ հացը Քրիստոսի մեռեալ մարմինն է. «Եւ Որդի Աստուծոյ» ի ժամանակ սուրբ հոգին կոչուելով, հացն ու գինին Քրիստոսի կենդանի մարմինն ու արիւ-նը կ'ըլլայ» (՚ի Մեկնութեան պատարագին)։ Այս

խօսքը հայ հռովմէականաց հռչակաւորներէն Հ. Գ. Աւետիքեան, Հ. Մ. Ջամչեան և այլք կը վաւերացնեն և զՆամբռոնացին կը գովեն ալ, իսկ Նորերէն Պ. Վ. Էմմանուէլեան ալ երկայ-բաբանելով կը պարսաւէ թէ, «Նամբռոնա-ցին Ներսէս այդ զգալի մարմինը թէ որ Քրիստոսի մարդկային հոգւոյն կուտայ՝ հոգւին առանց անձնաւորութեան չէ, երկու անձնաւորութիւն ըսել կ'ըլլայ, թէ որ մեռ-եալ մարմնոյն ալ զգայութիւն կուտայ ան ալ փիլիսոփայօրէն բոլորովին սխալ է, երկու կերպէն որն որ ընդունի հերետիկոսութիւն է» ( Իւծ Իւ-ծէ ՆՂԵ. համար ) իբր թէ սուրբ հոգւոյն միջոցաւ կենդանանալու հարկ չկայ, արդէն կենդանի է ըսել կ'ուզէ, սուրբ հոգւին Քրիստոսի մէջ ալ կայ ըսելով։

Քրիստոս խաչուեցաւ, թաղուեցաւ իբր մեռեալ, յարեաւ Աստուածապէս. իմաւ կենդանին յաւիտենից Քրիստոս ըսաւ «ես եմ հացն կենդանի» հրեշտակը վկայեց «զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս» սակայն տոր հետ մէկտեղ սա ալ կայ որ, Պիղա-տոս կը զարմանայ թէ «վա՞ղ մեռաւ» չորս աւետարանիչներն ալ կը գրեն «աւանդեաց զոգին». ուստի Քրիստոս իւր Աստուածու-թեան նկատմամբ յաւիտենից կենդանի է, իսկ մարդկութեան նկատմամբ խաչին վրայ

մեռաւ մէկ անգամ, երեք օր գերեզմանին մէջ մնաց իբրեւ հասարակ մեռեալ. ինչպէս որ մնացած էր իբր հասարակ երախայ կուսին յարգանդը. ծնաւ և մեռաւ մարդկօրէն, և յարեաւ Աստուածաբար. նաեւ բնականապէս զատանուկ մը մայրութենէն վերջը կուսաւոր, ուստի ծնունդ տալու համար, ոչ թէ ողջ ողջ, զի անոր մեռելոյն մէջ ալ կենդանութիւն մը կայ. մանաւանդ որ Քրիստոս Գառն Աստուծոյ է անճառապէս. իրենց արուածին կարգը չի պահելով ճառողները կը մոլորին. Հայաստանեայց առաքելական եկեղեցին չի մոլորելու համար Աստուածային անօրէնութեան կարգը կը պահէ ուղղակի հաւատոյ վրայ կայանալով:

Քրիստոսի կենդանի մարմնոյն սկիզբը սուրբ պատարագին, բազմոցին վրայ դըրուած մըձոյին սրբագործութեան սկիզբն է, ինչպէս որ Գաբրիէլի աւետումէն կըսկսի Քրիստոսի զգալի մարմինը. « հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ, որ 'ի նմանէ ծնեալ է ». բայց այն ատենը իւր մարմինը մեզի տալիք ըլլալը անծանօթ էր. ճիշդ առոր պէս է, Քրիստոս առաքելոց փչելով ըսելը « առէ՛ք հոգի սուրբ. որոց մեղքեր որ ներէք թողեալ ներուի », (Յովհ. Ի. 22.) այս խօսքին մէջ մեղաց ներումը իսկ և իսկ ապատանիի ձեւով կ'ըսէ,

բայց սուրբ Հոգւոյն համար Ներկայն կ'արտա-
սանէ, «առէ՛ք» այն է, հիմայ առէք, հա-
պա ինչո՞ւ չառին, մինչ Քրիստոս խաբե՞ց
զանոնք, կամ իրեն մէջ չկա՞ր որ չառին,
քաւ լիցի. հապա իրեն Աստուածային տնօ-
րէնութիւնը յարգեց. այնպէս որ այն րոպէ-
ին առնուլ սկսան «պիտի երթամ ու դրկեմ»
ըսաւ ու վերջէն աւ առին, այս տնօրէնութեան
համեմատ. ճիշդ էր որ «առէ՛ք կերէ՛ք» ըսած կե-
տէն կ'ըսկսի Ս. հացը Քրիստոսի ճշմարիտ մարմ-
նոյն փոխուիլ, բայց պէտք է գիտնանք որ,
Քրիստոս այս խօսքը խաչուելէն յառաջ ըսաւ,
դեռ. զոհ պիտի ըլլար որ ճաշակուէր. հացն
ու գինին մեղի պիտի աւանդէր, կարելի՞ էր
անոր հրահանգը իւր աշակերտներուն չի
տուած անոնց քովէն երթար. ուստի անոնց
վերջի ընելիքը տնօրինեց. թէեւ ճաշակեցին
բայց աչքերնին չի բացուեցաւ, խաչուած
գիշերը ոմանք փախան ոմանք ուրացան, իսկ
խաչուելէն վերջը ճաշակողներուն աչքերը
բացուեցան (Ղուկ. ԻԴ. 30.) վասն զի խա-
չին վրայ զոհ եղած մարմինը պիտի տար մե-
զի հացի միջոցաւ ոչ թէ չի խաչուած կեն-
դանի մարմինը. վասն զի ինքը զոհ անուանը
առած էր, խաչին վրայ զոհ եղաւ, հոգին
աւանդեց, այն աւանդուած հոգին դարձեալ
միացաւ 'ի հարկէ, որ յարեաւ, ուղէ այն րո-

պէին միացած ըլլայ ուզէ երեք օր վերջը, անիկայ մեզի համար անճառելի է, բայց « տանջելոյ, յարելոյ » տանք ծանօթ բառեր են, աւանդելէն վերջ յարութիւն առաւ. այն զոր ըլլալով աւանդեալ հոգին երրոր միացաւ, այն ատեն գիտցուեցաւ թէ յաւիտենական կենդանի է Քրիստոս. Նախ մեռեալ և ապա կենդանի ճանչցուեցաւ. այս վերջի կենդանութիւնն էր մեր հաղորդուելիքը, ոչ թէ նախ կենդանի ապա մեռեալ. վասն զի թէ որ յարութիւն չառնէր, ի՞նչպէս պիտի հաւատայինք անոր. մինչեւ անգամ իւր աշակերտներն ալ անկէ վերջ հաւատացին անոր կենդանութեանը, աչնս այս վերջի կենդանութեան համար ըսաւ Քրիստոս թէ « ես եմ հացն կենդանի » և հրեշտակը վկայեց թէ « զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս » Լամբրոնացւոյն ճշմարիտ աւետարանական վարդապետութիւնը, ասոր համար է. որ ըսել է առաջին անգամ անոր մեռնիլը և արիւնին թափուիլը կը խոստովանի և անկէ վերջ պատարագիչը խաչակնքելով « առաքեա զհոգի քո սուրբ, որով զհացս և զգինիս օրհնեալ մարմին և արիւն ճշմարտապէս արասցես (1), Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի, փոխարկելով հոգւովդ սրբով»

(1) Լատինականք « արարեր » կըսեն, որ-

անկէ վերջ սուրբ հոգւոյն կ'աղաչէ, (հոն տեղ Ամենասուրբ երրորդութիւնը Աստուածային տնօրինական կարգաւ մը կը յիշուին), որովհետեւ մեր մեղաց քաւութեան համար եղած զոհը նախ մեռեալ և ապա կենդանի տեսանք, անոր համար «որասցես» կ'ըսենք ոչ թէ «որորեր» որպէս զի խառնաշփոթ գաղափարի մը ծառայած չըլլանք ։

12. — Հաղորդութեան նիւթը ցորենի հաց և խաղողի գինի ըլլալը Քրիստոսով վաւերացած և առ հասարակ ընդհանրացած է, իսկ անոր ձեւի մասին զանազան ժողովքներու մէջ այլ եւ այլ վէճեր տեղի գտած են. ոմանք անխմոր բաղարջ ըլլալու է ըսին. ոմանք ալ խմորեալ հաց. Հայք և Հռովմէականք անխմոր բաղարջ ըլլալ հաստատեցին, Յոյնք ալ խմորեալ հաց պնդեցին (¹) ։

Անխմոր և խմորեալի վրայօք, յոյներ իրենց վկայութիւն ունին թէ «Քրիստոս պա-

---

պէս զի «Քրիստոս վերնատան մէջ ըրած է, հոգին ալ իւր մէջն էր. սուրբ հոգւոյն մասնաւոր կոչման հարկ չ'կայ» ։

(¹) Գոհ ենք այս մասին որ, գոնէ իրարու նզովք չ'կարդացին, այլ ճշմարիտ հաւատով համոզուեցան որ գործողութեան էութիւնը՝ հացին ու գինիին մէջ է, անոր ձեւն ալ Քրիստոսի տըւած սահմանէն կախեալ է ։

տեքի տօնէն յառաջ իւր ժամանակը հասած ըլլալը գիտցաւ» (Յովհ. ԺԳ. 1.) ուստի պատեքի խմորէն տարբեր խմոր մը ըրած ըլլալու է պատեքէն յառաջ, որպէս զի հինը նորի փոխուած ըլլայ. և կամ «առաքեալք ամեն օր կ'ընեն, ամեն օրուան հացն ալ առ հասարակ խմորեալ կ'ըլլայ». իսկ Հայեր ու Համաձայնականներ, այս վկայութիւնը թեթեւ տեսնալով անոր ծանր կողմը գտան թէ, այդ պատեքի տօնը երեք օր կը շարունակէր, այն տօնին իսկ առաջին օրը, աշակերտները Քրիստոսի ըսին որ «զատիկը ո՞ւր պատրաստենք» (Մատթ. ԻԶ. 17. Ղուկ. ԻԲ. 7.) հարկաւ անոնք ալ իրենց գիտցածին պէս պիտի պատրաստէին. վասն զի պատեքին հացը անխմոր պիտի ըլլար. (Ելից. ԺԲ. 15.) Քրիստոս ալ ճիշդ անխմոր հացին օրը կատարեց այդ խորհուրդը. ուստի պէտք է անխմոր և մասնաւոր հացով մը ընենք և ճիշդն ալ այնպէս է, վասն զի հինը նորոյն ստուերն էր, ստուերն ալ իւր ձեւը իրեն ձեւին մօտ կ'առնու, Ներսէս Շնորհալւոյն ըսածին համեմատ «ընդ բաղարջին հաց անխմոր, ետ զմարմին իւր զերկնաւոր». առաքելոց ամեն օրուան ընելէն անխմորութիւն չի կրնար հեռանալ, ամեն օր անխմոր հաց եփել կարելի է. մանաւանդ Քրիստոս ինքը

անխմոր (անսերմն) ծնաւ, «անխմոր էք» (Ա. Կորնթ. Ե. 7.)։

Հաղորդութեան ձեւին վրայօք սա վէճն ալ կայ թէ «բաժակին մէջ երեք կաթիլ ջուր խառնելու է» ասոր համար բաւական վարդապետներ ալ յարմար տեսան կ'ըսուի, իսկ անմիջապէս նզովք չի կարդացին (1), վասն

(1) Տրիտենթեան ժողովը 1438 ի միջոցները իր նիստին մէջ «ով որ բաժակին ջուր չի խառնէ նզովեալ ըլլայ» ըսաւ։ Գինիին մէջ երեք կաթիլ ջուր խառնելով գինին գինիութենէ չելլեր անմիջապէս․ սակայն Քրիստոսի անօրէնութեան նայելով, չի խառնելը յարմար է քան թէ խառնել, կամ թէ խառնելու ու չի խառնելու վրայօք վէճ ըլլալը կարելի է, սակայն անմիջապէս անիրաւի նզովք կարդալն ալ կամապաշտութեան նշան և քրիստոնէական սիրոյ բաժանում է․ ինչպէս որ այսօր շատ անգամ կը տեսնանք այդ ժողովոյ նզովքին ենթակայ ժողովրդի մը վիճակը․ որ երբեմն անհաղորդ կը մեռնին, Տրիտենթեան ժողովոյն շնորհիւը․ իսկ առաքելական եկեղեցւոյ ժողովուրդ մը, թէ որ իւր գտնուած տեղը Հայոց եկեղեցի չի գտնուի, չի խորշեր, Յունաց եկեղեցին ալ կերթայ Հռովմէականաց ալ․ թէ որ նեղը գայ կ'աղաչէ որ զինքը հաղորդեն ալ՝ զի նախապաշարուած չէ առհասարակ․ այն ատեն՝ անկէ տարբեր խոստովանանք պահանջելով չի հաղորդողին կ'ըլլայ մեղքը։

Հայաստանեայց եկեղեցւոյն համար Քրիստոս մէկ է, նզովքը օգուտ չ'ընեն անիրաւի նզովքը

մահը պատմելով այն րոպէին. սակայն պատարագին խորհուրդը արիւն Քրիստոսի կը ներկայացնէ անարատապար. այսինքն սկիհն օրինակ՝ Քրիստոսի աւազանին ու գերեզմանին, բայց իրապէս բաժակ է Քրիստոսի արեան ։

14. — Հաղորդութիւն առնելու ձեւին մէջ ալ քիչ շատ տարբերութիւններ կան, յոյները գգալով կուտան, իսկ բաւական է որ ժողովուրդը մարմինէն ու արիւնէն հաղորդուին առհասարակ ։ Հայեր Աստուածային տնօրէնութեան համեմատ հինը նորի՝ փոխուելու մեծ կարեւորութիւն տալով մատով կուտան, մարմինը արեան մէջ թաթխուած. որուն համար մարգարէութիւն ալ կայ. «սերովբէներուն մէկը սեղանէն կրակի կայծ մը առաւ . . . ունելիքով բերանիս մօտեցուց» (Եսայ. Զ. 6.) ասիկայ չրթունքիդ դպաւ. մեղքիդ քաւութիւն եղաւ (7) նոյնպէս Պօղոս կ'ըսէ «մեր Աստուածը կիզող կրակ է» (Եբր. ԺԲ. 29.) կամ թէ Քրիստոս ալ հացը ձեռքը առաւ ու տուաւ (թէեւ Յուդային ալ թաթխելով տուաւ. բայց անիկայ օրհնուածէն չէր, մանաւանդ որ բաժակին չի թաթխեց; այլ կերակուրի սկաւառակին մէջ). թէեւ Քրիստոս զատ զատ տուաւ, իսկ այն օրը նոր հրահանգ կուտար, հացն ու գինին զատ զատ ցոյց տալ պէտք

էր և կամ ինքը խաչուելէն վերջ պիտի տար, երբոր խաչուեցաւ կողքէն ելած արիւնը զատէն երևուեցաւ, գիտցուեցաւ թէ մեր ճաշակելիքը անոր արիւնաթաթախ մարմինն է, ուստի քանի որ Քրիստոսի մարմինը սեղանին վրայ արեան մէջ թաթխուած է, հաւատացեալք կատարեալ կերպով կը հաղորդուին ըսել է. և կամ թէ «առէք կերէ՛ք» կ'ըսէ, բայց աւելի յարգելու համար կուլ տալն ալ ուտել է. թէ որ չի կարողացաւ կուլ տալ և կերաւ, դարձեալ կուլ տալ ըսել է։

**15.** — Թէև հին օրինաց առաջաւորաց հացը միայն քահանայից օրէն էր ուտել (1)

---

(1) Պապականք սուրբ հաղորդութենէն ժողովուրդը կը զրկեն, գործողութիւնը փիլիսոփայութեան վերածելով, այնպէս որ «Քրիստոս երբ «այս է մարմին իմ» կամ «ես եմ հացն կենդանի» որ ըսաւ, կենդանի էր, փիլիսոփայօրէն անձնական կենդանի մարմինն արիւն կ'ունենայ, ուրեմն ժողովուրդը մարմինը ճաշակած ատեն արիւնն ալ ճաշակած կ'ըլլայ», ըսելով պատարագիչը մարմինէն ու արիւնէն կը ճաշակէ, ժողովուրդը լոկ մարմինէն, բայց չենք գիտեր թէ պապական քահանայի մը զատ և ժողովուրդի մը զատ հաւատալ պէտք է, թէ որ այնպէս է, պէտք է որ քահանանայներն ալ փիլիսոփայօրէն ճաշակեն, խնդ

Իսկ Դաւիթ և անոր հետ եղողներն ալ երբոր անօթեցան կերան, ասոր համեմատ Քրիստոս ալ քաղցեալներուն կենդանի հաց և ծարաւիներուն կենդանի ջուր խոստացաւ առհասարակ; բոլոր ճշմարիտ հաւատացողներուն համար խտիր չկայ, ամենն ալ իրաւունք ունին ուտելու, ու խմելու. միանգամայն հին օրինաց քահանայութիւն ծառայական էր, իսկ Նոր օրինաց քահանայապետն յաւիտենից՝ ազատօրէն բաշխեց իւր սեղանը. ինքը ինչ որ ճաշակեց, աշակերտներուն ալ նոյնը տուաւ. աշակերտներն ալ ինչ որ կը ճաշակէին, ժողովրդին նոյնը կուտային. գըլխաւորաբար՝ Քրիստոս հաղորդութիւնը սահմանած ատեն դեռ խաչին վրայ մեռած ալ չէր, «մարմին իմ» ըսած րոպէին արիւնը մէջն էր, պէտք էր գինին ալ չի տար կամ թէ որ տուաւ ալ «հեղանի 'ի վերայ բազմաց» ըսելու չէր այլ «'ի վերայ պաշտօնէից միայն» ըսելու էր:

Ուրեմն Քրիստոսի հօտերուն ազատ սեղանէն՝ ժողովուրդը աշխարհային իշխանք սեղանէն ծառայողի պէս զրկելու չենք. այն կերպը կիսահաղորդ ըսել է. հապա արիւ-

---

ռամիկը փոխորդակութեանը ինչ. գրած: երբեմն քահանաներու կը պատկանէր այն գիտութիւնը:

նաթաթախ մարմինը ճաշակել ժողովրդեան իրաւունքն է ։

16. — Անոր մատակարարութիւնը միայն եկեղեցականին է , ժողովուրդը՝ իւր ձեռքը անոր եթէ դպչի կը մեղանչէ , վասն զի իւր խորհուրդներուն պաշտօնը կատարելու համար առաջէն մինչեւ վերջը մասնաւոր մարդիկ ընտրել տնօրինած էր Աստուած. «Ես զձեզ ընտրեցի» Աստուծոյ խօսքը ձեռքովնիս շօշափեցինք ( Ա. Յովհ. Ա. 1 ) . ուստի ճշմարիտ հաւատացեալ եկեղեցական մը կրնայ ըլլալ որ այդ ամենասուրբ խորհուրդը մատակարարելու չափ արժանաւոր չըլլար , իսկ ժողովուրդը շատ անգամ արժանաւորապէս կը հաղորդուի . և կը հաւատայ հոգւոյ աչքով թէ , աներեւոյթապէս Քրիստոս Նը՛ պատարագի . ինչպէս որ Մովսէս քանի մը անգամ Աստուծմէն յանդիմանուեցաւ , կամ Ահարոնն՝ թերի գտնուեցաւ և Մովսէս անոր համար աղաչեց , իսկ նորէն Աստուծոյ պաշտօնեայներ էին . զի ընտրուեցան . չի՛ սխալիլ միայն Աստուծոյ կը վայելէ . նոյնպէս Պօղոս «այն չուզածս որ կ'ընեմ, ես չեմ հապա իմ մէջս եղած մեղքը . . . ուրեմն մտքով Աստուծոյ օրէնքին կը ծառայեմ, մարմնով մեղաց օրէնքին» (Հռովմ. Է. 20—25) . ուրեմն Քրիստոսի հաղորդութեան սահմանը պատա-

*սանել և մատակարարել եկեղեցւոյն յատուկ է, զի հրեշտակ տեառն ամենակալի է, Աստուածային կրակը՝ ունելեօք բռնող քերովբէին տեղն է պատարագիչ մը, (հրապարակային և եղեռնային յանցանքը ուրիշ խնդիր է)։*

---

# ԴԱՍ ԺԶ.

## ՊՍԱԿ ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ

1. — Պսակ ի՞նչ կը նշանակէ. ինչո՞ւ համար խորհուրդ է. Աստուած ի՞նչպէս տնօրինեց։ 2. — Պսակ ի՞նչու կը տրուի եւ կառնուի. պսակի խորհուրդը ի՞նչ յատկութիւններ ունի։ 3. — Քրիստոնէի մը երկու կին ունենալ կ՚ըլլա՞յ. Մովսէսի օրով ի՞նչու մէկէն աւելի կին կունենային. Քրիստոս ո՞րը վաւերացուց։ 4. — արձակման թուղթը ի՛նչ էր։ 5. — Ի՞նչպէս որ ըլլայ խորհուրդ կըլլայ. այս խորհուրդը չի յարգողները ի՛նչ եղան. որո՞նք են։ 6. — Ծնողահամարութիւնը ի՛նչ է։ 7. — Կուսակրօնութիւնը ի՛նչէ։ 8. — Քանի՛ կերպ է։ 9. — Կուսակրօնութեան ի՛նչ ճամբայ բռնել պէտք է։ 10. — Այդ ուխտը ընողներուն ներելի՞ է վերջէն ամուսնանալ։ 11. — Եկեղեցականք ամուսնացեա՞լ պիտի ըլլան թէ կուսակրօն. Պօղոս ինչո՞ւ համար եպիսկոպոսի մը մէկ կին մը ունենալ կը թարգէ. կինը մեռնող եկեղեցականին կրկին ամուսնանալ ներելի՞ է։ 12. — Պօղոսին խօսքէն ի՞նչ կը հասկցուի։ 13. — Առաքեալները կին ունէի՛ն թէ ոչ. հետերնին պտըտող կանայք ի՞նչ էին։

1. — *Պսակ ըսելը՝ շատ անգամ [թագ*

մը կը նշանակէ, և այս թիւը ընելուն հեղի-
նակն ալ Աստուած է, որուն համար պսակ
ամուսնութեան ըսածնիս եկեղեցւոյ եօթը
խորհուրդներուն մէջ է։

Արարչապետը՝ նախ զԱդամ ստեղծեց
որն եղաւ առաջին մարդ և իրմէ առաջ ըս-
տեղծուած անբաններուն իշխան. անոնք բո-
լորն ալ Ադամին աչքին առջեւէն անցան,
բայց անոնց մէջէն բնաւ մէկը իրեն յարմար
չի տեսաւ. երբոր Աստուած՝ իւր կողէն ըս-
տեղծած կինը բերաւ, անմիջապէս մարգա-
րէացաւ թէ «սա ոսկր յոսկերաց իմոց» այն-
պէս թէ «ո՜վ Աստուած, ահա ասիկայ կը
վայելէ ինծի օգնականութեան համար» 'որոյ
վրայ Աստուածային վճիռ դրուեցաւ «Աստ-
ուած զուգեաց մարդ մի մեկնեսցէ» «աճե-
ցէ՛ք և բազմացարուք» «վերջապէս՝ հող էիր և
'ի հող դարձցիս». այս վճիռները առաջին մար-
դուն տրուելուն համար թագաւորներէն ըս-
կսեալ մինչեւ յետին աստիճան մուրացկան-
ներուն վրայ մի և նոյն օրէնքով կը տիրէ ան-
հասարակ, և իւր սկիզբը մարդկային աճու-
մէն կ'առնէ, ուրկէ կ'ուղղուին առնչական
կերպով, ծնողք և զաւակք, թագաւոր՝ և
հպատակ, տէր և ծառայ, հովիւ և հօտ,
և այլն և այլն։

2. — Մարդ մը՝ իշխանի մը և աշխարհի

մը օրինակ է, կ'իշխէ իւր զգայարանքներուն վրայ ազատ կամօք, ուստի իւր փեսայութեան օրը. մանաւանդ աշխարհի մը իշխելուն համար գլուխը պսակ և կամ նարօտ կը դնենք. խորհրդաւորապէս թէ, կապուած էք Աստուածային վճռոյն համեմատ մինչեւ գերեզմանին դուռը, վերջը նարօտը կտրենք թէ, ազատ էք սուրբ անկողնոյ, Աստուծոյ ժողովուրդ պատրաստելու համար։

Պսակի խորհրդոյն մէջ երեք գլխաւոր յատկութիւն կայ. Նախ՝ մարդիկ արու և էգ են, մէկը միւսին պէտք ունի. և երկուքն ալ թէ որ առանց եկեղեցական հրամանի ըլլան, անխղճահար չեն մնար։ Երկրորդ՝ զաւակ ծնելու մէջ մահուան չափ վտանգ կենալը գիտնալով յանձնառու կ'ըլլան տղայաբերութեան; որ ուրիշ բան չէ, եթէ ոչ Աստուածային վճիռ թէ «աճեցէ՛ք և բազմացարուք»։ Երրորդ՝ իրարու այնչափ կօգնեն սուրբ սիրով ամուսնացողները, որ չի չափուիր. իրենց ծնողքը, եղբայրը և ազգականը կը թողնան, իրենց ամուսինը կամ զաւակը կը մտաբերեն. ուրկէ կ'իմանանք Ա. աճումն մարդկային սեռին, Բ. փոխադարձ օգնականութիւն. Գ. ցանկական կրից ազդեցական օգուտ։

3. — Նախնեաց պատճառներէն կրնանք

հետեւցնել թէ, մարդու մը մէկ կին մը սահ-
մանուած է, զայն եւ չի կրնալ արձակելու
պայմանաւ, վասն զի բնական է որ երկու կին
եթէ ըլլայ մարդու մը, այդ սէրը պիտի բաժ-
նուի, որուն համար Աստուած Ադամին կին
մը տուաւ, երկու հատ չստեղծեց թէ որն
ուզէ զայն առնու, կամ երկուքն ալ առնու.
թէեւ Մովսէսին օրով կառնէին, սակայն նախ
անոր մէջ Աստուածային գաղտնիք մը կար,
որով ճիւղահամարութեան ալ թոյլտուութիւն
կ'ըլլար. երկրորդ՝ ժողովրդեան խստասրտու-
թեան համար էր. մանաւանդ Քրիստոս Մով-
սէսի օրով եղած ամուսնութեան կերպը հեր-
քեց, դրախտին մէջ եղած պսակը հաստատեց
ու վաւերացուց «՚ի սկզբանէ ոչ եղեւ այնպէս»
ըսելով, կամ «Աստուած զուգեաց մարդ
մի մեկնեսցէն» կրկնելով (Մատթ. ԺԹ. 6.)։
4. — Մովսէսին արձակման թուղթն ալ
կ'արգիլէ Քրիստոս, միայն պոռնկութեան
պատճառաւ արձկել ցոյց կուտայ. «արձըկ-
ուածը առնողն ալ կը շնայ». այս կէտին մէջ
մեծ գիտելիք կայ. կինը շնացաւ ու էրիկը
զայն արձկեց որ ուրիշի մը պիտի չկրնայ եր-
թալ. իսկ այս մասին շատերը կ'առարկեն թէ
«շնացողը կինն էր, միայն անիկայ այրի պէ-
տի մնայ, էրիկը թող ամուսնանայ», բայց
մտածելու ենք թէ, արդեօք այդ խրատները

կինն ալ ունի՞ թէ ոչ, որ իւր էրիկը արձկէ ուրիշին կնոջը հետ շնութիւն ընելու առեն, անշուշտ պիտի ունենայ, զի երկուքին ալ ըրածին շնութիւն կըսուի. ուրեմն այն առեն հարկ կ'ըլլայ. որ կին մը իւր շնացող էրիկը արձկէ, ինքը ուրիշի մը կնիկ ըլլայ., իսկ էրիկը ուրիշ կին մը չի կրնայ առնուլ, զի այս անգամ շնացողը էրիկն էր և շնացողին բացը մնալ պէտք էր:

Ասոր համար կը պարտին խրատու յանցանք ներելով զիրար չահել, կամ ատկէ կիմացուի թէ, բոլորովին արձկել չկայ, (Ա. Կորնթ. Է. 10.). հաւատացեալը չի կրնար բաժնուիլ, իսկ թերահաւատը ինքն իրեն զատուիլ ուրիշ խնդիր է, այս դժուարութեան համար էր որ ըսին թէ «լաւ է չամուսնանալ» (Մատթ. ԺԹ. 10.). ինչպէս որ Քրիստոսի եկեղեցին մեծ կարեւորութիւն տուած է այս կէտին, թէ որ անհնարին բացառութիւն մը դէմ չելլէ:

5. — Պսակը սուրբ խորհուրդ է, որով ամօթ ու մեղք համարուած գործողութիւն մը համարձակութեան ու առաքինութեան կը վերածուի, ասոր համար է Պօղոսին ըսածը թէ «խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ ի Քրիստոս» (Եփես. Ե. 32.) այսինքն թէ որ Քրիստոսով և եկեղեցւոյն հնազանդ.

դութեամբ ըլլայ, մեծ խորհուրդ է ամուսնանալը. իսկ առանց խորհուրդի զուգաւորութիւնը « ուտէին ըմպէին կանայս առնէին և արանց լինէին » ըսուած պատժոյն արժանաւոր է. օրինաւոր պսակին խորհուրդ չէ ըսելը մեղանչել և ամուսնութիւնը արգիլել է. վասն զի Աստուած դրախտին մէջ օրհնեց մարդը՝ և կինը մեղանչելէն առաջ. Քրիստոս և իւր առաքեալներն ալ վաւերացուցին ։

Նոյն ժամանակէն մինչև Քրիստոս պսակի խորհուրդը շատ անգամ չեղելուն համար Քրիստոս զանոնք մերժեց և դրախտի սկըզբունքը հաստատեց « 'ի սկզբանէ ոչ եղեւ այնպէս » ըսելով. դարձեալ Պօղոս « սուրբ խորհուրդ » կը կոչէ, որով եղած անկողինք սուրբ են, իսկ առանց անոր պիղծ. սուրբ խորհրդով երկու մարմին մէկ ըլլալով դարձեալ Քրիստոսի հետ ալ անդամակից կ'ըլլան ( Ա. Կորն. Զ. 15 ) իսկ այս խորհուրդը ատողները պոռնկութեան զոհ կ'ըլլան առաքելոյն ըսածին պէս. « ետքի ժամանակները մարդիկ պիտի դան, ամուսնանալը պիտի արգիլեն, կերակուրը կերակուրէն պիտի որոշեն », ( Ա. Տիմ. Դ. 3. ) (1) ։

---

(1) Առաջին դարուն մէջ Նոր դարձողներէն

զէրար խառնելով կենցաղական ուժը կ՚ապականեն ։

7. — Հնուց 'ի վեր շատ կուսակրօններ կային. Եղիան և Յովհաննէս Մկրտիչն ալ կուսակրօն էին. Աննա մարգարէն էրիկը մեռնելէն վերջ ութսուն տարի տաճարը սպասեց այրի, որ կուսակրօնութեան ուխտ ըսել է. Նոյնպէս առաքելոց օրով շատեր կային (Ա. Տիմ. Ե. 5. 10—11.)

Յովհաննէս Մկրտիչ մարգարէից լրումը և առաքելոց սկիզբը կուսակրօնութեան մէջ տեսնուեցաւ, ուստի կուսակրօնութիւնը Աստուածային ուխտ մ'է, մանաւորապէս այս ուխտը Քրիստոս ալ կը գովէ, բայց դժուարին կը դատէ. «որ կարողն է տանիլ տարցի» (Մատթ. ԺԹ. 11.). ուստի թէ ամուսնութիւնը և թէ կուսակրօնութիւնը երկուքն ալ Աստուծոյ առջեւ հաճելի են, բայց անոնց մէջ եղած էական կէտերը պահպանելը Պօղոսէն կրնանք սորվիլ. «լաւ է ամուսնանալ քան զջեռնուլ». երկրորդ կերպը «կուզեմ ամեն մարդ ինծի պէս ըլլայ» (Ա. Կորնթ. Է. 6.): «ամուսնացողը աղէկ կ'ընէ չամուսնացողը աւելի աղէկ կ'ընէ» (Նոյն 38.). ամուսնացողը այն ատեն աղէկ կ'ընէ երբ Աստուծոյ ժողովուրդ պատրաստելու և Աստուծոյ համար ապրելու նպատակով, իւր ունեցած զա-

ւակը աւազանէն ծնած ժողովուրդ Աստուծոյ կը ճանչնայ. չէ թէ ցանկութեան արդիւնք. և իւր տանը հաճոյ երեւելէն յառաջ Աստուծոյ հաճոյ երեւնալու կը ջանայ. ասոր մէջ ալ օրէ օր տարուէ տարի դժուարութիւն մտնելուն համար, Պօղոս չամուսնացողը նախապատիւ կը դասէ։

8. — Կուսակրօնութիւնը երկու կերպ է, առանձնակեաց և ընկերական. միայնակեցութիւնը՝ Եղիայի, Յովհաննու և Աննայի պէս՝ անապատներու և վանքերու մէջ կ'ըլլայ, ճգնաւորական կենօք և անչքեղ հագուստներով (Մատթ. Գ. 4. Ղուկ. Բ. 36.) իսկ այս կերպը Աստուածային հրաւէր մ'է. մանաւանդ ընկերականին չափ չէ. զի լրումն օրինաց և մարգարէից Սէր է. այն ալ ընկերական վիճակի մէջ կ'ըլլայ։ Եղիա և Յովհաննէս որչափ ալ որ անապատական էին, դարձեալ ընկերական վիճակի մէջ յարաբերութիւն ունէին։ Նաև Քրիստոնէն վերջն ալ միայնակեաց ճգնաւորներ գտնուեցան անապատներու մէջ, որոնք մեծաւ մասամբ ընկերական վիճակէ ալ քիչ շատ յիշատակութիւն թողուցին թէև. բայց ընտանին կենցաղով մը զԱստուած փառաւորել էր բան թէ սիրել. (զԱստուած գտնելէն յառաջ մինակը դիւրին է ըսած ենք.) ապա հետ մէկ տեղ. մենք զանոնք դարձեալ կը

գոմէնք, որ աշխարհային հալածանքէն թէ որ չի քաշուէին թերեւս իրենց նպատակին չի հասնէին :

Ընկերական վիճակի մէջ եղած կուսա-կրօնութիւնը, եկեղեցականաց յատկացեալ է, որք՝ թէ քաղաքական եւ թէ ընտանեկան յարա-բերութեան պարտք ունին, ինչպէս որ Պօղոս եւ միւս առաքեալներէն շատերը :

Քաղաքական վիճակի մէջ գտնուող կու-սակրօնից այնչափ հաղուստի անչքեղութիւն չի վայելեր. զի սաստելու, խրատելու, յանդի-մանելու իշխանութիւն ունին (Տիտ. Բ. 15.) այս գործողութեանց մէջ առաքինական վե-հանձնութիւն ալ հարկ է, ուստի այս վեր-ջիններունը սքանչելի է եւ դժուար «որ կա-րողն է տանել տարցի» :

9. — Սրբեան բորբոքմանէն եւ պոռնկու-թեան ախտէն յառաջ եկած ցաւին «այս ազգ ոչ ինչիւք ելանէ, այլ պահօք եւ աղօթիւք» կ'ըսէ (Մատթ. ԺԷ. 20.) վասն զի կերակրութէ տեսակ մը որոշ ախտ է, անոր դեղն ալ պա-հեցողութիւն է. որ ուրեմն կուսակրօնից կը պատկանի, սրբեան բորբոքում տուող կերա-կուրներէն խորշիլ, Դանիէլի պէս ընդեղէն ուտել. (Դան. Ա. 8. 12.) ինչպէս որ Անտոն մեծագործն ալ այն կենօք կը վարուէր.. «ուժե-ղանի տարին գինի ցեղեկե պահեցա. կրակ ալ

ւնտարանիչը. ոչ թէ ութսուն տարի ծոմ պահեց, վասն զի անկարելի է, Քրիստոս ալ քառասուն օր պահեց. հապա արեան բորբոքում տուող միսէն ու իւղէն քաշուեցաւ. մինչեւ երեկոյ ծոմ պահել ու երեկոյեան մսեղէն ուտելը արեան բորբոքումը չարգիլեր։

Այս կէտը կուսակրօն եկեղեցականաց համար աւելի յարգել պէտք է. Նախ որ ուխտած են անձերնին Աստուծոյ, այնպէս որ մարդու մը ստացուածքը իրեն է բայց անձը իրեն չէ. պատկեր Աստուած է; «տուք զկայսերն կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ» իրեն եղածէն տասանորդ, ազգային ընկերութեան և եկեղեցւոյ ու դպրոցի տուրք խոստացող ու չի տուողները պատժուեցան ինչպէս որ Անանիան ու Սափիրան. հապա Աստուծոյ եղածը Աստուծոյ տալ ուխտող ու չի տուողները ի՞նչ պիտի ըլլան։

10. — Առաջին դարուն մէջ եկեղեցւոյ հովանաւորութեան տակ շատ ուխտ ընող այրեր ու որբեւայրիներ կային. անոնց մէջէն տարիքնին քիչ եղողները չի դիմացան, ամուսնանալ ուզեցին, բայց Պօղոս անոնց անդամ չըրաւ «լաւ է ամուսնանալ» մինչդեռ աշխարհական էին, հապա կիրքը չարժելով յանդիմանական պատասխանով մը, «դեռահասակ որբեւայրիները մերժէ», Քրիս-

տոսի դէմ կենալով հեշտասիրութեան անձնատուր կ'ըլլան, ամուսնանալ կուզեն, առաջի հաւատքնին մէկ կողմ ձգեցին» (Ա. Տիմ. Ե. 11.) թէ որ ուխտած չըլլային, ամուսնանալով հաւատքնին թողած չէին ըլլար. ուստի «լաւ է ամուսնանալ» ըսած խօսքը ուխտելէն յառաջ է, ուխտելէն վերջն ալ աշխարհական դեռահասներուն ուխտին պարագային կը նայուի, բայց ձեռնադրուելէն վերջ ջեռնու անգամ պիտի չկրնայ ամուսնանալ. ինչպէս որ Պօղոս ինքն ալ յաղթելու ջանաց, չամուսնացաւ. «Ուրիշ օրէնք մը կը տեսնեմ անդամներուս մէջ . . . ո՞վ զիս պիտի ազատէ այս մարմինէն». (Հռովմ. Է. 23.) այսինքն հոգւոյ հակառակ մարմնոյ ցանկութենէն (Նոյն Զ. 19. Գաղ. Ե. 17.)։ (1)

---

(1) Առաջին դարերու մէջ ամեն բան վէճի տակ էր. ամեն ազգէ նոր նոր քրիստոնեայ եղողներ կային, ամեն մէկը զատ զատ գաղափարներ ունէին. ուխտով չամուսնանալը աղէկ ըլլալը գիտցան. իսկ ոմանք ալ նախապաշարուելով ամուսնացող եկեղեցականաց ձեռքէն հաղորդութիւն չէին առներ. ոմանք ալ կին ունեցողը բնաւ եկեղեցական պաշտօն չի կրնար վարել համոզուելով, կամայ և ակամայ կիներնին ձգել սկսան. Յովհան Ոսկեբերան, Գրիգոր Նազիանզեցի և այլն եկեղեցւոյ

11. — Առաքելական եկեղեցին՝ կանուխէն ունէր ամուսնացեալ հայրապետներ ալ. ձանոնք հայրապետ ընդունած էր. Նոյն իսկ Գրիգոր Լուսաւորիչ ամուսնացեալ էր. այսօր եկեղեցին ամուսնացեալ եկեղեցականներ շատ ունի. ամուսնացեալ քահանայք հաղորդութիւն կուտան, սարկաւագք պաշտօն կը վարեն, բայց մտածելու ենք թէ առաքեալը կ'ըսէ «ժամանակը մօտ է». ըսել է երթալով աւելի պիտի մօտենայ, դարձեալ «ժամանակը նեղ է. ամուսնացողը չամուսնացողի պէս է» կամ թէ «կուզեմ որ ամեն մարդ ինծի պէս ըլլայ»։

Պօղոս եպիսկոպոսաց ամուսնութեան վրայօք խորին դիտողութիւն մը կ'ընէ, վասն զի եպիսկոպոսութեան ցանկացողներ շատցան Պօղոս կուզէր որ եպիսկոպոսները կոյս ըլլան, մանաւանդ եկեղեցին ալ եպիսկոպոսներու

վարդապետք՝ այս գաղափարներու դէմ գրած են ; ոմանք զայն մեկնութիւն առնելով խօսքն առաքեալները կը գայթակղեցնեն (Արշաւանէթ՝ պատմ. ԾՁ.) իսկ եկեղեցին ինչպէս որ աւետարանը անկէ առնէ գտներով վաւերացուց մեզի հասար., նոյնպէս նախնեաց գաղափարներէն սուրբ գրոց համաձայն եղածները ալ վաւերացնելով հաստատած է, անտամներուն քանի մը նամակներ գայթակղեցուցչեն. անորին չեն կրնար անցնիլ։

11. — Առաքելական եկեղեցին՝ կանուխէն ունէր ամուսնացեալ հայրապետներ ալ. զանոնք հայրապետ ընդունած էր. Նոյն իսկ Գրիգոր Լուսաւորիչ ամուսնացեալ էր. այսօր եկեղեցին ամուսնացեալ եկեղեցականներ շատ ունի. ամուսնացեալ քահանայք հաղորդութիւն կուտան, սարկաւագք պաշտօն կը վարեն, բայց մոռածելու ենք թէ առաքեալը կ'ըսէ « ժամանակը մօտ է » . ըսել է երթալով աւելի պիտի մօտենար, դարձեալ « ժամանակը նեղ է. ամուսնացողը չամուսնացողի պէս է » կամ թէ « կուզեմ որ ամէն մարդ ինծի պէս ըլլայ » ։

Պօղոս եպիսկոպոսաց ամուսնութեան վրայօք խորին դիտողութիւն մը կ'ընէ, վասն զի եպիսկոպոսութեան ցանկացողներ շատցան Պօղոս կուզէր որ եպիսկոպոսները կոյս ըլլան, մանաւանդ եկեղեցին ալ եպիսկոպոսներու

---

վարդապետոք՝ այս գաղափարներու դէմ գրած են ; ոմանք դային վկայութիւն առնելով խնդրոյ առարկներուն կը գայթակղեցնեն ( Այնուամէջ՝ պատ. ծՋ. ) իսկ եկեղեցին ինչպէս որ առեւտրական մըկէ աւելի գանձերով փառերացուց մեղի հետ, նոյնպէս նախնեաց գաղափարներէն ուրիշ գրոց համաձայն եղածներն ալ վաւերացնելով հաստատած է, մնացածները քանի մը ռամիկներ գայթակղեցընելէն անդին չեն կրնար անցնիլ ։

պէտքութիւն ունէր, անոր նկատմամբ գրեց թէ «եպիսկոպոսիմը մէկ կնկան էրիկ ըլլալ պէտք է». (Ա. Տիմ. Գ. 2.) եթէ այս խօսքը ուրանց պէտք սխալ մեկնենք, «եպիսկոպոսները մէկ կին, հասարակութեան ալ քանի հատ ըլլայ հոգ չէ» ըսել կ'ըլլայ։

Առ հասարակ կին մը ունենալը Քրիստոսէն հաստատուեցաւ, և առաքեալներէն ալ վաւերացած էր, այն միջոցին Պօղոս կուսակրօնութեան վրայօք մեծ ջանքեր ունէր, անհատապէս եպիսկոպոս չէր ըլլար, «ամեն մարդու վրայ ձեռք մի դներ» կը գրէ Տիմոթէոս եպիսկոպոսին (Ա. Տիմ. Ե. 22.) հաւատացեալ հասարակութիւնն ալ գիտէր որ մէկ կնկան էրիկ պիտի ըլլան, անգամ մ'ալ ինչ հարկ կար եպիսկոպոսին ամուսնութեան վրայօք մասնաւոր դիտողութիւն ընել. ուստի յայտնի է և պարզ է որ եկեղեցականներ երկու պսակ չի վայելեր, վասն զի Պօղոսի օրով եպիսկոպոսութիւնը նոր կը հաստատուէր. քանի հարկին գտնել մէկ անգամ մը ամուսնացած ըլլայ, կամ կինը մեռնելէն վերջ չամուսնացողներ յանձնել ուզեր, որ կուսակրօնութեան ախտը քսել է, վասն զի մէկ կնկան էրիկ պիտի ըլլան, խօսքը ամբողջ եկեղեցականներ «հասարակաց հայր» ըսել են. Անոնցմէ ալ հասարակաց մայր կը համբերեն։ անոր

համար եկեղեցականը ուրիշին կինը չի կրնար առնուլ, ուրիշն ալ եկեղեցականին կինը ; եկեղեցական մը պիտի չի կրնայ երկու անգամ ամուսնանալ, որ կոյս մնալու յանձնառու ըսել է :

12. — Բանի մը համար « երկուքը շատ է » որ ըսես կը հիմնուի թէ մէկը բաւական է, մէկին վրայ ալ որ դիտողութիւն ըլլուի « բնաւ և ոչ » ըսել է . ուրեմն Պօղոս եպիսկոպոսներուն չամուսնանալ կը խորհի եղեր , իսկ սարկաւագներուն և էրեցներուն մէկ անգամ միայն , վասն զի անոնց կնիկներուն ալ խրատ կը խօսի իսկ եպիսկոպոսաց համար լռու կանգնի (Ա., Տիմ. Գ. 11.) ինչպէս որ շատ մը գաղափարներէն ալ արեւին լոյսին պէս կերեւնան . « կուզէի որ ամէն մարդ ինծի պէս ըլլար » (Ա. Կորնթ. Է. 7.) . կապո՞ւած ես կնկան ; մի արձակուիր . կնիկէ արձակուա՞ծ ես . մի փնտռեր կնիկ » (Նոյն 27.) դարձեալ « ժամանակը կարճըցած է . . . կուզեմ որ անհոգ ըլլաք , զի չամուսնացողը Աստուծոյ հաճոյ ըլլալ կուզէ . իսկ ամուսնացողը իւր կնկանը (Նոյն 29—33.) ինչպէս որ առաքեալներէն ոմանք կոյս , ոմանք բոլորովին ունեցածնին թողելով Քրիստոսի խօսքին հետեւեցան կուսակրօնութեան մէջ ; որոնք պիտի վարձատրուին (Յայտն. ԺԴ. 4.)

13. — Շատ հաւանական է թէ Պետրոսին ու Յակոբոսին հետերնին պտըտցուցածները իրենց կիները չէին, հապա եկեղեցւոյ հովանաւորութեան տակ եղողներէն վաթսուն տարեկան կիներ, սպասաւորութեան համար. ան ալ ոչ թէ ամեն ատեն, վասն զի թէ որ կին անգամ ունենային բնականապէս պէտք չէ կրնային պտըտցնել հալածանաց մէջ. և չունենալնին պարզապէս յայտնի է «մեք թողաք զամենայն և եկաք զկնի քո» (Մատթ. ԺԹ. 27.) առ ժամանակեայ թողլու համար այս խօսքը չ'ըսուիր, որովհետեւ անոր թողուլ չեն ըսեր. Նաեւս Քրիստոսի հետ ալ երբեմն կնիկներ կը պտըտէին իրենց ստացուածքովը անոր ծառայութիւններ կ'ընէին, (Մարկ. ԺԵ. 40. Ղուկ. Ը. 3.) միթէ Քրիստոսի՞ն էին. քաւ լիցի. ուրեմն ատանկները Քրիստոսի և իւր աշակերտաց հետ պտըտիլ վարժուած էին, դարձեալ կը պտըտէին. Պօղոս ալ Կորնթացւոց վրայ կը պարծենայ թէ հետս սպասաւոր կին մ՚ալ պտըտցնելով ձեզի ծանրաբեռնութիւն չեմ տար, թէ որ տամ իրաւունքս է, (Ա. Կորնթ. Թ. 5.) արժանի է մշակն վարձու իւրում. ինչպէս որ ըսած կինը յայտնի է թէ կինը չէ, այլ որբեւարի Աննա մարգարէին պէս «Քրիստոսով քոյր եղող կին մը». մտածելու է, քոյր և կին ո՞րչափ

տարբեր են ։ Պօղոս Քրիստոսով քոյր եղող կնիկներէ շատ անգամ ծառայութիւն ընդունած է (Հռով. ԺԶ. 1.) իսկ Կորնթացւոց ալ վրայ ծանրաբեռնութիւն ըրած չէ ։

Աստուծոյ տան աղէկ վերակացու ըլլալ ուզողը ինքը տուն ունենալու չէ, այս պատճառաւ Քրիստոսի եկեղեցին եկեղեցականները կապած է Քրիստոսով. եպիսկոպոսները, վարդապետները կոյս մնալու. քահանայներ և սարկաւագները միոյ կնոջ այր ըլլալով երկրորդ ամուսնութիւն չի փնտռելու. քանի որ կապած է եկեղեցին, ուրեմն կապուած պիտի մնայ Քրիստոսով, առոր ուրիշ ճար չկայ. « ով որ կապէք կապուած ըլլայ ». հարսը փեսային հետ պսակուած է մարդ չի կրնար մեկնել, եկեղեցին ալ Քրիստոսի հետ պսակուած է մէկը չի կրնար արձկել ։



# ԴԱՍ ԻԷ.

## ԽՈՐՀ. ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ ԿԱՄ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ

1. Ձեռնադրութիւնը խորհո՞ւրդ է. ի՞նչպէս եւ ե՞րբ տնօրինուեցաւ։ 2. — Ինչո՞ւ համար այնպէս կարգադրեց Աստուած։ 3. — Ի՞նչէն յայտնի է խորհուրդ ըլլալը. արտաքին նիւթը ո՞րն է. այս նիւթին մէջ ուրիշ ի՞նչ պէտք է. Ներքին շնորհքը ո՞րն է. Քրիստոսի հեղինակութիւնը կա՞յ։ 4. — Առանց յաջորդութեան կըլլա՞յ։ 5. — Քանի՞ աստիճան կայ. ի՞նչու համար է։ 6. — Առանց յաջորդութեան եղած ձեռնադրութիւնը ի՞նչ է։ 7. — Ձեռնադրութեան իշխանութիւնը որի՞ն է. տաճարը ո՞վ կ'օծէ։ 8 — Ձեռնադրեալք պէտք ամուսնանա՞ն։

*1. — Եկեղեցւոյ խորհուրդներուն մէջ, ձեռնադրութիւնը՝ գրեթէ առաջին աստիճանի մէջ տեղ բռնած է, սակայն Աստուծային տնօրինական կարգադրութեան համեմատ մարդս նախ մօրմէն և ապա աւազանէն ծնելով աստիճանաբար կ'ենթարկուի. ուրիշ խոր-*

հուրդներուն, անոր համար մկրտութենէն կսկսինք, եթէ ոչ Ադամ առաջին անգամ Աստուծմէն ձեռնադրուեցաւ. ուրիշ խօսքով. դարձեալ եկեղեցւոյ սկզբունքը նոյնն է, վասն զի Նախապէս Ադամ սուրբ հոգւով մկրտուեցաւ « փչեաց շունչ կենդանի » կնքըուեցաւ Աստուածային ձեռնադրութեամբ. ամուսնացաւ երկնային պսակի տակ, ապաշխարութենէն ու հաղորդութենէն զուրկ մնալով, բանտին մէջ Քրիստոսի սպասեց ( Ա. Պետ. Գ. 19. ) անոր սերունդէն ոմանք որոշուեցան ձեռնադրեալ և օծեալ նահապետներ, մարգարէներ, քահանայներ, թագաւորներ, հոգեւոր և մարմնաւոր իշխանութիւն և հովուական առաջնորդութիւն վարելու համար։ Աստուած ինքը ինչ որ պիտի ընէր մարդոց, հրաշալեաց տակ առաւ. մարդիկ ալ առ Աստուած ինչ պաշտօն որ պիտի մատուցանէին, բնութեան ու խղճի մօտ կարգադրեց. որ սքանչելապէս 'ի գործ կը դրուի աշխարհիս ստեղծմանէն մինչեւ ցայսօր։

2. — Նախախնամութիւնը անբան արարածներու մէջ անգամ, կարգադրութիւն մը դրած է, կը նայինք որ հարիւրաւոր կռունկներ երկինքին երեսը մէկ կռունկի ետեւ դիզուած կերթեն պար առեալ. պար մը մեղուներ մէկ մեղուի մը գլուխ ժողվելով զօրագնդի

մը նմանութիւն կը կազմեն . ամբողջ հօտ մը ոչխարներ հովուի մը ձայնին կամ անոր հնչեցուցած փողին կողմը կը հակին և անոր գտնուած տեղւոյն կողմը դառնալով կարածին ։ Այս կարգադրութիւնը՝ անբան արարածներու վրայ տեսնելով կ՚սքանչանանք , հապա բանական արարածի մը ո՞րչափ հարկաւոր է եղեր . ինչպէս որ իրօք ալ կզգանք թէ , երբ անհատի մը ձեռք, ոտք և այլն անդամներ բարեգործութեան մէջ ըլլայ, ո՞րչափ խղճի հանդարտութիւն է ։

Յայտնի ճշմարտութիւն է որ քաղաքականութեան մէջ մարմնաւորի մասին այդ կարգադրութիւնները պէտք են , հապա ո՞րչափ հոգեւորի մասին, որով երեւելեօք աներեւոյթ մը պիտի գաղափարենք . Աստուած հոգի է, հոգեւոր երկրպագութիւն կուզէ , մեր հոգիներն ալ մարմնոյ մէջ են , բնութեան ու խելքի մօտ կարգադրութեամբ երկրի վրայ երկնային շարժման պէտք ունիմք, ինչպէս որ Պօղոս կանանց բացագլուխ աղօթելը անպատեհ սեպած է բնութենէն փոխ առնելով, « բնութիւնն ալ ձեզի չի՞ սորվեցներ » կըսէ , ( Ա. Կորնթ. ԺԱ. 13. ) . նոյնպէս ալ Քրիստոս բնութենէն առնելով « ես եմ հովիւն քաջ » կ՚ըսէ ( Յովհ. Ժ. 11. ) Պետրոսին « արածե՛ա զոչխարհս իմ» ( Յովհ. ԻԱ. 2. ) ինչ-

պէս որ նախապէս ալ Մովսէս ու Դաւիթ հովուութեան մէջ ընտրուեցան (Ելից. Գ. 1. Ա. Թագ. ԺԶ. 19.) Քրիստոս ինքը առաջին անգամ հովիւներուն յայտնուեցաւ, (Ղուկ. Բ. 8.) միով բանիւ, հովիւներէն մարգարէներ ու որսորդներէն առաքեալներ ընտրեց. մարգարէներ առաքեալ ալ են, զի Աստուծմէ ղրկուեցան. և առաքեալներ մարգարէ ալ են, վասն զի առաքելութեան մէջ շատ անգամ մարգարէացան ալ ետքի ժամանակին համար. ուրիշ խօսքով ժողովուրդը խրատել ու համոզելու համար որսորդներ, հոգեւոր պաշտօն վարելու համար հովիւներ են. անոր համար Քրիստոս բնութեան մէջէն հովուութիւնը կ'որոշէ իրեն և իրեններուն։

3. — Ձեռնադրութիւնը՝ Աստուածային սուրբ խորհուրդ է, որովհետեւ իր մէջը ունի [illegible], [illegible] Քրիստոսի հեղինակութիւնը։ Արտաքին ձեւը յայտնի է «ձեռնադրեցին զերիցունս աղօթս արարեալ համնդերձ պահօք» (Գործք. ԺԴ. 22.) «առնուին զսուրբ հոգին ձեռնադրութեամբ» (Գործք. Ը. 17.) որուն ձեւը ձեռք դնելն է։

Անոր արտաքին ձեւին մէջ օծումն ալ պէտք է, վասն զի ընտրեալները կ'օծուէին, Ահարոն, Դաւիթ և բոլոր մարգարէք. թէեւ քրիստոնեայք արդէն օծուած կըլլան,

Քրիստոսի հեղինակութեան մասին ձեռք դրած ըլլալը գրուած չէ, բայց մէկը չի կրնար ուրանալ Քրիստոսի ձեռնադրութեան հեղինակութիւնը. ձեռք ալ դրած ըլլալու է վերնատան մէջ, զի հաղորդութիւն պիտի մատակարարէին. «զայս արարէք» որն յարութենէն վերջ վաւերացուց. «առէք հոգի սուրբ. և որոց ներէք ներուած է» (Յովհ. Ի. 22.) ուրով ձեռնադրութեամբ մասնաւոր մարդիկ իշխանութիւն առին կապելու և արձակելու, հասարակօրէն մարդիկ Ադամային մեղքէն կը սրբուին. օծութեան միջոցաւ սուրբ հոգին կառնուն. Քրիստոսի մարմինը կը ճաշակեն. Աստուածային խորհուրդներուն հազարապետներ կ՚ըլլան (Ա. Կորնթ. Դ. 1.) հաշտութեան պաշտօն կ՚առնուն. (Բ. Կորնթ. Ե. 18.). Աստուծոյ խօսքը ձեռքերնին կը շօշափեն (Ա. Յովհ. Ա. 1.) ալ ի՞նչ պէտք ըլլար որ սուրբ խորհուրդ ըլլար ձեռնադրութիւնը ։

4. — Ձեռնադրութիւնը՝ յաջորդական որ չ՚ըլլայ ձեռնադրութիւն չէ և կատարած պաշտօնն ալ խորհուրդ չէ ։ Առաքելոց մէջէն յաջորդական ձեռնադրութիւնը չի պակսեց (Գործք. ԺԴ. 22. Բ. Տիմ. Բ. 2. Տիտ. Ա. 5.) առաքելական յաջորդութեամբ՝ ձեռնադրութիւնը ծայրահաս եղած չէ (1)։

(1) Մաս մը քրիստոնէից բռնած ճամբան կը

5. — Ձեռնադրութեան մէջ եօթը կարգ կամ աստիճան կայ սուրբ գրոց համեմատ, որ երթալով կը մեծնայ. Ա. դռնապանու.

---

վկայ է որ ձեռնադրութեան ծայրը կորուսած են. խօսքով ձեռնադրութիւն կը յարգեն, գործքով զայն կ'ոչնչացնեն, ինչպէս որ յայտնի է. Պօղոսին անառակ Կորնթացւոյ մը պատժուելուն համար գըրածը վկայութիւն առնելով, որ կըսէ «ամենքդ մէկ տեղ ժողովեցէք» (Ա. Կորնթ. Ե. 4.). կը հրատարակեն թէ «կապել արձակելու մասին քահանային ունեցած իշխանութիւնը մկրտուած անդամներն ալ ունին» (տես Այնուամէթ 140 երես) և ընդ սմին Երէց յունարէն իխթիյար նշանակութեամբ մկրտեալ անդամներ իրենց համար երէցներ կրնան ընտրել ու ձեռնադրել, ու միւս օրն ալ ամսականը կտրելով թող տալ (տես Այնուամէթ 159 երես). որ ըսել է առաքելականը չի մնաց: Գալով որ մէկտեղ ժողովիլ ամեն ատեն պէտք է, կառավարութիւններն ալ քաղաքական գործերու համար շատ մարդիկ կը կապեն ու կարձըկեն, անո՞նց ալ եկեղեցի ըսենք. թէ որ այդպէս է եկեղեցւոյ անդամք սուրբ ըլլալով եկեղեցւոյ պաշտօն ալ պիտի կրնան վարել. ի՞նչ հարկ կար, մեղք չէ՞ր Կորխին ու իրեններուն որ պատժուեցան (Թուոց. ԺԶ. 1—3.) կամ Քրիստոս եկեղեցին ժողովրդէն որոշելու համար. այն աւելորդ խօսքը ի՞նչու խօսեցաւ «թէ որ ձեզի չի լսէ եկեղեցւոյն ըսէք» Մատթ. ԺԸ. 16.)

Կամ առաքեալները մկրտութեան ձեռնադրու-

ամբողջութիւնը կուզէ, գլուխ, ձեռք, ոտք. անոր համար եկեղեցւոյ պաշտօնեայք իրենց աստիճանները ունին. քահանայութիւնն է գլուխ և սարկաւագութիւնն ալ ձեռք, որոնք սեղանին սպասաւորութիւն ընելու համար կը ձեռնադրուին. ոչ թէ եկեղեցւոյ խորհուրդները կատարելու համար (Գործք. Զ. 3.) իբր հրեշտակ. իսկ քահանայութիւնն է իբրև հրեշտակապետութիւն, ինչպէս որ անոնք ալ իրենց աստիճաններն ունին, Սերովբէք և Քերովբէք, հրեշտակք և հրեշտակապետք, Գաբրիէլ և Միքայէլ գլուխ հրեշտակաց. «Ես եմ Գաբրիէլ որ կամ յառաջի Աստուծոյ» (Ղուկ. Ա. 19.).

6. — Նոր օրինաց ձեռնադրութիւնը Քրիստոսէն սկսեալ կ'արմատանայ յաջորդական կերպով պատուաստէ պատուաստ, թէ որ այնպէս չըլլայ ձեռնադրութիւն ըսել չի ըլլար, զի իշխանութիւն չունի ընելու, այլ կեղծ և անհիմ գործողութիւն մը ըլլալուն համար, Քրիստոսի եկեղեցի ըսել չըլլար: հապա «Տէր, Տէր» կանչող խումբ մը. (Մատթ. Է. 22.) և իրենց պատուաստը Քրիստոսէն առած չըլլալնուն համար «ոչ գիտեմ զձեզ» պիտի ըսէ։

Այս պատուաստը նախ տանք և մեկնենք առնու, առանց մէկ մարմնոյ մէջ մէկ հոգի

բնակելով մէկ գլուխ եկեղեցւոյ հանդիսացան « հա՛յր միացուր զասոնք ինչպէս որ մենք մի ենք » (Յովհ. ԺԷ. 21.) անկէ Մատաթեան , վերջը մանաւորապէս Պօղոս , անոնցմէ տարածուեցաւ անծայրահատ կերպով :

7. — Ձեռնադրութիւնը եկեղեցւոյ գլուխէն սկսելուն համար եպիսկոպոսին է , ոչ թէ եկեղեցւոյ անդամներուն , եպիսկոպոս մը քահանայ , վարդապետ կրնայ ձեռնադրել , թէեւ եպիսկոպոս ալ կրնայ ձեռնադրել պէտք էր սակայն ասոր մէջ բնական կարգ մը մտաւ. այնպէս որ ձեռնադրող եպիսկոպոսը ձեռնադրեալ եպիսկոպոսին հրամայողը եղաւ ; որուն վրայ բնականապէս « Պետ » մանիկը աւելցաւ. ինչպէս որ Պօղոս եպիսկոպոս կը ձեռնադրէ զՏիմէթէոս և անոր կը հրամայէ շատ բաներու համար. որ ըսել է Տիմէթէոսի և Տիտոսի նկատմամբ Պօղոս եպիսկոպոսապետ և կամ քահանայապետ է Քրիստոսի եկեղեցին առաքելական ուղղափառ և կաթողիկէ ըլլալուն համար եկեղեցւոյ գլխաւորներուն Կաթողիկոս կամ Քահանայապետ և կամ Եպիսկոպոսապետ կըսենք , որ եպիսկոպոս ձեռնադրելու իշխանութիւնը անոնց է :

Տուն Աստուծոյ կազմել տան գլխաւոր վերակացուէն կը պատկանի, ըստ այսմ եպիսկոպոսներուն կը վերաբերի նիւթական եկե-

ղեցի հիմնարկելու օծելու իշխանութիւնն ալ․ եթէ ոչ եպիսկոպոսապետ, եպիսկոպոս, քահանայ, առ հասարակ քահանայութիւն ըսել են․ միրոնութեան, դրոշմի, հաղորդութեան, պսակի և այլն խորհուրդներու մէջ քահանայական կարգով կը մատուցանեն իրենց պաշտօնը, և առ հասարակ Նոր ուխտի քահանայներ են․ ազգ սուրբ և քահանայութիւն հոգեւոր է, (Ա. Պետ. Բ. 5—9.) սուրբ գրոց մէջ եպիսկոպոս և երէց երբեմն համանշան գործածուած են (Տիտ. Ա. 5.) որ քահանայ և քահանայապետ երբեմն համապատշաճ են ։

8. — Եպիսկոպոսք և վարդապետք յատկապէս Աստուծոյ տան ծառայելու ուխտով պիտի ձեռնադրուին, անոր համար կոյս մնալու են, ինչպէս որ Պօղոս անոնց ամուսնութեան վրայօք մասնաւոր դիտողութիւն ըրած է, (Տե. Գո. ԻԶ. 11—12.) խոստովանահարք Աստուծոյ տանը հետ մէկտեղ քաղաքական ընտանեաց հետ ալ յարաբերութիւն ունենալնուն համար, մէկ անգամ ամուսնացեալ, ընտանեաց և զաւակի տէր և այն կենաց մէջ փորձուած և փորձառուներէն կ՚ընտրուին (Ա. Տիմ. Գ. 2.) [1] ։

---

[1] Տեղ տեղ, անկիւն անկիւն երբեմն ապրելու միջոց ըլլալու համար ազէտ եկեղեցականներ ձեռնադրելու թոյլատուութիւն կ՚ըլլան, անալ ինչ-

Ջեռնադրեալ մը եկեղեցւոյ այգեգործ մ՚ է, պէտք է՝ այգին աղէկ խնամել գիտնայ։ Քրիստոս ինքը եկաւ ծանրաբեռնեալները թեթեւցնելու և խեղճներուն ալ ըրկեց այն պատգամով թէ «որպէս առաքեաց զիս Հայր և ես առաքեմ զձեզ»․ ըրկուածները կրկին ծանրաբեռնութիւն տալու չեն․ և կամ թէ եկեղեցականութիւնը հովուութիւն մ՚է, խեղճ ոչխարին նայելու չէ թէ իւր ցաւէն ընկղմեալ է գետին, հապա անոր բարոյական վէրքը գտնելու է, ըղեղին մէջն է՞ թէ կեղակին թէ ներսիդին է․ ուրեմն մենք մինակ ննջեցեալ թաղելու, և հիւանդին վրայ «փարատեա՛» ըսելու և կամ երախայ մկրտելու համար ընտրելու չենք մեր եկեղեցականները, հապա օձի պէս խորագէտ և աղաւնիի պէս միամիտներէն որ լոկ խորագէտ չըլլան իբր նենգամիտ, որպէս զի Աստուածային ներշնչութեանց դէմ պատճառներ

---

պէս որ առաջուց չէր կրնար իւր ատրուառը ճաթել, ձեռնադրութեան որ դիւրին ճար է, այս անգամ քիչ ալ խոստովանութեան մէջ կողմէն, ժողովուրդին անհոգութիւնը միւս կողմէն, [illegible] երկու կարուկ բերաններ հանդիսանալով խեղճին կեանքը և խղճին հանդարտութիւնը պիտի առնեն, յետին չար քան կառաւարին դիրքայ, և կրկին ծանրաբեռնութիւն.

*տալու չի համարձակիլն , և ոչ ալ լռել միամիտ որ յիմարութիւն է ։*



## ԴԱՍ ԻԸ.

### ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՀԻՒԱՆԴԱՑ

1. — Այցելութիւն հիւանդաց ի՞նչ է ։ 2. — Իւղ՞ով թէ առանց իւղի ։ 3. — Իւղին խօսքը կընենք · առանց գործողութեան անվաւեր չի՞ մնար ։ 4. — Առաքելոց ըրածը ի՞նչ տեսակ իւղ էր ։ 5. — Հայաստանեայց եկեղեցին իւղ ունի՞ ։ 6. — Հիւանդաց օծման նպատակը ի՞նչ է · այս գործողութիւնը միայն մէ՞կ անգամ թէ շատ անգամ կըրնայ կատարուիլ հիւանդի մը վրայ · ի՞նչպէս կը կատարուի ։ 7. — Ի՞նչու նշխար սահմանուած է ։ 8. — Միտք դնելու համար քանի՞ պարագայ ունի այս խորհուրդը ։ 9. — Միջոցը ի՞նչ է · ասոր միջոցը քանի՞ տեսակ է ։ 10. — Եկեղեցականները մեռնելէն վերջ ի՞նչու կ'օծեն ։ 11. — Ննջեցելոց թաղման կարգ ի՞նչու կը կատարենք ։

*1. — Այցելութիւն կամ օծումն հիւանդաց , այս եօթնեորդը խորհուրդը հնուց ալ կար , Քրիստոսով վաւերացաւ և առա-*

քերը ձեռքով 'ի գործ դրուեցաւ։ Եղիսէ մարգարէին օրով շատ բորոտներ կային ա-նոնց մէջէն Նէեման ասորին սրբուեցաւ. (Ղուկ. Դ. 27.) « Մովսէսին հրամայած պա-տարագը մատուցիր » (Մատթ. Ը. 4.) որ ըսել է հիւանդաց ու եկեղեցականաց մէջ կրօնական գործողութիւն մ'է. Քրիստոսէն պատուիրուած և առաքեալներէն գործած-ուած է. պաշտօնեան եկեղեցին է. արտա-քին ձեւ, և ներքին առողջական ազդեցու-թիւն ունենալուն համար Աստուածային սուրբ խորհուրդ է (1)։

(1) Ոմանք սահմանէն և փախնանէն հեռա-նալով, նպատակին հակառակը կը գործեն. ոմանք ալ կուրանան այս խորհուրդը, իբր թէ սուրբ գրոց մէջ ատանկ գրուածք մը չի կենայ. կամ թէ Յակոբոսին ըսածը Երուսաղէմ չերթ ըլլալուն համար բժշկական օրէնքով հիւանդները օծել ըլլայ։ Այսպէս ըսելը յայտնի խարդախութիւն է (Այնուատէթլէր երես 157.)։ « Սուրբ գրոց մէջ չ'կայ » կ'ըսեն, արեւի պէս կը փայլի (Մարկ. Զ. 13. Յակոբ Ե. 14.)։

Առաջինները զհայաստանեայց եկեղեցին մե-ղադրելու համար, « ամեն մէկը տեսակ մը կ'ըսեն՝ դաւանածնին Այլաճդակ իրեղ խորհուրդ մ' է » կը-սեն (Հ. Յ. Գաթրճեանի հիմնական տարբերու-թիւն. նաեւ Իւմի Իլահի ՈԿԲ.)։ Վերջիններն ալ իրենք զիրենք արդարացնելու համար « հայոց ե-կեղեցին խորհուրդ կը դաւանի ու չի կատարեր

2. — Առանց իւղի հիւանդաց օծումը կատարուիլ կարելի է, ըլլայ ալ կ'ըլլայ, չըլլայ ալ կ'ըլլայ սորվեցուցած է Քրիստոս։ Հիւանդաց ու եկեղեցականաց մէջտեղը կրօ-

---

կրսեն։ Քրիստոս այս գործողութիւնը կատարեց, առաքեալք հետեւեցան. բայց իւր պարզ նպատակը և վախճանը ունի։

Թէ որ Քրիստոս և առաքեալք, տաք երկիրներու մէջ պտըտելնուն համար բժշկական օրէնքով կ'ընէին ոչ աւետարանիչք գրելու էր և ոչ ալ Յակովբոս կրկնելու էր, վասն զի իրեն գրածը ընդհանուր եկեղեցեաց էր, զով տեղեր ալ քրիստոնեաներ կային և պիտի կենային հարկաւ և գըրածն ալ առժամանակեայ բան մը չէր. մանաւանդ որ եկեղեցւոյ երէցներ գալ օծելու ի՞նչ հարկ կար, երէցը բժիշկ ալ չըլլար. բժշկական գործողութեանց մէջ մեղաց ներումն ալ հարկ չկայ գրել «Թէ որ մեղք ալ ունի պիտի ներուի». գլխաւորաբար, Թէ որ այդ հիւանդաց օծումը բժշկական հանրածանօթ բան մը էր ու ժողովուրդն ալ այնպէս գաղափարած էր, առաքելոց օծման հըրաշական ի՞նչ կարեւորութիւնն պիտի տային, և Քրիստոսի ինչու պիտի դիմէին. իւղով իրենք իրենց ալ կ'օծուէին, անոր մէջի կրօնական ազդեցութիւնը ի՞նչ պիտի ըլլար։

Ինչպէս որ Քրիստոս և առաքեալք ամեն բանի մէջ մէյմէկ միջոց կը գործածէին Աստուածային տնօրինութեան համեմատ, հիւանդաց օծումին ալ միջոց էր առողջութեան ոչ Թէ միջոց չընչոյ աւարտման։

նման գործողութիւն ու ներքին ազդեցութիւն ունենալուն համար խորհուրդ է, իսկ Քրիստոս և առաքեալք առանց իւղի ալ այդ գործողութիւնը կատարելուն համար, առանց իւղի ալ կարելի է. ինչպէս որ Յայրոսին աղջիկը մեռած էր, առանց օծման յարոյց, պրօպատիկէ աւազանին քովի անդամալոյծը առողջացուց առանց օծման, և պատուիրեց որ ալ չի մեղանչէ. Նոյնպէս առաքեալք տաճարին դռնէն ներս մտած առեննին, ճամբան գնացած ժամանակնին շատ հիւանդներ քալեցուցին առանց օծման, շատ անգամ ալ օծած ըլլալնին յայտնի է։

3. — Մկրտութեան աղօթքը կարդալ ու ջրով չի մկրտելը չըլլար, վասն զի անոր փախճանը ներքին մաքրութիւն է, դրսէն ալ նիւթը կենալ հրամայուած է. Նոյնպէս մինակ մտքէ զղջալով չըլլար, հապա դրսէն խոստովանելու է, որովհետև Աստուածային տնօրէնութիւն է, ուստի յայտ է որ երբեմն խորհուրդներ խօսքով անվաւեր են, բայց այս վերջինը աղօթքով վաւերական է. Ինչպէս որ Յակոբոս ըսած է «հաւատքով եղած աղօթքը հիւանդը պիտի առողջացունէ և մեղքերն ալ պիտի ներուի». հոս իւղը թողլով, զօրութիւնը աղօթքին կուտայ, որ ըսել է թէ հիւանդաց այցելութիւնը միւս

վեց խորհուրդներուն բովանդակութիւնը և վերջաբանութիւնն է, անոր յառաջաբանին մէջ՝ այսինքն մկրտութեամբ և դրոշմով ամեն քրիստոնեայք արդէն օծեալներ են ( Ա. Յովհ. Բ. 20—27. ) Նաեւ աղօթքն ալ խաչ աւետարան եւայլն արարողական գործածութիւն ունի իր հետ։

4. — Առաքելոց գործածած իւղը Յակովբոսին ըսածին համեմատ վաւերական է, սակայն հրահանգ մը չի տալուն համար կերպով մը հնուց 'ի վեր վաւերացեալ իւղը կիմացուի որ է ՄԻՒՌՈՆ. վասն զի միւռոնը․ Աստուծմէն իր հրահանգը ունէր որ միայն եկեղեցւոյ գլուխ եղողները կրնային եփել, զանազան ծաղիկներու բաղադրութեամբ, ուրկէ կ'առնու միւռոն անունը, սակայն Յակովբոս ( օծման իւղ կամ միւռոնը ) չ'որոշէր, ինչպէս որ հինէն հրահանգը տրուած ըլլալուն «իւղ» չէր ըսուէր անորոշապէս, հապա որոշ կերպով « Օծման սուրբ իւղը » կըսուէր, երբ «միւռոն» իսկ Յակովբոս առանց որոշելու «իւղ» կըսէ։ Ասոր հետ մէկտեղ չենք ալ կրնար ըսել թէ բոլորովին անորոշ է, որովհետեւ հնուց 'ի վեր հիւանդաց ու եկեղեցականաց մէջ կրօնական գործածութիւն մը կայ, Քրիստոս իւղով մը վաւերացուց ( Մարկ. Զ. 13. ) ուրկէ կ'իմացուի թէ, Յակովբոսին ըսածը

Քրիստոսին վաւերացուցած իւղն ըլլալու է, և ըստ այսմ իւր վախճանը զատ ըլլալուն համար Սրբալոյս միւռոնէն տարբեր ըլլալ պէտք է, ատոր համար Յակովբոս անորոշ կը խօսի։

Քանի որ հրահանգ չունի, իւղը իւր անունէն առնելով Դաւիթին ըսածին համեմատ «իւղ կովուց և կաթն մաքեաց» անարատ իւղ ալ կը հասկցուի։

Գիշերաժամու աղօթից մէջ օծման վերաբերեալ գիրքեր և աւետարաններ կան, որուն մէջ Քրիստոսի՝ Սամարացւոյն ըսած առակով կը յիշուի թէ «ճամբուն վրայ ինկած վիրաւորին ձէթ ու գինի աւանդեց» ատոր ալ նկատմամբ յատկապէս միւռոնէն տարբեր ձիւթաիւղ կը հասկցուի. որ ըսել է եկեղեցանակաց մասնաւոր աղօթիւք կրնայ կատարուիլ. և այս վերջինը ամեն քահանայ և վարդապետ կատարելու իրաւունք ունենալ կերեւնայ։

5. — Հայաստանեայց առաքելական Ս. եկեղեցին այդ բոլոր շփոտութիւնները իւր մէջէն փարատած է ազատամտօրէն. «բժշկական օրէնք է» չի ըսեր, Աստուծոյ Տնօրէնութեան դէմ չի մեղանչելու համար, «հոգին աւանդելիք ժամուն պիտի տրուի» չըսեր, անոր նպատակէն ու վախճանէն շատ հեռի

չի մնալու համար. ոչ այսպէս և ոչ այնպէս, հապա Աստուածային միջին սահմանով ամբողջապէս կը կատարէ. նախ կը մեռանուինք որով հասարակօրէն օծեալ ենք, որ միւռոնը և ձիթաիւղը ունինք ըսել է, երկրորդ Աւագ հինգշաբթի ոտնլուայի ատեն, անարատ իւղ մը կ'օրհնենք վարդապետական խորհրդով 'ի նշան առողջութեան հանուր քրիստոնէից. զի այն օրը Քրիստոս եօթը խորհուրդը ամբողջ վաւերացուց, բոլոր մարդկային ազգը հիւանդ էր մեղօք, առողջացաւ բարոյապէս. ուրեմն գիշերաժամու ատեն խօսքը որ կ'ըլլայ, իւղն ալ արդէն եղած է այն հիւանդ քրիստոնէին համար, իւղին երեք տեսակն ալ անշփոթ կատարած է հայաստանեայց եկեղեցին։

6. — Հիւանդաց օծման վախճանը և նպատակը հիւանդը ոտքի հանելու համար աղօթք է. Յակոբոսին ըսելը թէ « մեղքերն ալ պիտի ներուին » հիւանդը ոտքի ելլալէն վերջ անգամ մ'ալ չի մեղանչելու ուխտն և խոստովանութիւն է. «ահաւասիկ ողջացար մի եւս մեղանչեր » ըսաւ Քրիստոս երեսուն և ութ ամեայ հիւանդին. ուրեմն հիւանդը եկեղեցւոյն երէցը կանչելու է Յակովբոսին ըսածին համեմատ, եկեղեցականը գալով բժշկութեան աւետարան մը որ կարդայ,

հարկաւ բարեպաշտ հիւանդին յոյսը կը շարժի, թէ որ «փարատեա՛» եայլն գիշերաժամու աղօթքներ ալ կարդացուի՝ անշուշտ երթալով յոյսը կը թանձրանայ և աւելի կուժովնայ, և կը յուսայ թէ այսչափ աղօթքին վրայ ոտքի կելնէ. ահաւասիկ այս առողջութեան միջոցի կարգին մէջն էր Յակովբոսին ըսած իւղն ալ, միջոց առողջութեան և կենդանութեան ոչ թէ միջոց մահուան։

Թէ որ այդ աղօթից հետ սրբալոյս միւռոնէն տարբեր ձիթաիւղ մը և կամ անարատ իւղ մը օրհնուի այն միջոցին քահանային ձեռօքը, «Քրիստոսի աշակերտաց երբեմն օծեցին ալ» ըսելով, թերևս հիւանդին առողջութեան յոյսը աստիճան մ'ալ աւելնայ, ինչպէս որ փորձով տեսած ենք աւելնալը խաչի և սրբոց մասանց ներկայութեամբ, որ ըսել է այս կէտը եկեղեցւոյն ազատամըտութենէն և հիւանդին գաղափարէն կախեալ է։

Այս գործողութեանց մէջէն հիւանդը ըսենք թէ ոտքի ելաւ ու քանի մը ամիս և քանի մը տարի վերջ դարձեալ հիւանդացաւ ու կրկին այս խորհրդին գործողութիւնը պահանջեց, մինթէ պիտի խնայո՞ւի անկէ, անկարելի է խնայուիլ, եօթանասուն անգամ եօթըն ալ որ ըլլայ, չի խնայուիր։

Հիւանդաց ձեռնադրութեան կարգի կատարումն է, գիշերաժամ, աղօթք, աւետարան ևայլն, ձեռնադրութեան իւղն ալ արդէն առհասարակ բոլոր ժողովուրդը ստացած է, երեք տեսակ իւղի միջոցաւ, այն է,- միւռոնի որուն մէջ կը պարունակուի ձիթաիւղն ալ. Նաեւ Աւագ հինգշաբթուան օրհնուած իւղն ալ եկեղեցիէն սահմանուած է։

7. — Վերջին օծման էական կէտը նախապէս առողջութիւն մաղթելէ հիւանդին համար, երկրորդ խոստովանցնելով անգամ մ'ալ մեղք չի գործելու ուխտ ընել տալ, վասն զի իմացականօրէն և բնականապէս հիւանդութեան մէջ շատ անգամ մարդոց յիշողութիւնը կը պարզուի, աշխարհիս ունայնութեան վըրայ աւելի խորին դիտողութիւն մը կ'ընէ, եկեղեցականք երթալով կ'աղօթեն, որպէս զի առողջանայ, կը խոստովանցնեն, որպէս զի զղջայ, կը հաղորդեն որպէս զի Քրիստոսի հետ անդամակցի. այս միջոցիս թէ որ առողջացաւ լաւ եւս է, թէ որ մեռաւ ան ալ յոյս է հաւատով։

8. — Այս եօթներրորդ խորհրդոյն մէջ մեզի համար միտք դնելու երկու բան կայ,· նախ այս վերջին օծման ու խոստովանութեան յոյս դնելով կամաւ մեղանչելու և կամ «Մեղայ» կոչելու համար ժամանակ սպա-

տելու չենք , Ներելիներն ալ Թանձրանալով որ աւուր մահացուի կը փախուին , հապա ամեն ժամանակ արթուն լինելն է. վասն զի չենք գիտեր թէ երբ կուգայ «ահաւասիկ որ փրկութեան ». մինչդեռ ժամանակս 'ի ձեռս է գործեսցուք զբարիս ». ասոր հետ մեկտեղ թէ որ հիւանդացանք ու պատեհութիւն գըտանք եկեղեցականները կանչելու , այն հաւատքէն ալ յապաղելու չենք , վասն զի քրիստոնէութեան կրօնական սուրբ պայմանին չորս յօդուածին մէկն ալ յոյսն է։

Երկրորդ ; վերջին օծման խորհրդի և աղօթքի մէջ թէ որ հիւանդ մը առողջացաւ ինչպէս որ ըսինք շատ լաւ է , թէ որ տկարացաւ կամ ուշ աղէկցաւ , և կամ մեռաւ, դարձեալ թերահաւատութեան մատնուելու չենք թէ «ինչու առաքելոց օրով հիւանդները անմիջապէս կը քալէին ու հիմա չեն քալեր» վասն զի Նախախնամութիւնը ամեն մէկ պարագայներու մէջ զատ զատ գնացքներով կառավարեց մարդկային ազգը . հիմայ աւետարանը գրեթէ ո՛ և է միջոցաւ աշխարհիս չորս կողմէն երեք կողմը լսուած է, անոր համար ինչպէս որ առաքելոց օրով սուրբ հոգին աղաւնիի պէս կ'իջնար , հիմա ալ այնպէս իջնալու հարկ ցոյց տուած չէ Նախախնամութիւնը . մի միայն Աստուած ա-

ւանց միջոցի, ամեն բան կրնար ընել, իսկ բնաւ բան մը անմիջոց ըրած չըլլալնուն համար, Քրիստոս ալ եկեղեցւոյն եօթը խորհուրդները՝ շնորհական օրհնաց կրօնական միջոց վաւերացուց․ կոյրին աչքը բացաւ, բայց ցեխ մ՚ալ քսեց երբեմն․ աղօթքը ու խօսքը դարձեալ կերպով մը միջոց է։

9. — Միջոց՝ որ կ՚ըսենք, Նախախնամութիւնը իրեն մեզի ընելիքները հրաշքով, մեր իրեն մատուցանելիքը՝ բնութեան ու խելքի մօտ միջոցներով տնօրինած է։

Այս հիւանդութեան համար միջոցը կրկին է, մէյ մը կրօնական մէյ մ՚ալ բժշկական․ կրօնականը՝ ինչպէս որ ըսինք եկեղեցականի միջոցաւ կ՚ըլլայ ոչ թէ աշխարհականի, իսկ բժշկական միջոցը՝ բժիշկներու ձեռքով։ Տունկերու, բոյսերու և զանազան նիւթերու մէջ զանազան ուժեր դնողը Աստուած է․ անոր մէջ գտնուած ուժին բնութիւնը գտնողը՝ մարդուս բանական հոգին է, որ ըսել է այս վերջի բնական միջոցն ալ տուողը Աստուած է։

10. — Եկեղեցականները մեռնելէն վերջը որ կ՚օծենք ուրիշ բան մը չէ եթէ ոչ եկեղեցական վարդապետութիւն մը, որպէս զի աշխարհականներէն տարբեր են, վասն զի՝ անոնք ժողովրդէն տարբերած Քրիստոսի

եկեղեցի կանչուելով ընտրուած են (Մատթ. ԺԸ. 16.) Քրիստոսի հետ պսակուած հարսը Քրիստոսի եկեղեցին է, անոր խորհուրդներուն հաղորդակցող ըլլալով, հակառակորդաց դէմ մարտնչած է. (Ա. Կորնթ. Դ. 1.) Ժողովուրդէն տարբեր օծեալ անունը առած է (Սաղ. ՃԴ. 14.)։ Հին օրինաց ժողովուրդը օծուած չէր, մասնաւորապէս ընտրեալները օծուած էին. հինին նկատմամբ հիմա բոլոր քրիստոնեայք օծեալ անունը առած են (Ա. Յովհ. Բ. 20—27.) հիմայ եկեղեցական ընտրեալը, օծեալներէն օծեալ ընտրել ըսել է, անոնցմէ տարբերելու համար կրկին օծման պէտք ունի, ինչպէս որ ձեռնադրութեան մէջ օծուեցաւ, դարձեալ մեռնելէն վերջ կ'օծենք, որպէս զի ըմբիշ և պատերազմող է ճշմարտութեան հակառակորդաց դէմ, ուրիշ խօսքով, հարսանեաց հրաւիրուած ըլլալնուն համար հագուստներնուն նոր չքեղութիւն տալու խորհրդով, և կամ կուսակրօնութեան ուխտած և Քրիստոսի հետ պսակուած ըլլալնուն համար պատրաստ լապտերօք փեսային գալուն կ'ըսպասեն, Պօղոսին ըսածին համեմատ «պատերազմեցայ, զընթացսն կատարեցի . . . կայ մնայ ինձ անթառամ փառացն պսակն» (Բ. Տիմ. Դ. 7.)։

Այսչափ խորհրդաւոր ըլլալուն հետ

մէկտեղ մենք նորէն չենք կրնար հաւատալ թէ, մեզաց մէջ մեռած եկեղեցական մը, այդ կարգը կատարուելով կ'արդարանայ. և չենք ալ կրնար ըսել թէ, արդար եղողին ուրիշ բան ի՞նչ պէտք է, վասնզի սրբուելէն վերջ սրբութիւն պէտք է. մի միայն մեր աչքի առուածին չափ տեղ կրնանք նայիլ, անոր համար եկեղեցականները կրկին կ'օծենք, զի կրկին պատւոյ արժանի են, թէ հօս և թէ հոն ժողովրդէն տարբեր են. «տասներկուքնիդ տասն և երկու աթոռ պիտի նստիք» «քսան և չորս ծերմակ հագուստով երէցները» (Յայտ. Գ. 5. Դ. 4.) «այլ փառք լուսնի և այլ փառք աստեղ» (Ա. Կորնթ. ԺԵ. 41.)։

11. — Ինչպէս որ հանուր ննջեցելոց համար,`խնկով ու մոմերով կարգեր կատարել եկեղեցւոյն աւանդած է, Քրիստոս ալ այս վերջին կարգը մերժած չէ, վասն զի Նիկոդիմոս, Արեմաթացի Յովսէփ, և բազմաթիւ կանայք Քրիստոսին գաղտնի և յայտնի աշակերտութիւններ ըրած էին, անոր կամքը գիտէին, Քրիստոս ալ իւր հեռատեսութեան մէջ անոնց ընելիք բլլալը գիտէր հարկաւ, թէ որ հարկ չըլլար «մի ընէք» ըսելով պատուիրած կ'ըլլար, չ'ընել պատուիրած չէր որ ըրին (Ղուկ. ԻԳ. 55. Յովհ. ԺԹ. 39.) ուստի թէ որ հիւանդը առողջանալու համար

հիւանդին վրայ կրօնական գործողութիւն մը կ'ընենք, եթէ խորհուրդներէն մէկն է, թէ որ մեռնելէն վերջ ընենք, թաղման կարգ ըսել է, իսկ հոգին աւանդելիքը միջոցին ժամ մը ըլլալու համար ոչ Ս. գրոց մէջէն և ոչ ալ առաքելական Ս. աւանդութիւններէն վկայութիւն մը ունինք, թէ որ ընենք այլանդակ խորհուրդ մը դառնած պիտի ըլլանք։

## ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻՆ

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ



## ԳԼՈՒԽ Ա.

## ՍՈՒՐԲ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

### ԴԱՍ Ա.

1. Աւանդութիւնը ի՞նչ կը նշանակէ. քանի՛ կերպ է։ 2. — Գրո՞վ թէ խօսքով. գրաւորը ուրի՞շ ի՞նչ կը նշանակէ. սուրբ գրոց մէջ ի՞նչպէս գրուած է։ 3. — Սուրբ գրոց վրայ աւելցնել կամ պակասեցնել կըլլա՞յ։ 4. — Ամէն եկեղեցի ունի՞։ 5. — Աստուած այլ բան մը աւանդե՞ց. ի՞նչու համար աւանդեց. արարողութեան նպատակը ի՞նչ է։

*1. — Աւանդութիւնը՝ իր բառական նշանակութեամբը՝ պահելու համար մէկէն մէկու մը տրուած բան մը կը նշանակէ. և երկու կերպ է. Ա. Մարդկային, Բ. Աստուածային։*

Ա. մարդկայինը՝ մարդուցմէ մարդոց կը յանձնուի, սա ալ դարձեալ երկու կերպ է, նիւթական և բարոյական։

Նիւթականը՝ մարդիկներէ հաւատարիմ մարդոց, այսինքն բարեկամէն բարեկամին կը յանձնուի, որով շատ անգամ մարդոց հաւատարմութիւնը երեւան կելլէ, աւանդին խարդախութիւն ընողը անհաւատարիմ կըլլայ։

Նոյնպէս մարդկային բարոյական աւանդը՝ պատուէրքէն, խրատէն, և կանոններէն կախեալ է, որ կ՚աւանդուի, Թագաւորէն հպատակին, ծնողքէն զաւակին, եկեղեցիէն ժողովրդին, տիրոջմէն ծառային, վարժապետէն աշակերտին, որոնց մէջ անհնազանդութիւնները կամ կը պատժուին և կամ անհաւատարիմ կը համարուին։

Բ. Աստուածային աւանդն ալ երկու կերպ է, Նիւթական և Բարոյական։ Նիւթական աւանդ են մկրտութեան համար ջուր, դրոշմի համար իւղ, հաղորդութեան համար հացն ու գինին և այլն։ Անոր բարոյական աւանդն, բնական, գրական և շնորհական աւանդները, այսինքն օրէնքներն են որք Աստուածային կ՚ըսուին, Աստուածային ըլլալնուն համար Ս. աւանդութիւններ են։

2. — Այս սուրբ աւանդութիւնք, Բա-

ւոր և գրաւոր են , ինչպէս որ բնական օրէնքը Մովսէսէն յառաջ առանց գրի խօսքով էր , վերջը բնականին վրայ աւելցաւ գրաւորն ալ Մովսէսի ձեռօք . որ ըսել է խօսքով եղած աւանդն ալ արժանահաւատ մարդոց ձեռօք գրի առնուելով գրաւորի կը վերածուի ։

Այս իմաստով աւանդութիւնը՝ պատմութիւն ալ կը նշանակէ , եթէ պատմութիւն ու աւանդութիւն չըլլային , թերևս աւետարանական ճշմարտութիւնները մեզի չէ հասնէին , վասն զի Քրիստոս ինքը երկու տող բան անգամ գրելով տուած չէր . ոմանք երեսուն , ոմանք քառասուն և հինգ տարի վերջը գրուեցան ականատես և սպասաւոր եղողներու ձեռօք . այս զանազան միջոցներու մէջ առաքելոց ժամանակակից շատ մարդիկ՝ աչքովնին տեսնելով և հաւատարիմ աղբիւրներէ ականջովնին լսելով աւետարանը վաւերացուցին աւանդական կերպով . բայց աս կէտն ալ մտքէ հանելու չենք թէ , Մարկոս աւետարանիչ Եգիպտացւոց , Մատթէոս Եբրայեցւոց՝ Ղուկաս Ասորոց, և Յովհաննէս Յունաց լեզուաւ գրեցին, զանազան լեզուաւ զանազան տեղեր զանազան ժամանակաց մէջ . ասոնց վրայ հասուն խորհրդածութիւն մը ընենք թէ , այս չորսին աւետարանները կարդացողները՝ Քրիստոսի ծննդեան վերա-

համար ; ատանկ փոքր նշաններով գոհ չ՚ըլլը-ալով , վասն զի Քրիստոս իւր առաջին հրաշքը՝ ուրիշ օր մը ըրաւ , երկինքը հինգշաբթի օրը համբարձաւ , Հոգին Սուրբ տասն օր կըր-նայ ներշնչել , առաքեալք ուրիշ անգամներ ալ կը ժողովէին , ուրեմն շաբաթը կիւրակէի փոխելու վրայօք՝ ամբողջ գլուխ մը մեկնու-թիւնովը մէկտեղ գրէին , քիչ էր . անոնք ալ գոնէ երեք տող ալ գրած չեն , բայց մենք միթէ օծա՞լ կը պահենք կիւրակին . բնաւ որ-խալ չէ . Քրիստոս անշուշտ պատուիրած է թէ , Նոր Իսրայէլին նոր օր մը պիտի տամ , առաքեալք յատկապէս բերանով պատուի-րած են բոլոր եկեղեցի կազմած տեղերնին , որ մէջ ընելով փնտռելով գտած ու ժամա-նակ մը վերջը վաւերացուցած է եկեղեցին , Քրիստոսէն առած իշխանութեամբը . ուստի սուրբ գրքին վրայ հիմնուածներն ալ մեղի սուրբ գրոց առաջնորդողներն են , առանց ա-ռաջնորդի սուրբ գիրքը տգիտաց համար մութ է ։

3. — Սուրբ գիրքը աւանդութեան հա-մար բաց է . սուրբ աւանդութեանց , սուրբ արարողութեանց , եկեղեցւոյ իշխանութեանց և Աստուածային Տնօրէնութեանց դէմ կռուո-ղներուն համար կնքուած է . սուրբ գրոց համեմատ . եկեղեցւոյն վաւերացուցած ա-

ւանդութիւններէն աւելցնող և պակսեցնողներուն պատիժը յայտնի է (Յայտ. ԻԲ. 18.) վասն զի սուրբ գիրքը սուրբ աւանդութեան պէտք ունի. «աչքով տեսնողները աւանդեցին մեզի» (Ղուկ. Ա. 2.) «Յիսուս շատ բաներ ըրաւ որ գրուած չեն.» (Յովհ. ԻԱ. 25.) Պօղոս, Բառնաբաս, Շիղա, Սուրիայի և Կիլիկիայի մէջ բերնով շատ բաներ սորվեցուցին, որովհետեւ Թլփատութեան վէճի վրայօք գնացած էին (Գործք. ԺԵ. 22—27.) «միւս բաները՝ գալուս կը սորվեցնեմ» (Ա. Կորնթ. ԺԱ. 35.) «Ես զքեզ 'ի Կրետէ թողուցի որ պակասները՝ լեցնես» (Տիտ. Ա. 5.) «դուք ալ Լաւոդիկեայէն եկած թուղթը կարդացէք» (Կող. Դ. 16.) «խօսքով ու գրով եղած աւանդութիւնները պինդ բռնեցէք» (Բ. Թես. Բ. 14.) դեռ ասոնց պէս շատեր կան որ; առաքելոց գործակից մարդոց ձեռքով աւանդուեցաւ:

4. — Հայոց, Յունաց և Հռովմէականնաց եկեղեցիներ ունին այս աւանդութիւնները, զորս եկեղեցին վաւերացուցած է, հին և նոր կտակարանաց համեմատ. այս երեք տեսակ և ասոնց գաղափարով եղած եկեղեցեաց սկզբունքը և վախճանը մէկ է, այն վէճեր տակ եղած խնդիրներ աւելցնելու, պակսեցնելու խնդիրներ չեն, վասն զի սկզբունք-

քը՝ նիւթականէն տեսական մակաբերել է, ինչպէս որ Աստուած տնօրինած է հաւատք և գործք ։

5. — Սուրբ աւանդութիւնը՝ նախ Աստուծմէն յանձնուած է մարդոց, առաջին մարդը և անոր կինը ստեղծելով, պսակի խորհուրդը աւանդեց, որ մինչեւ այսօր կուգայ. բնական օրինօք վարուեցան մարդիկ մինչեւ Մովսէս, Մովսէսին աւանդեց գլխաւորաբար տասնաբանեան, և այդ միջոցներուն մէջ Նոյին տապանէն սկսալ աւանդել, նիւթական եկեղեցի մ'ալ. Նաեւ մկրտութեան և դրոշմի խորհուրդը. մենք իրեն ինչ պաշտօն որ պէտք մատուցանենք, բնութեան ու խղճի մօտ մատուցանել կը սորվեցնէ մեզի հին և նոր կտակարանի միջոցաւ ։

Բնութենէն կը սորվինք որ, մարդ մը գեղեցիկ պատմութիւն մը լսած ատեն, անոր իրականը տեսնելու ո՞րչափ կը փափաքի. այս ինչ մարդը գեղեցիկ է, այն ինչ քաղաքը վայելուչ է, այն ինչ պատերազմը սոսկալի էր, կամ եղբայրդ, զաւակդ և բարեկամդ, այս ինչ ձեւովը է ըսելով պատմութիւն մը որ ընես ամեն մարդու կ'ազդէ ։

Չկայ բնութեան մէջ բան մը որ կամ չարի և կամ բարւոյ համար չի գործածուի. Հրացան մը կամ սուր մը բարի մարդու մը ձեռք'ի պահ-

պանութիւն անձին կը գործածուի, դողի մը ձեռքն յանկրծուն յափշտակութիւն. երաժշտութիւն մը կամ երգեհոն մը մարդուս սիրտը կամ առ Աստուածային և կամ սատանայանին կ'ուղղէ. միով բանիւ, ամեն բան թոյն է ամեն բան դեղաթափ է, հացը անգամ թոյն է ստամոքսը տկարին, իսկ դեղ է առողջ քաղցեալին. ասոր համեմատ նախախնամութիւնը՝ բնութեան մօտ կարգադրած է մարդոց մատուցանելիք սրբազան պաշտօնները. ճիշդ «ձեռագործն անիծեալ է» ըսած ժամանակ որբութեան խորանին, տապանակ ուխտին ու տաճարի քերովբէներուն չինուելու հրահանգը կուտայ. որ ըսել է ամեն պաշտօն իւր նպատակէն և վախճանէն կախեալ է։

Արարողութիւն դաւանող եկեղեցեաց նպատակը Աստուծոյ ծառայել է, առանց արարողութեան եկեղեցի կազմելը անկարելի է «մէկտեղ ժողովինք, միադամ ընտրենք» ըսելն ալ արարողութիւն է. արարողութիւնը Հայրն Աստուած հրամայած և Քրիստոս վաւերացուցած է, առաքեալք 'ի գործ դրած են, վասն զի Աստուած առանց ներկայացման լոկ հոգիանալու ձեւով երկրպագութիւնը ընդունած չէ, առանց գործոց մեռեալ հաւատք սեպելով։

## ԴԱՍ Բ.

### ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՕՐԻՆԱՑ

1. — Հին օրէնքը ի՞նչ էր. Նորը ի՞նչ է. ի՞նչ տարբերութիւն կայ։ 2. — Պօղոս ինչո՞ւ երբեմն հինը կը մերժէ։ 3. — Քրիստոս խաչուելէն վերջ ամենայն ինչ կատարեալ չեղա՞ւ։ 4. — Ընթացական օրինաց մէջ զարգացման առաջադիմութեան հարկ կա՞յ։

*1. — Հինը Նորին ստուերը ըլլալը յայտնի է, հինին Օրէնք կ՚ըսէ Նորին Շնորհք և ճշմարտութիւն «օրէնքն 'ի ձեռն Մովսէսի տուան, շնորհք և ճշմարտութիւն 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի եղեն». Հինին մէջ ծառայ էին մարդիկ, Նորին մէջ ազատ են և որդիք. այս պատճառաւ Պօղոս Նոր դարձող քրիստոնէից՝ հինը նորի փոխուիլը հասկցնելու համար «Քրիստոս մէկ անգամ պատարագուեցաւ» կ՚ըսէ, որպէս զի մեղաց քաւութեան համար ամեն տարի զատ զատ պատարագներ չփնտռեն, հապա տարին քանի անգամ որ ընեն դարձեալ միեւնոյն գառն Աստուծոյ է,*

եթէ ոչ Պօղոս գիտէր որ ամեն ընտրեալ քահանայ մատուցանելու համար բան մը ունէր․ Քրիստոս ալ ըստ կարգին Մելքիսեդեկի յաւիտեան քահանայապետ ընտրուեցաւ, անոր ալ բան մը պէտք էր որ մատուցանէր. մարդուն ալ տարին անգամ մը մեռնիլ չըլլար (Եբր. Թ. 27։) Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ, նոյնպէս Քրիստոս Նոր ուխտի քահանայներ ընտրեց, անոնք ալ բան մը կուզէին որ մատուցանէին (Եբր. Ը. 3.) Քրիստոս պատարագ եղաւ զոհը հատաւ, հին քահանայութիւնը վերջացաւ, նորերուն համար ալ հինը նորի փոխուեցաւ. «այս է արիւն իմ նորոյ ուխտի». որն որ Քրիստոսէն առին Քրիստոսի կը մատուցանեն «և ըզ քոյս 'ի քոյոց քեզ մատուցանեմք» ըսելով, որ ըսել է հինը չի վերջացաւ, այլ ստուերը 'ի լոյս փոխուելուն համար Շնորհք ըսուեցաւ։

2. — Պօղոս հին օրինաց վրայօք քանի անգամ որ խօսք ըրած է, նորի փոխուած ըլլալը գիտցնելու համար է, զի շնորհական օրինաց մէջ մտնողներէն ոմանք նոր ուխտի գաղափար ունենալու տեղ ըստ հրէական սովորութեան կերակուրը կը խտրէին, ոմանք ալ կուոց զոհին վրայ վէճ կ'ընէին, ասոր վրայօք երբեմն կը խօսի թէ «հրամաններով եղած պատուիրական օրէնքը խափանեց (Եփես.

Բ. 15.) այնպէս որ շնորհական օրէնքը տէր մը ծառային պատուիրածի պէս չգիտնան, հապա հայրը իւր որդւոյն աւանդածի պէս ճանչնան ու գիտնան, ուրեմն «Քրիստոս եկաւ ու հին օրէնքը վերջացաւ» ըսուած խօսքը շատ թերի և անսահման խօսք մ՚է, բայց, «Քրիստոս գալուն հին օրէնքը նորի փոխուեցաւ» որ ըսենք քիչ շատ անոր սահմանին մօտիկցած կ՚ըլլանք:

3. — «Ամենայն ինչ կատարեալ է» ըսած խօսքը Քրիստոսի ծննդենէն մինչեւ խաչելութիւնը, համբարձումը և հոգեգալուստը ամբողջապէս կատարուեցաւ. ուրիշ խօսքով, Քրիստոս խաչին վրայ ըսաւ «ամենայն ինչ կատարեալ է» այնպէս թէ մարդիկ չարութեան ծայրը հասան, որ իրենց բարերարը խաչեցին; Աստուած ալ իւր մարդասիրութեան վերջին ծայրը կատարեց, որ Որդին խաչին վրայ մեռաւ, անօրէններուն կարգը սեպուելով, որոց վրայօք եղած մարգարէութիւնները լրացան. իսկ օրէնքներէն հինը նորի փոխուելիք ըլլալը կանխաւ ըսած էր, «ոչ եկի լուծանել» կամ. տաճարը գալուն վաւերացուց, վերնատան մէջ հաստատեց, զարդարուն տուն մը պատրաստել հրամայեց. զարդարունը՝ որ կը նշանակէ Մովսէսին ու ու Սողոմոնին հրամայուած զարդարեալ սե-

զանններուն, եկեղեցական հաւատամքներուն, և Աստուածային տան վայելչութեան նորոգ-վաւերացումը, եթէ ոչ Քրիստոս զարդա-րուն տեղի մը կարօտ չէր. մանաւանդ Քր-իստոս իւր հոգին աւանդելու ատեն տաճա-րին վարագոյրը պատռելով սուրբը լոյսի փոխուեցաւ, հինը պատառեցաւ կործանե-ցաւ թէեւ, բայց այն կործանումը նորէն պիտի կանգնէր անշուշտ, «տիրոջը բոլոր գործքերը աշխարհիս սկիզբէն մինչեւ վերջն է, Դաւթին կործանեալ խորանը նորէն պի-տի կանգնի» (Գործք. ԺԵ, 16—18.) միթէ օրէնքը կը ջնջե՞նք, քաւ լիցի, այլ կը հաս-տատենք, (Հռովմ. Գ. 31.) Մովսէսին Աստ-ուած ինչ որ կը պատուիրէր «առ ձեզի յա-ւիտենական կանոն պիտի ըլլայ» կ'ըսէր. (Ելից. Լ. 17—21.) յաւիտեան ըսողը խաբե-բայական բերան մը չէր, Աստուծոյ խօսքն էր, սուրբերականն ալ մինչեւ Յովհաննէս պիտի տեւէր. անկէ վերջը Քրիստոսի շնոր-հականը լոյսի փոխուելով (Ղուկ. ԺԶ. 16.):

4. — Հին օրէնքը Աստուած հրամայած ըլլալուն կատարած չունինք, որ նորին պատ-կերն էր, որուն այնչափ վայելչութիւն կը վայելէր, հապա նորը որ Քրիստոսին լոյսը, և զատատօնին պատկերն որ ունի ո՞րչափ փառք և վայելչութիւն կը վայելէ տաճարը.

նշանախեց մը կոլսուելու , ինչպէս որ Պօղոս կըսէ «Թէ որ քարերու վրայ փորուած մահուան պաշտօնը փառքով պիտի ըլլար , ու Մովսէսին երեսը կարող չէին նայելու, ուրեմն Հոգիին պաշտօնը ո՞րչափ փառքով պիտի ըլլայ , (Բ. Կորնթ. Գ. Դ.) բայց զարմանալու բան մը ալ այս է որ յայտնի ճշմարտութեան վրայ սեւ քօղ մը ձգել ուզելով կ'ստիպեն ոմանք թէ «Քրիստոս գալուն հինը վերջացաւ» կամ թէ «առաքեալները եթէ ըրած ըլլային կը գրէին» ինչ յանդգնութիւն է ըսելը թէ «առաքեալք չըրին» ով կրնայ ըսել թէ առաքեալք չգիտէին Աստուծոյ «յաւիտեան կանոն» ըսուած խօսքը , Քրիստոսի ոչ եկի լուծանել» ըսածը , զարդարուն տաճար մը պատրաստելը , Սողոմոնին տաճարին «տուն Հօր իմոյ» ըսելով վաւերացնելը . ուրեմն ասոնց վրայօք անգամ մը ալ զատ զատ Նոր կտակարանին մէջ գրուիլ պէտքը չէր , քանի որ սուրբ աւանդութիւն կայ ։

## ԴԱՍ Գ.

### ՏԱՃԱՐ ԱՍՏՈՒԾՈՅ ԿԱՄ ՆԻՒԹԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ

1. — Աստուծոյ տաճարը ո՞րն է։ 2. — Նիւթական ալ կուզէ՞։ 3. — Նիւթական տաճար որ չըլլայ սուրբ խորհուրդ չի՞ կատարուիր։ 4. — Աստուած ե՞րբ հրամայեց շինել։ 5. — Սուրբ խորհուրդները ինչո՞ւ հոն կը կատարենք. ի՞նչու կոծենք։ 6. — Ի՞նչ կերպով կամփոփուին ասոնք։ 7. — Տաճար մը շինել տալուն մէջ ի՞նչ բարիք կայ։

*1. — Աստուծոյ համար եթէ բնակարան հարցուի, էութեամբ, անպարագրելի զօրութեամբ ամեն տեղ է, անոր զօրութիւնը՝ գլխաւորաբար հեզերուն և խոնարհներուն սրտին մէջ է (Եսայ. ԿԶ. 2.) սակայն ասոր հետ մէկտեղ ինք մեր մէջ բնակելով՝ մեզի ալ մասնաւոր բնակելու տաճար մը աւանդած է, այնպէս որ Եսայիի բերնով կը բացատրէ թէ «Երկինքը իմ աթոռս է, երկիրը իմ պատուանդանս է ինծի ի՞նչպէս տուն պիտի շինէք» կըսէ, մենք ասկէ իմա-*

նալու չենք թէ, երկինքը, երկիրը իրեն է մեզմէ ուրիշ տաճար մ'ալ չուզեր ։

2. — Այն նիւթական տաճարն ալ ուզած է, այն իրեն ուզածն ալ սուրբ տաճար և հասարակ տուներէն տարբեր ըլլալուն համար, Եսայեայի բերնով այնպէս ըսած է, որպէս զի մարդիկ տաճարին սրբութեանը ապաւինելով, իրենց անսրբութեան վրայ անհոգ չ'ըլլան. թէ որ այսպէս գաղափարեն լոկ մարմին ըլլալ ըսել է, այն պատճառաւ «ձեր խունկեր ինձ կուռք պաշտողի պէս են» կըսէ, ասոր հետ ալ նորէն կը դառնայ նիւթական տաճարը կ'ուզէ, որպէս զի մարդոց մէջ որ բնակի, մարդիկ ալ հոն բնակին. թէ որ ինք մեր մէջ բնակելէն վերջ նիւթական տաճարի հարկ չ'կայ ըսենք, աս ալ լոկ և անկարելի աստիճանի մէջ հոգիանալ ձեւացընել է. «ուր երկու կամ երեք ժողովեալ իցեն յանուն իմ, անդ եմ 'ի մէջ նոցա» ըսած խօսքը առ հասարակ բարոյական և նիւթական եկեղեցւոյ համար է ։

3. — Բացառութիւնը ուրիշ խնդիր է, օրինակի համար թափառականութեան մէջ անապատի վրայ ալ Աստուածային խորհուրդ կը կատարուի, ինչպէս որ Եղիշէ՝ Վարդանանց ժամանակի համար կըսէ «ամեն մարդիւր անձին մէջ եկեղեցի էր» կամ ըստ պա-

րագային տուներու մէջ ալ հիւանդին խոստովանութեան համար երկու կամ երեք հոգի ժողովուիլ, հաղորդութիւն մատակարարել, Քրիստոսի անունովը ժողովուիլ ըսել է, ուր տեղ որ աղօթեն հոն կը լսէ, բայց այս կերպերը մասնաւոր բացառութիւններ են, ընդհանրապէս և առ հասարակ՝ յատուկ էն սուրբ տաճար կը պահանջէ Աստուած մեզմէն, որ վայելուչ և պատկառելի ըլլայ մեր սրտերը առ Աստուած յափշտակելու համար, հասարակ տներէն տարբեր, երկնային կարգադրութեանց յարմարութիւն ունենայ, ինչպէս որ Նախախնամութիւնը՝ կանխաւ իւր տնօրէնութեան տակն առած էր. « ուր տեղ որ ըլլանք Քրիստոս հոն է » ըսելով, առանց բանաւոր պատճառի Աստուածային Տնօրինութեան դէմ վէճ ընելը՝ հաւատքի գայթակղութիւն տալ է։

Մենք չենք ըսեր թէ « ուր ըլլանք Քըրիստոս հոն չէ. և մինակ տաճարին մէջն է » սակայն ինչպէս որ քաղաքական վարչութիւն մը կամ կանոն մը կը կառավարէ զմարդիկ, նոյնպէս հոգեւորի մասին ալ հոգեւոր կանոն պէտք է, թէ որ չ'ըլլայ ամեն գիւղ, ամեն քաղաք, ամեն տուն զատ զատ կանոնով ուզածնուն պէս պաշտամունքներ կը վարեն։

4. — Նիւթական սուրբ տաճարին հրա-

հանգը Նոյեան տապանէն կ'ըսկսի, վասն զի բնականապէս մարդը իւր տեսածէն եւ ծնալով չափազանց ցաւ կ'զգայ. Իրաւ դրախտի վայելչութիւնը երկնից թագաւորութեան մէջ որ Աստուած իւր սիրելիներուն համար պատրաստած է, ո՛չ աչք տեսած ունի և ո՛չ ականջ լսած ունի, բայց նախախնամութիւնը մարդասէր է, երբ Աստուածային արդարութեան համեմատ մարդը դրախտէն աքսորուեցաւ և իւր տեսածէն որ եւ ծնաց, գէթ անոր լուսանկարական պատկերը տալ ուզեց մարդկային ազգին առ ժամանակեայ կերպով և ստուերապէս. այսինքն բնականին մէջ դրականին ստուերը կար, գրաւորին մէջ շնորհականին ստուերը (Եբր. Ը. 5.) շնորհականին մէջ ալ երկինքի և դատաստանի ստուերը կայ որ հայելի օրինակով կը տեսնենք դիմացնիս կեցած և հոգւոյ աչօք (Բ. Կորնթ. Գ. 18.)։

5. — Նոյեան տապանէն, տաճարին ու մկրտութեան ստուերը 'ի միասին կ'սկսի, նոյնպէս դրօշմի ու հաղորդութեան խորհուրդը, անկէ կ'սկսին (իրենց տեղերը գրուած է) անոր համար առ հասարակ եկեղեցւոյ խորհուրդները սուրբ տաճարին մէջ կատարել կը պարտինք։

Աստուած Նոյին կը հրամայէ որ տապան մը շինէ իւղոտ փայտէն և ձիւթապատ

(Ծննդ. Զ. 14.) անոր լուսամուտ, ներքնայարկ և վերնայարկ շինելու հրահանգ կուտայ, ջրոյ և տապանի միջոցաւ կազատի Նոյ իւր գերդաստանով. հոս տեղ թէ որ Աստուածային տնօրէնութեան մէջ, Նոյ նահապետը ազատելուն հետ մէկտեղ տաճարի մը ալ ստուեր չի կենար՝ այդչափ կանգուն կամ ներքնայարկ ու վերնայարկ չէր պատուիրեր, անոր ամենապարզ ձեւ մ'ալ բաւական էր, անոր մէջ խորհուրդ մը կեցած ըլլալը առաքեալը վաւերացուցած է, (Ա. Պետ. Գ. 20.) մանաւանդ այս հրահանգին Նոր ուխտի փոխուելիք ըլլալը Աստուած Յակոբին ալ յայտնեց, որուն իսրայէլ կանչեց, զի Նոր ուխտի առաջնորդը Քրիստոս անոր ցեղէն պիտի յայտնուէր Նոր իսրայէլին մէջ, անոր համար բնական օրինաց մէջ ալ նահապետի մը ձեռօք օծմամբ սկսաւ տաճարի հիմնարկութիւնը՝ (Ծննդ. ԻԸ. 16—18.) դարձեալ սեղան կանգնեց Աստուած Յակովբի ձեռօք, (Նոյն. ԼԵ. 7.) ասիկայ Մովսէսին գրաւորին մէջ աւելի պարզուեցաւ (Ելից. ԼԵ. 4. ԼԹ. 43.) ասոր համար սուրբ տաճարը՝ եպիսկոպոսի ձեռօք օծմամբ կսկսի, որ Նոյէն և Յակովբէն Մովսէսին անցաւ, նաեւ Սողոմոն շինեց Աստուծոյ տուած հրահանգովը։

Սողոմոնի հրամայեց թէ «սեղանին վը-

րայ Սերովբէներ կայնեցուր » Նաեւ նոյն հրահանգին մէջ էր հոն գիշեր ցերեկ լոյս վառելն ալ, (Ղեւտ. Զ. 9.) Քրիստոս կըսէ « լոյս եկի յաշխարհ » անոր լոյս ըլլալ ներսէն կը հաւատանք, դրսէն ալ պիտի ցուցնենք իրօք Նիւթով, վասն զի Աստուածային տնօրէնութիւն է ։

Նիւթական տաճարը Քրիստոս ինքն ալ վաւերացուցած է, վասն զի տաճարը ամեն անգամ գալուն կը տեսնէր որ, աշտանակները և Քերովբէները մէջն էին, չըսաւ թէ, « ատոնք պիտի վերնան ». անկէ քաշուելու բան մ'ալ չունէր . ուրիշ յանցանք ունեցողները կը յանդիմանէր, աղաւնի ծախողները կը վռնտէր, դպիրները ու փարիսեցիները յայտնապէս կը խայտառակէր, Մովսէսի օրինաց դէմ խօսելու չէր քաշուիր, որոնց դէմ որ պիտի խօսէր . ակռային դէմ ակռայ ըսաւ Մովսէս, բայց Քրիստոս զայն հերքելու չի քաշուեցաւ, միթէ պիտի քաշուէ՞ր ըսելու թէ « այդ տաճարին մէջէն աշտանակները և Քերովբէները վերցուցէք, ցերեկը լոյս վառելու հարկ չկայ» . այսպէս չըսելէն զատ այն գիրքին մէջ վաւերացուց ալ . քանի մ'անգամ «տուն հօր իմոյ » ըսելով Աստուծոյ տաճարը մտաւ (Մատթ. ԻԱ. 12. Ղուկ. Բ. 49. Նաեւ սեղանը պարզեց Մատթ. ԻԳ. 19.) ։

Աստուծոյ տաճարը սուրբ է, անոր մէջ հոգեւորի գործածուելիք վայելչութիւն կը վայելէ, Աստուած ինչպէս որ բարոյական եկեղեցի ընտրած է, նոյնպէս նիւթականն ալ, որովհետեւ բարոյական եկեղեցին հոգեւոր վարչութիւն մ'է, ամեն վարչական ժողովք իր կեդրոնատեղին կուզէ, Աստուածային խորհուրդներ կատարելու կեդրոնատեղին ալ նիւթական եկեղեցին է, ասոր մէջ սուրբ սրտով աղօթելը մեծ ազդեցութիւն ունի, ինչպէս որ օրինակ են մեղի փարիսեցին և մաքսաւորը. սրբութեան արժանի եղողներուն սրբութեան տեղի, հրեշտակաց բնակարան, ու մարդկանց քաւարան է, ինչպէս որ մաքսաւորին մեղքերը քաւուեցան. Նոյնպէս Քրիստոս զարդարուն վերնատուն մը ընտրած էր յատկապէս, «'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց» ըսելով հաղորդութեան խորհուրդը հոն աւանդեց, առաքեալները հոն կը ժողովէին. ուրեմն «Քրիստոս իր եկեղեցին պակաս կը թողէր» կամ թէ «առաքեալք ի՞նչու չի գրեցին» ըսելը աւելորդ է. Քրիստոս իւր եկեղեցին պակաս թողած չէ, հին տաճարը իր մէջիններովը վաւերացուց, նոյնպէս սրբութեան սեղանը՝ առաքեալներն ալ անշուշտ ճիշդ հիմակուան մեր ըրածին պէս ըրած ըլլալու են, որով.

հետեւ տիրոջը սեղանը կուոց սեղանէն կորո-
չեն « չենք կրնար վայելել տիրոջը ու կուոց
սեղանէն » ( Ա. Կորնթ. Ժ. 21. ) ։

6. — Աստնք գիտնալու համար երեք
կերպ բաներ կան . Ա. Քրիստոսի եկեղեցւոյ
իշխանութիւնը որ մինչեւ 'ի կատարած աշ-
խարհի է , 'և իրաւունք ունի սուրբ աւանդու-
թիւնները մեզի հասցնելու . Բ. թէ որ եկե-
ղեցւոյն աւանդին վրայ ալ կասկածինք , աչ-
քերնիս սուրբ գրոց վրայ աղէկ մը դարձնենք
պիտի տեսնենք որ դրախտէն մինչեւ ցգող-
գոթայ , նիւթականէն տեսական մակաբերե-
լու վրայօք բնականին յարմար Աստուածային
դնացք մը կայ . եկեղեցւոյն մեզի աւանդա-
ծին մէջ ալ չ'կայ բան մը , որ սուրբ գրոց
վկայութեան վրայ հիմնուած չըլլայ . Գ. այն
սուրբ գրոց վկայութեամբ աւանդուածներն ալ
շնորհական օրինաց յարմարութիւն ունենալ
պէտք է, ինչպէս որ ունին ։

7. — Աստուծոյ անունով տաճար մը
շինելը մեծ բարիք գործել է , մեր նախա-
հարք սրբոց գերեզմաններու վրայ վանքեր
որ կը շինէին պարապ տեղը չէր , վասն զի
սուրբեր « հրեշտակ տեառն ամենակալի »
էին ըստ մարգարէին , ինչպէս որ Յակովբ ալ
Աստուծոյ հրեշտակին երեւցած տեղը շինեց
( Ծննդ. ԻԸ. 12—18. ) նոյնպէս անոր մեծու-

թիւն ու փառք կը վայելէ., անոր մէջ ապատաւորութիւն ընողներուն մեծ զգուշութիւն պէտք է, մանաւանդ պաշտամանց ատեն. առանց ընտրութեան ամեն մարդ սեղան ելնելու չէ, Կորխին պէս կը պատժուին (Թուոց, ԺԶ. 1.) բուրվառին տարբեր կրակ դնողները պատժուեցան, նոյնպէս Հեղեայ քահանային որդիքը: Թէ որ հիմայ չի պատժըւին ալ դատաստանին պիտի պատժուին, զի հիները հիմակուան նորին ստուերը ունենալնուն համար, հոս կը պատժուէին, իսկ նորը դատաստանին օրինակը ունենալուն համար, դատաստանին կը մնայ պատիժն ալ շատ անգամ:



## ԴԱՍ Դ.

### ՀՈԳԵՒՈՐ ԵՐԿՐՊԱԳՈՒԹԻՒՆ

1. — Հոգեւոր երկրպագութիւնը ի՞նչ է։ 2. — Արարողութեան պէտք ունի՞։ 3. — Հապա սուրբ գիրքը ի՞նչու կը մերժէ ձեռագործը, մարդոց աւանդը, աղօթքի երկարիլը, ուրիշը փառաւորելը։ — 4. Ի՞նչ գաղափար կուգէ։ 5. — Պարզ գաղափարը ի՞նչպէս կ'ըլլայ։

1. — *Աստուած հոգի է, անոր երկրպագութիւն ընողները պէտք է հոգւով ընեն* (*Յովհ.* Դ. 24.) *. այս հոգեւոր երկրպագութիւնը գիտցողները բնաւ չեն նախապաշարուիր, որ իրեն սահմանը ունի, այն է, հոգեւոր երկրպագութիւնը ճշմարիտ հաւատոյ վրայ կայացած հոգեւոր տեսութիւն մ'է, հոգւին մարմնոյ մէջ է, մարմնաւորի միջոցաւ կ'ըլլայ հոգեւոր երկրպագութիւնը։ Քրիստոս աշխարհ չեկած ալ կրնար փրկել զմեզ, իսկ անոր մարմին հագնիլը, մեր մէջ երեւնալը, հոգեւոր արարողութիւն մ'է. և մեզի կը սորվեցնէ թէ, մարդու մը մտքէն ինչ որ կ'անց-*

նի , դրսէն անոր ներկայացումը պէտք է (1) ։

2. — Աստուած մարդոց սիրտը կը նայի բայց դրսէն ալ արարողութիւն կը պահանջէ . Ադամ արարողութեամբ մը դրախտէն աքսորուեցաւ , Աբրահամու հաւատքը արարողութեամբ վաւերացաւ . տասներկու տարուան հիւանդ կնոջը հաւատքը արարողութեամբ մը կենդանացաւ . Քրիստոս տա-

(1) 1857ին Կ . Պոլիս տպագրուած ( Այնուատէթլէր ) անուն գրուածքի մը սկիզբը « փորձեցէք , աղէկ եղածը ձեզի առէք » ( Ա . Թես . Ե . 21 . ) « հրէական առասպելներուն չի նայինք » ( Տիտ . Ա . 14 . ) այս խօսքերը վերնագիր ընելէն վերջ , քան յօդուածով բոլոր արարողութեանց դէմ կը բողոքէ , եօթը խորհուրդները կը հերքէ , իբր թէ , արարողութիւն կատարող եկեղեցեաց մէջ բնաւ չիտակ բան մը չ'կայ . ցաւալին այս է որ տասնեւինը դարուն մէջ , կարծես աւետարան բնաւ տեսնող եղած չէ , մի քանի նորուսներէ զատ , կամ թէ քրիստոնէից բոլոր ըրածը հրէական առասպելներ են . գէթ բանի մը համար չիտակ ըսէր , կըսէինք թէ « ճշմարիտը խօսելու միտք ունի եղեր այդ հեղինակը բայց գիտցածը այդ չափ է » ։

Հաղորդութիւն , մկրտութիւն , ձեռնադրութիւն , գրեթէ անոնց խօսքին նայելով մեր կատարած բոլոր պաշտօնները հրէական առասպելներ են ։

Այդ հեղինակը ամեն մէկ յօդուածոց մէջ քիչ

սը հատ բորոտներ բժշկեց, անշուշտ տասնք բոլորն ալ մտքերնուն շնորհակալ եղած են. բայց մէկ հատը երբոր արարողութեամբ մը շնորհակալութիւնը յայտնեց, Քրիստոսէն գովուեցաւ (Ղուկ. ժէ. 11—17.)։

Նոյնպէս աղօթքի մէջ արարողութիւն կայ, Մովսէս ու Ահարոն ձեռքերնին վեր կը

---

քան մը հին և նոր կտակարանէն և շատ մը վըկայութիւններ ալ նախնեացմէ բերելով, հաստատուցնել ուզած է թէ բոլոր արարողութիւնք վերջէն մըտած են։

Հին և Նոր կտակարանը՝ Աստուածային տնօրինական գնացքը ուշի ուշով կարդացողը աղէկ մը կրնայ հասկնալ անոր մէջ գտնուած գայթակղական ճամբաները. օրինակի համար, հեթանոսութենէ, նոր հաւատացող քրիստոնէից մէջ, իգական չաստուած մը պաշտելու գաղափարը կար, Մարիամ կոյսին վրայօք ալ սխալ գաղափար մը չունենալնուն վրայօք այսինչ հայրապետը Մարիամին մատուցուելիք պաշտօնը այնպէս և այն գաղափարով ընելալիք ըլլալը իմացուցեր է, այս նպատակը մէջ կ'առնու թէ, «Մարիամին պատիւ տալու վրայօք սուրբ գրոց մէջ բան մը չ'կենալէն զատ հայրապետներն ալ հերքած են, բայց վերջէն այսինչ դարուն մտաւ» կամ թէ «դուք Աստուծոյ պատուէրը մերժեցիք օրէքներէն ծանրները թողուցիք . . . մարդոց աւանդութիւնը յարգեցիք» ըսուած խօսքը կառնուն թէ «բոլոր աւանդութիւններ մարդոցմէ են, անոր համար Քրիստոսի կամաց հակառակ է». այս կերպ

վերցնէին. Քրիստոս ինքն ալ երեսանկեալ կաղօթէր (Ղուկ. ԻԲ. 41. Մատթ. ԻԶ. 39.) աշակերտներուն ոտքը կը լուանար. Պօղոս կը պատուիրէ որ էրիկ մարդիկ բացագլուխ աղօթեն (Ա. Կորնթ. ԺԱ. 4.). վերջապէս սուրբ գիրքը ծայրէ 'ի ծայր արարողութիւն կը սորվեցնէ, բաւական է որ նպատակը 'ի սէր Աստուծոյ և Աստուածային կանոններու համաձայն և այն արարողութիւնը և շարժումը իւր նպատակին յարմարութիւն ունենայ բնութեան և խելքի մօտ ձեւօք, զի Աստուած այնպէս տնօրինած է. միթէ կարելի՞ է բնութիւնը սրբագրել. մենք անմարմին հրեշտակներ չենք. թէ որ ըլլայինք անգամ դարձեալ Յայտնութեան մէջ կը կարդանք որ անոնք ալ արարողութիւններով կը փառաւորեն զԱստուած ։ Վերջապէս մենք Աստուծմէ աւելի բանգէտներ չենք. ինչպէս որ վերը ըսինք, Քրիստոս արարողութեամբ **ՓՐԿԻՉ** անունը առաւ։

---

խօսքերն միտքը չճաշակուած ռամիկը պիտի գայթակղեցնեն քիչ շատ. ազատամիտ հաւատացեալք գիտեն որ, թէ Աստուածային և թէ մարդկային բոլոր գրուածոց մէջ ամեն խօսք իւր ուղղուած տեղը ունի, այսինչին ուղղուած խօսքը այնինչի ուղղուելու մէջ կեցած նպատակը կրնան զգալ խորհողները ։

3. — Ա. Աստուած ըսած է «ձեռագործըն անիծեալ է» այս խօսքը ըսած օրերը Մովսէսին խորանը, տապանակ ուխտին, Սողոմոնին տաճարին մէջ դրուելիք Քերովբէները չինել ինքը հրամայած է. Մովսէսին կարմիր ծովը գաւազանի միջոցաւ ճեղքել տըւողը ինքն էր, թէ որ Աստուծոյ նպատակը հրաշք ցուցնել էր, միայն խօսքով և կամ Մովսէս ծովուն յանդիմանելով որ ճեղքէր եւս առաւել հրաշալի կըլլար, ինչպէս որ Քրիստոս ծովու մը յանդիմանեց։

Բ. «Աստուծոյ պատուէրը կը թողուք, մարդոց աւանդութիւնը՝ կը յարգէք, դուրսը կը մաքրէք պնակին ներսը պիղծ է» ըսող Քրիստոս իւր անունը մարդոց ձեռքով քարոզել սորվեցուց, և մարդոց աւանդութիւնը՝ անկարեւոր չի հասկնալու համար հետեւցուց թէ «անիկայ ընել և զայս ալ չի թողուլ պէտք էր» այսինքն, մէկ թեւօք թռչուն չի կրնար թռչիլ, երկուքն ալ պէտք է։

Գ. «Աղօթքը կ'երկարեն, հագուստնին կը լայնեն ռաբբի, ռաբբի — կանչուիլ կուզեն» ըսող Քրիստոս ինքն ըսած է, «յամենայն ժամ աղօթս արարէք և մի ձանձրանայք» կամ թէ ինքը աղօթքով գիշերը գըլուխ կը հանէր (Ղուկ. Զ. 12.) «երեցունք կրկին պատւոյ արժանի են «կըսէ Պօղոս,

(Ա. Տիմ. Ե. 17.) « Հարկս հասարակաց, պատիւս արժանաւորաց է » 'ի Հարկէ նախաթոռը պիտի նստին իրաւամբ ալ « ռաբբի » պիտի կոչուին ։

Գ. « Ես ի՞նչ բանի կը նմանիմ, ի՞նչու իմ նմանութիւնս կը չինէք » կըսէ․ Դանիէլին ծերի մը պէս կերեւնայ, և աղաւնոյ նմանութեամբ Յորդանան կիջնայ ։

Ե. « Ես նախանձոտ եմ, իմ փառքս ուրիշին չեմ տար » ըսող Աստուածը՝ ատեն եղաւ որ տուաւ « այն փառքը որ ինծի տըւիր ես ալ անոնց տուի » (Յովհ. ԺԷ. 22.) որ ըսել է ամեն խօսք իւր տեղը, նպատակը և վախճանը ունի, զայն չափել գիտցող ազատամիտ հաւատացեալները միայն կրնան գտնել Աստուածային տնօրէնութիւնները, եթէ ոչ, նախապաշարելոց համար, Աստուածային տնօրէնութիւնը հրէական առասպել, և հաստատուն ապառաժը այլանդակ հրէշ կ'երեւնայ․ մանաւանդ երեկոյեան դէմ երկմիտ ու վախկոտ ճամբորդներու համար ։

Ձեռագործը անիծեալ է թէ որ նպատակը Աստուծոյ պաշտօն մատուցանել չըլլայ․ մարդոց աւանդութիւնները չի յարգենք եթէ փարիսեցւոց գաղափարին պէս իրենց անձերուն փառքին համար եղած ըլլայ, բայց թէ որ հոգեւորի համար և նպա-

տակը 'ի սէր Աստուծոյ է, պարտական կը մնամք մեր առաջնորդներուն չի հնազանդելով, (Ա. Կորնթ. ԺԶ. 16. Եբր. ԺԳ. 19.)։

4. — Հոգեւոր երկրպագութիւնը՝ նախապէս ամեն սրբազան պաշտամունքները հոգւոյ աչօք տեսնել ըսել է. հոգւոյ աչքով տեսնել գիտցողը, իւր ըրածը գիտէ, և պարզ գաղափար կունենայ, սրբազան պաշտամունքի վրայօք պարզ գաղափար ունեցողը ազատամիտ և ճշմարիտ հաւատացեալ ըսել է. ուրեմն ազատամիտ հաւատացեալի մը համար կրօնափոխութիւնը՝ աւելորդ և նախապաշարում է։

Լոկ մարմնին հանդիսացողները, իրենք զիրենք բոլորովին արտաքինէն փրկուիլ կը կարծեն և այնպէս կը պաշարուին, լոկ հոգիանանք ըսողներն ալ, երկնային տնօրէնութեան բնական և Աստուածային կարգադրութեան դէմ կռուելով, ներքինը ըլլալէն վերջ արտաքինը չըլլայ ալ կըլլայ կը կարծեն և կրկին կը պաշարուին. այս երկու տեսակէն որն ալ ըլլայ, նախապաշարում է, այս վերջինը՝ անկարելի. այսպիսի գաղափարներով սրբազան պաշտամունքը՝ օր զաւուր կը տկարանայ և հաւատքը կը թուլնայ, վասն զի արտաքին պաշտամունքը վերցնելու համար նախապէս հին և նոր կտակարանը՝ վերցնել

պէտք կ՚ըլլայ, վասն զի մկրտութիւն ու հա-ղորդութիւնն ալ արտաքին նիւթերով են, ջուրն ալ նիւթ է և կը տաքի, իսկ Քրիստոս անհրաժեշտ քարոզած է. ուստի ամեն ներ-քին մէկ մէկ արտաքին գործոց պէտք ունի, թէ բնականապէս, թէ բարոյապէս և թէ առաքինապէս, հաւատքը ներսէն կը բղխի, դը-սէն իր գործքը կուզէ (Մտհ. Ա Դրս Դ. 2. 3.):

Թագաւորաց թագաւորը, յաւիտենա յաւիտեններից հեռատես և մէկ է, իւր աւան-դած Վճիռ կանոնը յաւիտեան կը պահէ, մի միայն անօրէնութիւն մը ունի որ հինը նորոյ փոխած է անգամ մը, այն է՝ բնակա-նէն գրաւոր, գրաւորէն շնորհական, շնորհա-կանին մէջ ալ տեսանք որ գրաւորին մէջ ու-նեցած գնացքը՝ դարձեալ յարգեց:

5. — Այս կէտերուն վրայ ճշմարիտ գաղափար ունեցողները՝ չեն տարակուսիր, վէճ չեն ըներ, չեն երկբայիր, եկեղեցւոյ մէջ խաչ ու աւետարան համբուրելու չեն երկմտիր նախապաշարուելով, վասն զի վախ-ճանը 'ի սէր Քրիստոսի է. մօքէդ անցածը աչքդ տեսնելու կը փափագիս, մարդ մը կուզէ, որ իւր զաւակը՝ կամ եղբայրը տես-նայ, եթէ կարելի չըլլայ, անոր լուսանկա[r] պատկերովը գոհ կըլլայ. իւր հանդուցեա[l] սիրելոյն մէկ յիշատակարանէն սիրտը կ[illegible]

ճմլի. քանի որ մարմնաւորի մէջ այսպէս է,
հապա հոգեւորի մէջ ո՞րչափ. ո՞վ չի փա-
փաքիր երկնային կամարին վրայ Քրիստոսի
խաչին նշանը տեսնել. ո՞վ չի փափաքիր զգա-
ւըն Աստուծոյ սեղանին վրայ և ճերմակ հա-
գուստով երէցները անոր սպասաւորութեան
մէջ տեսնել, Սերովբէից Քերովբէից «սո՛ւրբ
սո՛ւրբ» փառաբանութիւնը լսել. անշուշտ
ամեն հաւատացեալ կը փափաքի. և Աստ-
ուած ալ գիտէ որ մարդկային բնութիւնը
այսպէս է, անոր համար երկրի վրայ, երկ-
նային սրբազան պաշտամունքներ աւանդեց,
Քրիստոս վաւերացուց առաքեալք 'ի գործ
դրին, նախնի սուրբ հարք շատ մը վիճաբա-
նութեանց մէջէն սուրբ գրոց համաձայն ե-
ղած Աստուածային Տնօրէնութիւնները վա-
ւերացուցին, որով գետինը՝ երկինք մը կը
հանդիսանայ հոգեւոր երկրպագութիւնը՝
իմաստասիրել գիտցողներուն համար. չի գիտ-
ցողներն ալ խօսքին սխալ մեկնութիւն տա-
լով ռամիկները կը գայթակղեցնեն (Բ. Պետ.
Գ. 16) իսկ մեք մեր առաջնորդաց պիտի հնա-
զանդինք՝. վասն զի ըրածնին ու աւանդած-
նին բարի վախճան ունի 'ի սէր Աստուծոյ.
Եբր. ԺԳ. 7.):



## ԴԱՍ Ե.

## ՊԱՏԿԵՐ, ԽԱՉ, ԵՒ ԱՆՕԹՔ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ

1. — Եկեղեցին ի՞նչու պատկեր կը դնենք: 2. — Խաչը ի՞նչ է: 3. — Առաքեալներն ալ ու-նէին. Երեսնին կը խաչակնքէի՞ն: 4. — Եկեղեց-ւոյ անօթք ի՞նչ են. Քրիստոս անօթ հրամանց մը տուա՞ւ. Ի՞նչու կօծենք անօթները եւ պատկեր-ները. Նշխարակը ի՞նչ է:

*1. — Եկեղեցւոյն մէջ պատկեր դնելու վրայօք Աստուած ալ հարցնէ թէ ի՞նչու դրիք՝ տալիք պատասխանն ունինք, վասն զի « Ձեռա-գործը անիծեալ է » կըսէր, անանկ ժողովուր-դին միամիտ ատենը, նուրբ պարագայներու մէջ տապանակ ուխտին շինելու հրամանքը ինքն կուտար, նոյնպէս Սողոմոնի տաճարին մէջ Քերովբէներ շինելու* (Գ. Թագ. Զ. 23—29.) *« Ես ինչի՞ կը նմանիմ՝ որ իմ պատկերս կը շինէք » կ'ըսէ, իրօք մենք ալ չենք շիներ կը-ռապաշտից պէս, վասն զի կռապաշտները կը շինէին Դագոն, որ կայ եղած բան մը չէր, չկայի մը պատկերը յարմարցնելով ու նմանե-*

ցընելով կը չինէին, մենք այն իրեն աննմա-
նութիւնը չենք չիներ, բնաւ տեսնող մ'ալ
եղած չէ, սակայն Դանիէլին ծերի մը պէս
երեւցաւ. մարդը պատկերով ստեղծեց «արաս-
ցուք մարդ ըստ պատկերի մերում» ըսելով,
Եզեկիէլին մարդու կերպարանքով երեւցաւ.
(Եզեկ.Ա. 26.) բանն Աստուած մարմին հագաւ,
Հոգին Սուրբ աղաւնիի կերպարանքով իջաւ.
ուստի մենք այս տեսածնուս ու լսածնուս
պատկերը աչքերնուս առաջ ունենալու սըր-
տերնուս մէջ կը փափաքինք, մարգարէից պէս
չենք կրնար տեսնալ, գէթ նկարագրական
եկեղեցւոյն մէջ կը դնենք, անոր ալ հրահան-
գը իրմէն առնելով, որովհետեւ կուռքը և
պատկերը իրարմէն շատ տարբեր են, իրենց
նպատակին և վախճանին համար, ինչպէս որ
Դագոնի կուռքն ալ ձեռագործ էր. բայց
Տապանակ ուխտին առաջ խորտակեցաւ
(Ա.Թագ. Ե. 3—4.) որ ըսել է ո՞րչափ տար-
բերութիւն կայ ձեռագործէ 'ի ձեռագործ:
Աստուծոյ համար ատելի եղածը Դագոնի
նպատակն է, սիրելի եղածը Տապանակին:

Հրեշտակները Ամենասուրբ երրորդու-
թեան խորհրդով Աբրահմին երեւցան, «եր-
բոր տեսաւ մինչեւ ցգետին ծռելով խոնար-
հութիւն ըրաւ, (Ծննդ. ԺԸ. 2.) դարձեալ
հրեշտակը Բաղաամին պատկերով երեւցաւ,

ու տեսածին պէս երկրպագութիւն ըրաւ, (Թուոց. ԻԲ. 31) դարձեալ Յեսու հրեշտակէն երբոր լսեց թէ Տիրոջն զօրավարն է, ինկաւ ու երկրպագութիւն ըրաւ (Յեսու. Ե. 13—14.) Քրիստոս ինքը վաւերացուց և պատկերին յարգը գիտցուց թէ, պատկերը պատկերին տիրոջը պատուէն կը չափուի, (Մարկ. ԺԲ. 16.):

2. — Քրիստոսի խաչին վրայօք շատ բան գրելը աւելորդ է. ինչպէս որ ջնորհական օրինաց մէջ գործածուելիք ամեն բան հնուց իւր սուրբը ունէր, նոյնպէս ալ Քրիստոսի խաչը. որ իրօք վաւերացաւ Քրիստոսի անոր վրայէն կախուելովը:

«Ապա երեւեսցի նշան մարդոյ յերկինս» որ ըսել է այս նշանը բարձր տեղերը երեւնալ կը վայելէ, ինչպէս որ իւր սուրբն ալ բարձր տեղերէ երեւեցաւ. լերան գլուխ բարձր տեղ մը Սարեկայ ծառէն կախուած խոյը (Ծննդ. ԻԲ. 13.) Մովսէսի գաւազանը իւր ձեռքին մէջ կարմիր ծովը ճեղքեց (Ելից. ԺԴ. 16.) Անապատին մէջ Մովսէսին բարձրացուցած օձը և սեղանի վրայի եղջիւրը, արոնք մարդկային ազգի փրկութեան միջոցներ էին. ինչպէս որ այն եղջուրին հասնո յանցաւորը պատիժէն կազատէր, նոյնպէս ալ Դաւիթին տունէն ելած եղջիւրին միջոցա

բոլոր մարդկային ազգը փրկուեցաւ (Ղուկ. Ա. 69.) Մովսէսի բարձրացուցած պղնձէ օձը, որուն նայողները օձերուն խայթուածէն կը բժշկուէին, զոր Մովսէս բարձր տեղ մը դրաւ (Թուոց. ԻԱ. 8.) այն բարձր տեղը Քրիստոսի սեղանը կը նշանակէ գլխաւորաբար, որուն վրայի խաչին հոգւոյ աչքով նայողները սատանայի խայթոցէն պիտի բժշկըւին անշուշտ, քանի որ անիկայ Քրիստոսի բարձրանալուն օրինակն էր. (Յովհ. Գ. 14.)։ Մեր հիմակուան տեսած խաչն Քրիստոսի ճիշդ խաչին ձեւն ու երկնքը երեւնալիք նշանին օրինակն է, որով սատանայէն պիտի ազատինք, ինչպէս որ բոլոր քրիստոնեայք անով կը պարծենան. Նոյն իսկ Պօղոս անկէ զատ ուրիշ բանով չ՚պարծենար (Գաղ. Զ. 14.) ուրեմն ըստ Աստուածային տնօրէնութեան ամեն քրիստոնեայ կը պարտի այն նըշանն եկեղեցւոյն մէջ ամենէն պատուաւոր տեղն դնել։ յԱրեւելքէն մինչեւ յԱրեւմուտք ինչպէս որ կայծակի պէս պիտի փայլի, ուրեմն սեղանին վրայ ու դրանը վրայ կենալու է. միւսանգամ գալստեանը աշխարհիս չորս կողմէն պիտի փայլի, ուրեմն սիւներուն և կամարներուն վրայ գտնուելու է։

Նաեւ ամեն քրիստոնեայ եղող այդ նշանը իւր հասակին ամենէն բարձր տեղը,

այսինքն ճակատին ու կուրծքին վրայ ամեն առաւօտ և երեկոյ, ամեն պաշտամանքի ատեն անհնանալու է. Թէ որ Քրիստոսի խաչին արժէքը գիտէ ու ամեն ատեն մտքէն չի հա-նելուն հաւատքը ունի՛ պէտք է որ դուր-սէն ալ ամեն ատեն ցոյց տայ, վասն զի Աստուածային տնօրէնութիւնն այնպէս կը պահանջէ, որ մտքէն անցածին արտացոյցը դուրսէն երեւնայ. ուրեմն ալ մենք իրաւունք չունինք ըսելու թէ, առաքեալներն երեսնին խաչակնքեցին թէ ոչ, կամ թէ եկեղեցեաց մէջ խաչ կանգնեցին թէ ոչ:

3. — Պօղոս ինքն կը կանչէր թէ «բնու-թիւնը ձեզի չի՞ սորվեցներ որ կնիկներուն բա-ցագլուխ աղօթել չվայելեր» միթէ բնու-թիւնը Պօղոսին իրեն ալ չէ՞ր սորվեցուներ որ մտքէն անցածը դուրսէն ալ երեւնալ պէտք է. Յակոբոս ինքը կ'ըսէր թէ «հաւատք առանց գործոց մեռեալ են», ինքն չէ՞ր գի-տեր որ խաչին հաւատքը իւր ներսը պիտի միայն մեռեալ, թէ որ դրսէն չի կենդանանար գործքով և ապացոյցով, ուստի այս յայտնի աւանդութիւնը չուրացուիր:

4 — Ինչպէս որ պատկեր ու խաչ նւիրա-կան եկեղեցւոյ մէջ գտնուիլ Աստուածային տնօրէնութիւն է, նոյնպէս ալ եկեղեցին մասնա-ւոր անօթներ ունենալ տնօրինած է. սկի՛հ,

խնկաման, բաժակի գաւաթ շինելու հրահանգ տուողը Աստուած էր. (Ելից. ԻԵ. 29.) Նոյնպէս Սողոմոն ալ շինեց (Գ. Թագ. Է. 48.) Քրիստոս ալ այն շէնքով վաւերացուց «իմ Հօրս տունը» ըսելով. սակայն նորին մէջ սա տարբերութիւնը կայ որ, շնորհական օրինաց կը վերաբերի. շնորհականը ազատութեան մէջ է, այնպէս որ հինին ժամանակը ընողները ծառայ էին հին օրինաց, իսկ Նորին սպասաւորները ազատ են և որդի «այսուհետեւ չես ծառայ այլ որդի, եթէ որդի ուրեմն և ժառանգ Աստուծոյ» կըսէ Պօղոս։

Ուստի պէտք չէր որ Քրիստոս Նորէն հրահանգ տար ասոնք շինելու մասին. բաւական է որ եկեղեցւոյն իշխանութիւն տուած է հինը Նորի փոխելու մինչեւ 'ի կատարած աշխարհի. ասոր հետ մէկտեղ եկեղեցին ալ իւր որդիական ազատութեան մէջ հօրը տուած հրահանգը դարձեալ յարգելու և իւր ըրածը անոր հրահանգին դէթ մօտ ձեւն ունենալու է, որովհետեւ հինը նորին ստուերն էր. ստուերն ալ իրի մը մօտ ձեւօք կ'ըլլայ. ահա ասոր համար է որ Նոր ուխտի տաճարը հինին մօտ ձեւ կունենայ։

Հինին մէջ կար Քերովբէներ, Մովսէսի դաւաղանը, մանանային սափորը, օծման իւ-

## ԱՂՕԹՔ ԵՒ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

1. — Աղօթքը քանի՞ տեսակ է. ո՞րն է առանձնականը. ո՞րն է հրապարակայինը։ 2։ — Հրապարակային աղօթքը ի՞նչ է. ի՞նչ գաղափարի պէտք ունի։ 3. — Զի հասկցած լեզուվ աղօթքը օգուտ կընէ՞։ 4. — Ուրիշէն սորուած աղօթքը ի՞նչ օգուտ ունի։ 5. — Զայնաւոր ծնծղաներով աղօթել պէ՞տք է։

*1. — Ժամերգութիւն կամ աղօթք երկու տեսակ է, առանձնական և հրապարակային։*

*Առանձնականը մարդուս ամեն ժամանակ ինքն իրեն ընելիք աղօթքն է, որ կը պարտի իւր սենեակը մտնել և դռները գոցելով ծածուկէն աղօթել, այսինքն հոգւոյ աչքը աշխարհային զբաղմունքէն գոցելով մտքէն աղօթել, ո՛չ թէ փարիսեցական գաղափարով մէկ քանի մարդիկ աւելի տեսնան ըսելով, հրապարակներուն մէջ երկար ատեն աղօթել, վասն զի անանկներուն համար եղած վարձքը, այն տեսնողներէն եղած գովեստն է, երկինքէն ուրիշ վարձք մ՚ալ յուսալու իրաւունք չունի (Մատթ. Զ. 5.)։*

*Հրապարակային աղօթքը Աստուծոյ*

տաճարին մէջ եղած աղօթքն է «մտից 'ի տուն քո, և երկրպագից 'ի տաճար սուրբ քո երկիւղիւ քո» (Սաղմ. Ե. 6.) «ինծի իմ Հօրս տունը կենալ պէտք է» (Ղուկ. Բ. 49.) դարձեալ Քրիստոս Դաւիթին խօսքը վաւերացնելով թէ «քու տանդ նախանձը զիս կերաւ» կը յանդիմանէ աղաւնի վաճառողները. իմ Հօրս տունը աղօթքի տուն է» ըսելով (Յովհ. Բ. 16—17.) աշակերտները միաշաբաթին օրը կը ժողովէին հաց կտրելու (Գործք. Ի. 7.):

2. — Հրապարակական աղօթքը գլխաւորաբար եկեղեցին ժողովուրդի համար կաղօթէ և անոր իշխանութիւնը անոր է, զի եկեղեցւոյն մէջ եղած աղօթքը իւր հետ սրբազան պաշտօն ունի, որուն համար սրբազան պաշտօնեայք կարգուած են (Թուոց. ԺԶ. 3. Գործք. Զ. 4.) Ազգ սուրբ, քահանայութիւն հոգեւոր (Ա. Պետ. Բ. 5.): Ժողովուրդը միայն իրաւունք մ'ունի ունկն դնելով աղօթակցելու, Աստուծոյ արքայութիւնն ու արդարութիւնն խնդրելով. միւս խնդիրներու համար եկեղեցին կաղօթէ, անոր համար է որ մաղթանք, աղօթք և քարոզ՝ պաշտօնէից է յատկացեալ պաշտամունքի ատեն, զի Աստուած հնուց 'ի վեր այնպէս տնօրինած է. ինչպէս որ Աբրահամ կաղաչէ Աստուծոյ

որ եթէ տասը մարդ գտնուին քաղաքը չ'կոր-ծանի . (Ծննդ. ԺԸ. 23.) Եղիան կաղօթէ անձրեւի համար (Յակոբ. Ե. 18.) Մովսէս և Ահարոն բազկատարած կ'աղօթեն լեռան գլուխ բանակին չ'յաղթուելուն համար (Ելից. ԺԷ. 11.) Քրիստոս կաղօթէ իւր աշակեր-տաց համար (Յովհ. ԺԷ. 9.)։

3. — Մի՞թէ կասկած կա՞յ թէ Աստ-ուած չ'հասկցած լեզու մը ունի . հին օրինաց քահանայները ներքին խորանին վարագուրին ետեւ կաղօթէին , ժողովուրդը անոնց ձայնն ալ չէր լսեր . Մովսէս լեռանը գլուխը ժո-ղովուրդին համար կ'աղօթէր , ժողովուրդը ի՞նչ գիտէր թէ Մովսէս ինչ կըսէր . անոնք Ամաղեկացւոց հետ պատերազմելնին կը նա-յէին . Նոյնպէս Պօղոս կը գրէ Հռովմայեց-ւոց , Կորնթացւոց , Եփեսացւոց ևայլն տե-ղեր , որ իրեն համար ալ աղօթեն . մի՞թէ ա-նոնք Պօղոսին գիտցած լեզուո՞վը պիտի աղօ-թէին թէ իրենց գիտցած լեզուովը . անշուշտ իրենց գիտցածովը , վասն զի Աստուած ա-մեն լեզուէն ալ գիտէ ։

Անուրանալի ճշմարտութիւն մը կայ որ ամեն մարդ կը պարտի իւր ըրած աղօթքը գիտնալ . ինչպէս որ Պօղոս ալ ըսած է թէ «Ի՞նչպէս ամէն պիտի ըսեն» . Նոյնպէս Նարե-կացին ալ կըսէ « սաղմոսերգութենէս ի՞նչ օ-

գուտ. քանի որ պիտի չհասկնամ» սակայն բնական և ընդհանուր հաւանութիւն կայ որ երկու չարէն փոքրը կ'ընտրուի, ասոր համեմատ չ'հասկցողի մը համար ըսելը աղէկ է քան թէ չ'հասկնալուն վրայօք յուսահատելով քաշուիլը. մանաւանդ թող թէ գրաբառը, հապա աշխարհաբառը անգամ չհասկցողն դարձեալ իր ըրած գրաբառ աղօթքէն ճաշակ մը կրնայ առնելն փորձով տեսնուած ու գիտցուած է, թէ որ ախորժակով ու գաղափարով մտիկ ընէ կամ աղօթէ. վասն զի ամեն մարդ իւր մայրենի լեզուին մէջէն աղօթքի վերաբերեալ բառերուն շատերն կը հասկնայ (1):

4. — Ոմանք կըսեն թէ « ուրիշէն սորուած աղօթքը բան մը չէ, հապա ամեն մարդ ինքնին իրեն աղօթք ընելու է». այս ալ անարժէք վէճ մ'է, վասն զի առանց ըսողները պէտք է յիշեն որ հայր մերը սորվեցնողը Քրիստոս ինքն է. նոյնպէս Յովհաննէս Մկրտիչ ալ իւր աշակերտներուն աղօթք կը սորվեցնէր (Ղուկ. ԺԱ. 1.) առանց ըսողները իրենք ալ ուրիշէն սորված աղօթք-

(1) Քարոզ և խրատ արդէն ժողովուրդին գիտցած լեզուովը կըլլայ, ուրեմն « եկեղեցին կարդացուածները չեմ հասկնար ըսելով կրօնափոխութեան զոհ երթալը աւելորդ է:

ներ կերգեն , բայց բնականապէս հակառա-
կասիրութեամբ կործանող մը դիմացի հաս-
տատուն Միացողին ալ կործանումը կուզէ ,
որպէս զի ամեն մարդ իրեն յարմարի , սա-
կայն ինչպէս որ Թագաւորական կանոններ
կան , նոյնպէս եկեղեցական հոգեւոր կանոն
կենալ պէտք է , որուն համար Քրիստոս եկե-
ղեցականներն ժողովուրդէն կ'որոշէ , Քրիս-
տոսի եկեղեցւոյն միութեանը և ընդհանրա-
կանութեանը կը վայելէ որ մէկ ազգի մը
մէջ միեւնոյն եկեղեցական կանոնը տրուած
ըլլայ , անոր համեմատ Հայաստանի մէջ
գտնուած եկեղեցի մը այսօր ինչ որ կաղօթէ,
նոյնն կաղօթէ Ասիոյ մէջ գտնուած հայ եկեղե-
ցի մ'ալ միեւնոյն հիման վրայ հաստատուած.
այն է՝ Տէրունական աղօթքին իմաստովը , ինչ-
պէս որ յայտնի է բոլոր ըրած աղօթքն . ուս-
տի եկեղեցին կաղօթէ ժողովուրդին համար
որ Աստուծոյ անունն սուրբ պահեն . Տէրը
զանոնք պահպանէ . անդաստան կընէ Քրիս-
տոսի խաչին խորհրդով աշխարհիս չորս կող-
մին համար որ չարէն փրկէ և փորձութեան
մէջ չ'տանի , նոյնպէս ժողովուրդը կ'աղօթէ
եկեղեցւոյն յարմարելով և ինքն իրեն սրտէն
բղխած աղօթքներ ալ ընելով , որուն մէջ
նախ կը խնդրէ երկնից արքայութիւնն , և
կը հաւատայ որ միւս պականներն ալ Տէրը

պիտի աւելցնէ իւր խոստումովն և եկեղեցւոյն խնդրանօքը . ուրեմն « այն աղօթքն . ինծի համար ալ եղած ըլլայ » ըսողն ջանալու է աղօթքի ատեն աղօթատեղիէն դուրս չմնալ ։

5. — Եկեղեցական պաշտամանց կարգին մէջն է բարձրաձայն աղօթք և դպրական երաժշտութիւնք. « 'ի բերանոյ մանկանց տղայոց հաստատեցեր զօրհնութիւն » . ( Սաղմ. Ը. 2. ) Քրիստոս տղաքը չարգիլեց իրեն երթալու , վասն զի բնականապէս անոնք պարզամիտ կ'ըլլան . սո՛ւրբ , սո՛ւրբ երգել հրեշտակային փառաբանութիւն է , պարզամիտներուն կը վայելէ այն պաշտօնն ։ Նաև երբեմն զանգակ , ծնծղայ , երգեհոն Աստուած տնօրինած է մարդոց սրտերն բարւոյն յափշտակելու համար « փող հարէք 'ի գլուխ ամսոց յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց » Դաւիթ և Իսրայէլի բոլոր տունը նուագներով ու ծնծղաներով տիրոջը առջեւ կերգէին ( Բ. Թագ. Զ. 5.) « երգերով ու սաղմոսներով » ( Եփես. Ե. 19. ) ։



# ԴԱՍ Է.

## ՈՂՈՐՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԺԱՄՈՑ

1. — Ողորմութիւնը ի՞նչ է : 2. — Հրապարակայինը ո՞րն է. եկեղեցին ի՞նչու զանձանակի եւայլն միջոցներով նուէրներ կընդունի : 3. — Քրիստոս ի՞նչու ըսաւ «ձրի առէք ձրի տուք» : 4. — Ջրի տալիքը ո՞րն է : 5. — Թէ տաճարին եւ թէ պաշտօնեից տալու պարտք ունի՞ ժողովուրդը : 6. — Առաքեալները ալ կընդունէի՞ն :

*1. — Ինչպէս որ ամեն թռչունի երկու թեւ պէտք է որ կարողանայ թռչիլ, նոյնպէս քրիստոնէին մէկ թեւն աղօթք միւս թեւն ալ ողորմութիւն է, քանի որ ապացուցուած է ամեն մէկ ներսէն բղխածին դուրսէն ալ մէկ մէկ նշանները երեւնալ, նոյնպէս աղօթողին գործքն ալ ողորմութեամբ կապացուցուի, վասն զի աղօթքը ձրի լինելուն համար ամեն հաւատացեալ քիչ շատ կաղօթէ, բայց շատերն ալ իրենք զիրենք կը խաբեն թէ աղօթեցինք, զի առանց ողորմութեան աղօթքն մեռեալ հաւատք է, և այս ողորմութիւնն ալ դարձեալ աղօթքին պէս երկու կերպ է, մէկը ծածուկ*

և մէկն ալ հրապարակային՝ եկեղեցւոյն մէջ ։

Ծածուկ եղած ողորմութիւնն յայտնի է որ պատկերակից մը պատկերակցոյն ցաւակցիլ պէտք է ։

Իսկ հրապարակային եղած տուրքն և ողորմութիւնը մէկ մը տուողն պարտքէն կազատի « տուք և տացի ձեզ » երկրորդ ուրիշին շնորհական նախանձը կը գրգռէ ( Ա. Կորնթ. ԺԲ. 31. ԺԴ. 1. ) ։

2. — Հրապարակային ողորմութեան վրայօք Աստուածային տնօրէնութեան մասին հաստուն տեղեկութիւն չունեցողներ կը պաշարուին . Թէ « եկեղեցւոյն մէջ աղօթքի ատեն գանձանակ պտըտիլն , տուրք և ողորմութիւն տրուիլն մեղք է , կամ Քրիստոս անանկներն տաճարէն փախցուցած է . մանաւանդ կը գովեն շողոքորթաբար մկրտութեան և այլն եկեղեցական պաշտօնի մէջ ըստակ չառնող զեկեղեցականներն , սակայն Աստուածային տնօրէնութիւնն կեղծ լուսաւորութենէ չախորժիր , վասն զի ինքն տնօրինած է նախապէս քահանայատուրքն . ինչպէս որ Աբրահամ տուաւ Մելքիսեդէք քահանային ( Ծննդ. ԺԴ. 20. ) ։

Քրիստոս աղաւնավաճառներն փախցուց, բայց գանձանակին մէջ ով ինչ ձգելուն ալ դիտողութիւն ընելով մէկ լումայ մը ձգող

այրի կինը գովեց (Մարկ. ԺԲ. 41.), ուստի թէ եկեղեցւոյն մէջ և թէ դուրսը եկեղեցականաց տրուածը ոչ մկրտութեան, ոչ հաղորդութեան և ոչ ալ պատարագի ու պաշտօնի գին են, զի անոնք չափով ու կշռով չեն տրուիր որ՝ գին ունենան, հապա այն ժամուն անոնց արտաքին աշխատութեանց ու քրտանց վարձք են «արժանի է մշակն վարձու իւրոյ» (Ա. Տիմ. Ե. 18.). աս ալ այնպէս է որ ոչ եկեղեցականի մը պահանջն է իբր շահավաճառ. հապա ժողովուրդին պարտքն է իբր հոգեւոր տուրք։

3. — Թէ որ եկեղեցական մը լոկ շահու նպատակաւ այն ծանր լուծին տակը մտնէ, կամ լոկ շահու համար ամեն մարդու վրայ ձեռք դնէ, անշուշտ «վարձկան է և ոչ է հովիւ» այն պաշտօնը իրեն համար շահավաճառութիւն եղած կ՚ըլլայ, սակայն Աստուծոյ տանը ծառայելու բարի ուխտով երբոր կ՚աշխատի, ժողովուրդին պարտքն է ամեն պաշտօնի մէջ վարձատրել զայն։ Եկեղեցական մը հարստանալու համար ագահութեան ծառայելու չէ; բայց թէ որ ժողովուրդը տայ՝ առնելու է որ ժողովուրդը իրեն պարտական մնալու ինքը պատճառ եղած չըլլայ. առնելէն վերջը ինքն ալ ողորմած և հիւրասէր ըլլալու է (Ա. Տիմ. Գ. 2.)

թիւն տրուելիք ատեն մատուցուածները հոգեւոր նուէրներ են . եկեղեցւոյն պահանջը չէ , հապա ժողովուրդին պարտքն է . եկեղեցին երբէք չըսեր ապաշխարողի մը թէ « այսչափ ստակ տուր որ քեզի հաղորդութիւն տամ » կամ թէ հիւանդի մը թէ « տուր որ դամ քեզի համար աղօթեմ » . ըսել է՝ ձրի առած է, ձրի կուտայ , ձրի կը խրատէ , ձրի կը քարոզէ . բայց աւետարանի քարոզելու համար տաճարէն պիտի ուտէ ոչ թէ առեւտրական զբաղմունքներէն ։

Ուստի ինչպէս որ ըսինք , աղօթող ժողովուրդ մը աղօթքին հաղորդակից ըլլալու համար ժամոց կը վճարէ , և ժամարարը այն ժամանակից եղողներուն համար յատկապէս կաղօթէ . մկրտուիլ , հաղորդուիլ , աղօթել , վերջապէս Աստուածային պարգեւներու համար ճշմարիտ հաւատքով եկեղեցւոյն դիմելը Աստուծոյ առաջ երթալ ըսել է, Աստուած ալ հրամայած է որ իւր առջեւը ելլել ուզողը ձեռքը պարապ չելլէ , ( Ելից. ԻԵ. 5. ԼԵ. 2. ) ։

5. — Սեղանը վառելու ձէթ , իւղ , խունկ , ծիրանիներ , ոսկի , արծաթ, տաճարին համար կը տրուին , նոյնպէս ալ վարձք և նուէր պաշտօնէից համար . « առէք պատարագս և մտէք 'ի սրահս նորա » ( Սաղմ.

Ղե. 7.). Քրիստոս կը պատուիրէ բորոտին որ Մովսէսին հրամայած ընծայն տայ քահանայից (Մատթ. Ը. 4:). որով կը վաւերացնէ ժողովուրդին առ եկեղեցականս եղած պարտքը, թէ որ մինակ անոր բժշկուած ըլլալը վկայելու համար եղած ըլլար, որ բորոտը համարձակ պտըտէր, պէտք էր որ քահանայն ձրի վկայէր, և Քրիստոս ալ չի վաւերացնէր, ինչպէս որ ինքն ալ մեծարեց այս կէտը և վաւերացուց Աստուածային տնօրէնութիւնը թէ ինքը տեսնելու եկողները պարապ ձեռօք ելլելու չեն, վասն զի մոգերուն բերած ոսկի, կնդրուկ ընծաները ընդունելով, անոնք ուրիշ ճամբով իրենց երկիրը դարձուց, Հերովդէսին ընելիք սպառնալիքէն ազատ պահելով. Նոյնպէս խնկաբեր կանանց բերած խունկն ու իւղն ընդունեց և երեւեցաւ անոնց, որք 'ի պատիւ թաղման բերած էին:

6. — Աստուածային նուէրը երբէք չարգիլուիր, ինչպէս որ առաքեալներն ալ կառնէին հիւանդաց համար աղօթք ըրած տեղերնուն ալ (Գործք. ԻԸ. 8. 10.). Նոյնպէս աղօթքը իրեն հետ ողորմութիւն կուզէ որ լսելի ըլլայ, ինչպէս որ Կոռնելիոսին կանչուեցաւ «քու աղօթքդ ու ողորմութիւնդ յիշատակի համար Աստուծոյ առջեւ ելան.

(Գործք. Ժ. 4.). Նոյնպէս Պօղոս կը պատուիրէ որ հոգեւոր բաներու մէջ հաղորդակից եղողը մարմնաւորին ալ պիտի ըլլայ, (Հռովմ. ԺԵ. 27. Ա. Կորնթ. Թ. 11.) ուրեմն մուրացկանը անգամ եկեղեցին գալուն իր մուրացածէն կրցածին չափ ժամոց, ողորմութիւն և հոգեւոր տուրք տալու պարտք ունի, ըստ այսմ կարողութիւն ունեցողները ամեն օր տալու, և ամեն պարտք եղածին ալ մասնակից ըլլալու պարտաւոր են, զի այսօր կուտենք վաղը նորէն կ՚ուզենք, այսօր առեւտուր կընենք կը շահինք, վաղը նորէն կուզենք զնոյնն. ուրեմն այսօր ալ պիտի տանք, վաղն ալ պիտի տանք, որովհետեւ մարդը ընկերական վիճակի մէջ տալու համար ստեղծուած է, և ոչ թէ լոկ անձին համար: «տուք և տացի ձեզ»:

Յիշեալ պատճառներու համար է որ եկեղեցին ժամոցի, գանձանակի և այլն տուրքերու սկզբունքներ բռնած է, ըստ Աստուածային տնօրինութեան, որպէս զի ժողովուրդը պարտական չ՚մնալու և պաշտօնեայք ապրելու բարի միջոց մ՚ըլլայ. որովհետեւ սուրբ գիրքը մեզի կը սորվեցնէ որ Աստուծոյ յառաջ ձեռքերնիս պարապ չելլենք. հապա ամեն սրբազան պաշտամունքի առեն ողորմութեան մասնակցինք, որ այն օրը ա-

մենքս ալ այն կատարուած պաշտօնին ու աղօթքին մասնակից ըլլանք. Թէ որ հարուստ ենք առատօրէն, թէ որ աղքատ ենք ըստ կարեաց ։

Պօղոս կը պատուիրէ որ հարուստները առատաձեռն ըլլան (Ա. Տիմ. Զ. 17—19.) տաճարին չորեքշաբթեան տուրքն Քրիստոս ինքն ալ վճարեց. այս պատճառաւ տօնի և տաղաւարի օրեր մասնաւոր տուրքեր ալ կը պահանջէ եկեղեցին մեզմէ, օրինակի համար Ծննունդին հրապարակային եկեղեցական տուրք մը կը ժողվէ վասն զի մոգերուն ընծային այն օրը կը յիշուի. Զատկին չորեքշաբթեանի, գերեզմանի ուխտով տուրքեր կը ժողվուին, վասն զի խնկաբերութիւն կանանց է, որ ըսել է բնաւ յարեւանցի բան մը սահմանած չէ եկեղեցին, բոլորն ալ Աստուածային տնօրէնութեններէն առած է ։



# ԴԱՍ Ը.

## ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՍՈՒՐԲ ՊԱՇՏՕՆ

1 . — Պատարագ ի՞նչ ըսել է ։ 2 . — Քահանայական զգեստը չի վերջացա՞ւ ։ առաքեալք ըրի՞ն ։ 3 . — Ի՞նչ վկայութիւն կայ ։ 4 . — Երկրի վրայ երկնային շարժման պէտքը ի՞նչ է . քահանայական եւ եպիսկոպոսական զգեստները ի՞նչ կը նշանակեն ։ 5 . — Պատարագիչին զգեստաւորիլը ի՞նչ է ։ 6 . — Շնորհական օրհնաց զարդարանք պէ՞տք է ։ 7 . — Ժամարարին ատեան գալը ի՞նչ է . « հրեշտակաց բնակարան » ի՞նչու կերգէ ։ 8 . — Վարագուրին գոցուիլը ի՞նչ է . բացուիլը ի՞նչ կը նշանակէ ։ 9 . — Վերաբերումի մէջ եւ անկէ ետքը ի՞նչ կայ ։ 10 . — Ննջեցելոց յիշատակութիւն ինչո՞ւ կնենք պատարագի ատեն ։

*1. — Պատարագ ըսելով նախ զոհ, բ. նուէր կիմացուի. Քրիստոսի մարմինն ու արիւնը մատակարարուելուն համար Քրիստոսի զոհողութիւնը և անոր սեղանը կը պատրաստուի. այն միջոցին հոգեւոր նուէրներ ալ վճարուելուն համար առաքելական եկեղեցւոյն մէջ կատարուած սրբազան պաշտօնին*

մէջ այս երկու տեսակ պատարագը իւր Աստուածային հրահանգովը կը ներկայանայ ամբողջապէս ։

2. — Հինը նորէ փոխուած ըլլալուն, և անոնցմէն նշանախեց մը կորսուած չէ լինելուն կասկածներս փարատած է. ուրեմն խորհելու չենք մեզի ըսողներուն թէ «Քրիստոս մէկ անգամ պատարագ եղաւ, քահանայութիւնը վերջացաւ» և կամ «առաքեալները կրօնական պաշտօնի մէջ տարբեր հագուստ չէին հագնիր» (1). վասն զի թէ որ հաղորդութիւն չկայ՝ պատարագը վերջացաւ, թէ որ կայ, ոչ Նոր ուխտի պատարագը և ոչ ալ Նոր ուխտի քահանայութիւնը վերջանալ կարելի է, որովհետեւ ասոնց համար Աստուած «յաւիտենական կանոն» ըսած է ։ Անշուշտ առաքեալներն ալ մեզի պէս ըրած ըլլալու են ։

3. — Այսօր Քրիստոսի եկեղեցին չունի շարժում մը որ սուրբ գրոց վկայութեամբ չըլլայ. ուրեմն անկարելի էր որ առաքեալք սրբազան պաշտօնի մէջ սրբազան հագուստները հերքէին, վասն զի Աստուած Մովսէսին ու Ահարոնին պատուիրած ըլլալը գիտէին. ըստ այսմ շատ աւելի հաւանական է թէ Պօղոսին Տիմոթէոսէն ուզածը եկեղեցա-

---

Այնուատէթլէր 96 և 161 երեսները ։

կան հագուստ մ'է, վասն զի կը գրէ թէ «Մարկոսը հետդ բեր, սպասաւորութեան օգտակար է, Տիւքիկոսը Եփեսոս ղրկեցի, փիլոնը, գիրքերը, մագաղաթները հետդ բերես (Բ. Տիմ. Դ. 9—13։

Մարկոսին սպասաւորութիւնը, փիլոնը, գիրքերն ի՞նչ են արդեօք, անձրեւէն ու տաքէն պատսպարուելու համար ուրկէ ըլլար ծածկոց մը կրնար գտնել, բայց եկեղեցական հագուստ մը ամեն անգամ չէր չինուեր ուզած տեղը. ապսպրած Մարկոսը, Ասիացի Տիւքիկոսը, Տիմոթէոսը, Տիտոսը, Կարպոսը եւայլն բոլորն ալ աստիճանաւոր պաշտօնեայ մարդիկ և Պօղոսի աշակերտնե-րէն էին (Գործք. Ի. 1—4. Եփես. Զ. 21. Կող. Դ. 7.)։

Պաշտօնեայ սպասաւորը գիրքերը փի-լոնին հետ ապսպրելէն գործը կը յայտնուի, (մեր խօսքը ոմանց համար չէ, որ աշխարհա-բառի մէջ վերարկու տաճկերէնի մէջ եաղմուրլուք թարգմանած են ֆէլօն բառը. թէեւ փիլոնն ալ վերարկու է, սակայն վերարկուն ընդհա-նուր է, փիլոնը մասնաւոր եղած էր առ հա-սարակ պաշտօնապէս, որովհետեւ Պօղոս ե-կեղեցւոյ պաշտօնեաներէն կուզէ մասնաւո-րաբար. կամ գիտուք թէ առաքեալք առ հա-սարակ հագուստով կատարած ըլլային պաշ-

տօնները՝ և կամ Բ. և Գ. դարերու մէջ ալ այնպէս ըլլար, միթէ յանցա՞նք էր եկեղեցւոյն, որ միշտ հեթանոսական հալածանաց մէջ էր. սակայն քրիստոնէութիւնն իւր համարձակ ազատութիւնը գտնելէն վերջ հինը նորի փոխուելու մասին թերութիւն բանեցնելը՝ Աստուածային սուրբ գրքէն և անոր կարգադրութենէն պակսեցնել և Քրիստոսի «ոչ եկի լուծանել» ըսելը սուտ հանել է։

4. — Նախապէս հայր Աստուած տնօրինած է, Քրիստոս վաւերացուցած է և առաքեալք 'ի գործ դրած են, երկրի վրայ երկնային շարժումներ. վասն զի մարդը երկնքի համար ստեղծուած ըլլալուն պատճառաւ ճշմարիտ հաւատացեալ մը միշտ մտքէն կը փափաքի այն շարժումներուն. մտքէն անցած [illegible]ռուեալ հաւատքը արտաքին գործքով կը կենդանանայ, ասոր համար Քրիստոսի եկեղեցին Աստուածային տնօրէնութենէն առնելով Քրիստոսի մարմնոյ և արեան սուրբ և անմահ պատարագի խորհուրդը երկնային սրբազան ներկայացումով մը կը ներկայացնէ, քահանայական և եպիսկոպոսական հագուստներով։

« Այլ փառք լուսնի և այլ փառք աստեղ » ըլլալուն համար եպիսկոպոսականը աւելի շքեղ ըլլալ կը վայելէ, ասոր հետ մէկ-

տեղ դարձեալ քահանայական պաշտօն կըսուի , որ սկիզբը և վախճանը միեւնոյն է , որուն մէջ պարունակուած է՝ հոգեւոր տեսութիւն և հոգեւոր երկրպագութիւն գիտցողի մը համար դրախտէն մինչեւ Գողգոթայի գլուխ , և անկէ մինչեւ Քրիստոսի միւս անգամ գալստեան խորհուրդին ձեւը , իսկ Թերահաւատի մը կամ Նախապաշարեալի մը համար տեսարանի մը պէս կերեւնայ ( 1 ) :

Ե. — Նախապէս քահանայն կ՚զգեստաւորի Դաւիթին մարգարէութիւնը յառաջ բերելով որ կ՚ըսէ « քահանայք քո զգեսցին զարդարութիւն , ( Սաղմ. ՃԼԱ. ) այն միջոցին դպիրք կերգեն Աստուծոյ խորհրդին վրայ

( 1 ) Ո՞րչափ պիտի Նախապաշարուին լոկ հոգիանանք ըստողները , հաւատքը առնելով գործքը թողողները , մէկ թեւօք թռչիլ կարելի կարծողները , սակայն ատիկայ Աստուածային տնօրէնութեան և մարդկային բնութեան համեմատ արարչապետէն աշխարհիս սկիզբէն մինչեւ հիմայ ըստեղծուած մարդոցը համար անկարելի է , թէ որ ասկէ վերջն ալ Աստուած զբնութիւնն արտագրելով նորէն առանց աչքի և առանց ականջի լոկ սրտով տեսակ մը նոր մարդիկ որ պիտի ստեղծէ ան ալ չենք գիտեր . ուրեմն մենք դեռ աղամային սերունդէն ստեղծուած ըլլալնուս համար Աստուածային տնօրէնութիւնը ձեռքէ չենք կրնար ձգել . որ մեր իրեն մատուցանելիք պաշտօնը բընութեան ու խելքի մօտ տնօրինած է :

զարմանալով «խորհուրդ խորին անհաս անսկիզբն» որուն մէջ կը պատմուի խօսքով և գործքով զարդարանք վերին պետութեան և Ադամայ՝ Տիրական փառօք ստեղծուիլն նազելի դրախտին մէջ, և ապա մեղանչելով թզենիի տերեւներով ծածկուիլն, սրբազան խորհուրդներով Ահարոնին ոսկեթել հագուստըն, և անոր Նորի փոփոխութիւնն (Ելից. ԻԸ. 4. ԼԹ. 1.)։

6. — Անոնց յաւիտեան մնալիք և Նորի փոխուելիք լինելն Պօղոս ալ կը պարզէ քանիցս «Նոր ուխտ ըսելով». առաջինը հինցուց, այն որ հիննայ կորսուելու մօտ է, (Եբր. 8. 13.). դարձեալ կը թուէ առաջին ուխտի սրբութեան խորանը, բուրվառը, աշտանակը, քերովբէները ևայլն, որոցմէ կը հետեւցնէ թէ ասոնք առանց արիւնի չէին (Եբր. Թ. 1. 14. 18.). ուրեմն Նոր ուխտն ալ առանց արիւնի չէ (Նոյն. 23.) «Քրիստոս չէ թէ ձեռագործ տաճարը մտաւ, որ ճշմարիտին օրինակն է. հապա իսկ երկինքը (Նոյն 24.). ուրեմն հիմակուան տաճարն և անոր զարդարանքներն բուն ճշմարիտ երկինքն չէ, հապա ճշմարիտ երկնից օրինակն է, և այս օրինակն ալ յաւիտեան է, հինէն այս Նորին օրինակն ու ստուերն (Եբր. Ժ. 1—3.) անասունի արիւնով կ՚ըլլար, բայց զոհը վեր-

նալու համար հիմայ ալ նոր տաճարն որ ճշմարիտ երկինքի օրինակն ունի, Քրիստոսի արիւնն պէտք է կենալ. տարին անասուն մը մորթել պէտք չէ, Քրիստոսի մէկ անգամ զոհ լինելն բաւական է, որովհետեւ մէկ մարդ մը տարին քանի մ' անգամ չմեռնիր. (Նոյն 27.), որուն համար այս նորին աւելի փառք կը վայելէ, վասն զի հինն ծերացած ու մեռնելու մօտ էր, տարին անասուն մը մեռնելու կանոնն մեռաւ Քրիստոսի մահուամբ, իսկ յաւիտենական կանոն աւանդուած ըլլալուն համար Քրիստոսի նոր արեան խորհրդին որ հոգիի պաշտօն է՝ հինէն աւելի փառք կը վայելէ, (Բ. Կորնթ. Գ. 7.). որովհետեւ սեղանն ու վարագոյրն վերացաւ կործանեցաւ ու մեռաւ, Աստուած նորէն կանգնեց (Գործ.ք ԺԵ. 16.) այս նոր կանգնումն փառաւոր կերպով ներկայացնելու սկզբմամբ ժամարար քահանայն ըստ Աստուածային տնօրէնութեան զգեստաւորեալ կը ներկայանայ երկնանման տաճարին ատեանը, ուր կերգուի «չարչարանօք քո սուրբ միածնիդ նորոգեցան արարածք ամենայն»:

7. — Ժամարարին զգեստաւորիլէն մինչեւ ատեանի լուացումն «լուացից սրբութեամբ զձեռս իմ, (Սաղմ. ԻԵ. 6.) նախորդհամարին մէջ յիշուած խորհուրդներն կը պա-

բունակեն, այս երկնային խորհուրդն Աստուած հրեշտակներէն աւելի եկեղեցւոյն յանձնելուն համար ժամարարն ժողովուրդին կաղաչէ որ իրեն համար աղօթեն, անկէ վերջ սարկաւագի առաջնորդութեամբ և մարգարէական հրահանգով. « զի առաջնորդեսցեն ինձ և հանցեն զիս ՚ի լեառն սուրբ և ՚ի յարկս քո » ըսելով սուրբ սեղանն կելլէ ։

Հրեշտակաց բնակարան և մարդկան քաւարան կոչելով կ'երկրպագանէ, վասն զի մարդիկ մեղաց քաւութիւնն Աստուծոյ տաճարին մէջ կառնեն մեծաւ մասամբ մաքաւարին նկատմամբ. Նաեւս քաւութեան համար Քրիստոսի թափած արեան խորհուրդն հոն կը կատարուի, քանի որ հոն տեղ ժողվուած են երկու երեք հոգի Քրիստոսի անունով, Քրիստոս հոն անոնց մէջ է. քանի որ Քրիստոս հոն է՝ հրեշտակաց բնակարան է, « հրեշտակք մատեան և պաշտէին զնա » (Մատթ. Դ. 11.) ։

8. — Ժամարարը սեղանին երկրպագութիւն ընելէն վերջը վարագոյրը կը գոցուի, սպասը կը դրուի, որ կը նշանակէ Մարիամին Գաբրիէլի աւետեօք յղութիւնը, և Քրիստոսի մարմին հագնելով կատարեալ Աստուած և կատարեալ մարդ մեր մէջ գալը ։

Այն պաշտօնը լրանալէն վերջ վարագոյրը կը բացուի, ժամարարը խնկարկելով ժողովուրդին մէջ կը պտըտի, Քրիստոսի երկինքէն իջնալ ու մարդոց հետ ըլլալն գործքով ներկայացնելու, երկնային օրինակաւ «որ թարգմանի ընդ մեզ Աստուած» (Մատթ. Ա. 23.) և այս միջոցիս կ'սկսի գիրք, աւետարան, քարոզ, հանգանակ հաւատոյ կարդացուիլ, այնպէս որ Քրիստոս մեր մէջ երեւնալէն վերջը հինին մօտ ծածկուած ըստուերներն ու մարգարէութիւններն նորին մէջ բացուեցան, Ամենասուրբ Երրորդութիւն մեզի յայտնուեցաւ, կը հաւատամք Արարիչը, անոր Որդին և Սուրբ Հոգին երեք անձամբ մի Աստուածութիւն. կը հաւատամք մի միայն ընդհանրական և առաքելական եկեղեցի, յարութիւն մեռելոց և յաւիտենական կեանք։

9. — Ժամարար քահանայն սեղանը ելլալէն մինչեւ վերաբերումը՝ դրախտէն մինչեւ Բեթղեհեմի այրը մեզի կը ներկայացնէ. վերաբերումէն նորէն կ'սկսի Քրիստոսի մոգերէն ընծայուիլը, ինչպէս որ սկիհն սեղանին վրայ դրուած ատեն ժամարարը սարկաւագի ձեռքէն առնելով կը խնկարկէ, վերջը ապասը սկիհին վրայ բանալով, ինքը մէկ կողմը կը կենայ որպէս զի ժողովուրդք տես-

որ է մեր ճաշակելիքն, և ըստ այնմ այն հացն ու գինին ճշմարիտ մարմին և ճշմարիտ արիւն Քրիստոսի ընելուն աղաչանքը կ'ընէ, և այս մեջոցին դպիրք կերգեն «Որդի և Հոգի Աստուծոյ» որ Ամենասուրբ երրորդութիւնն յիշուած կ'ըլլայ միասնական Աստուածութեամբ։

10. — Այս սուրբ խորհուրդն աւանդելէն զկնի սոյն միջոցիս մարմինը յարեան թաթխուելէն առաջ կ'սկսի յիշատակ ննջեցելոց և կենդանի բարերարաց, հայրապետաց, քահանայից, վարդապետաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց համար մասնաւոր աղօթք մը (1) վասն զի պատարագի խորհրդին մէջ, նախապէս Ադամէն մինչեւ Քրիստոսի վերնատան մէջ ըրած տնօրէնութիւնն, խաչելութիւնն, մահն, թաղումն և յարութիւնը կը պատմուի. անոնց մէջ ալ անցեալ առաքելոց և մարգարէից յիշատակութիւնք հարկաւ պիտի լինին, ինչպէս որ Քրիստոս պատուիրած է իրեն գլխին վրայ իւղ թափող կնոջ մը յիշատակն չ'մոռցուիլ (Մարկ.

(1) Այս տեղ դարձեալ Քրիստոսի եկեղեցւոյ հակառակորդաց բերանը սրտերնուն յաւելուածէն խօսք դուրս տալ սկսաւ թէ «ննջեցելոց յիշատակութեան վրայօք սուրբ գրոց մէջ յիշատակ մը չ'կայ (Այնուատէթ Պապ. Թ.)

ԺԴ. 9.) միթէ առաքելոց, մարգարէից և այլոց սրբոց յիշատակները չմնացուցի՞ն ալ պատուիրած չե՞ն լսեր, որոնք չարչարուեցան և նահատակուեցան, ու իրենց թանկագին արիւնն ու ճիգը թափեցին Քրիստոսի սիրոյն համար ։

Նաեւ Քրիստոս հոգին աւանդած ժամանակ շատ սուրբերու մարմիններ յարութիւն առին, շատերուն երեւեցան (Մատթ. ԻԷ. 52.) ասոնք ալ երեւնալու ատեն հարկաւ անուն անունով յիշուեցան. Քրիստոսի մարմնոյ խորհուրդ քանի անգամ որ ընենք անոր մահն պիտի պատմենք (Ղուկ. ԻԲ. 19.) անոր թաղումը նշանակող գլխին վրայ թափուած իւղն յիշատակութեան արժանի բարիք սեպուեցաւ, Քրիստոս ալ գիտէր որ աւետարանին մէջ արդէն կը կարդացուի, և կլինալ պիտի մնանի. սակայն յատկապէս յիշատակել ալ պատուիրեց ըսելով «իրեն յիշատակ ըլլալու համար» ուրեմն եկեղեցին պարտաւոր է այդ երկնային խորհրդի մէջ եկեղեցւոյ ննջեցեալ և կենդանի բարերարներն յիշատակել. Նոյնպէս ծնողքը իւր զաւկին, տէրը ծառային, եղբայր եղբօր և աշխատակից ազգականներն շատ անգամ բարերարն է, պէտք է ժամանակին յանձնեն որ յիշատակէ. Ինչպէս որ Եղիան ալ պաշտօնն մը մէջ զԵբրա-

*համ, զԻսահակ եւ զՅակոբ յիշատակեց, որոնք մեռած էին (Գ. Թագ. ԺԸ. 36.) ասոր համեմատ մենք կը յիշատակենք, (Տե. Նախ. Գլու. ԺԵ. 4):*

---

## ԴԱՍ Թ.

### ԲԱՐԵԽՕՍՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑ ԵՒ ՀՐԵՇՏԱԿԱՑ

1. — Սրբոց բարեխօսութիւնը քրիստոնէից մէջ ընդհանրացած չէ՞: 2. — Նախնիք ի՞նչպէս կը գաղափարէին. մարդոց եւ Աստուծոյ մէջ Քրիստոսէն զատ միջնորդ կա՞յ: 3. — Սուրբերը մեռած չե՞ն. Քրիստոս «եկայք առ իս» չ՞ըսեր: 4. — Սուրբերը գէշ մարդոց համար կը բարեխօսե՞ն: 5. — Աստուած իւր փառքը ուրիշին կուտա՞յ: 6. — Սրբոց հոգիներ ամէն տեղ ներկա՞յ են: 7. — Առանց բարեխօս կանչելու աղօթենք չըլլա՞ր: 8. — Սուրբերն ալ աստիճան ունի՞ն:

*1. — Ոմանք՝ սրբոց և հրեշտակաց բարեխօսութեան վրայօք «այդ մասին սուրբ գր-*

ողն ալ. ուզեն կ'ընդունին չուզեն չեն ընդունիր » որ ըստ ոմանց ըսել կ'ըլլայ թէ «Քրիստոս ալ հօր Աստուծոյ ալ կողմը նստած միջնորդ մ'է կը բարեխօսէ, Հայրն ալ ուզէ կ'ընդունի չուզէ չ'ընդունիր ». այս եզրակացութիւնն ո՞ւր կը հասնի, միթէ Որդին արարա՞ծ է, քաւ լիցի, այլ համազօր և համաբուն. ուրեմն մենք Պօղոսին Քրիստոսի վրայօք ըսած միջնորդութիւնն ու բարեխօսութիւնն անոր մէկ անգամ Աստուծոյ ու ընդհանուր մարդկութեան մէջ տեղ զոհ ըլլալով մեզի իւր Աստուածութեան հետ հաշտեցնելուն յատուկ միջնորդութիւն կը ճանչնանք, որ միշտ կայ բարեխօս մինչեւ աշխարհիս վերջը. հեթանոսաց համար ալ միջնորդուած է, թէ որ այսօր հաւատան, իսկ հաւատացելոց համար մէկ անգամ զոհ եղաւ: օրը անգամ մը կամ տարին անգամ մը ըլլալ կարելի չէ, վասն զի երրորդութեան մէջ համակամ և համազօր է. Քրիստոսի միջնորդական բարեխօսութիւն զատ խնդիր է, սրբոց և հրեշտակաց բարեխօսութիւն զատ խնդիր է, Քրիստոսի համար եղածն արդէն թէ աւանդութիւն ընդունողաց՝ համար, թէ չ'ընդունողաց համար ընդհանրացած է. անիկայ սրբոց բարեխօսութիւնն հերքելու համար փաստ չէ ։

3. — Սուրբերը մեռած չեն, հրեշտակներու պէս են, չեն կրնար մեռնիլ « քանզի և ոչ մեռանիլ ևս կարեն, զի հաւասար հրեշտակաց են և որդիք Աստուծոյ . . . զի ամենեքին նմա կենդանի են. (Ղուկ. Ի. 36—38.)։

Աստուած առանց միջնորդի կրնար ըսել. « եկայք առ իս » ըսած է, բայց առանց միջոցի իրեն գացողը չ՚ընդունիր. մահուան և ազատութեան հրովարտակին թագաւորէն կելլէ, բայց տեղակալէն դատաւորներուն, անկէ կուսակալին տեղեկագրական վաւերացմամբ միայն կելլէ այն հրովարտակը դուրս. Աստուած առաջէն մինչեւ վերջը մարդոց հետ այս ընթացքով վարուած է. Կորխին առանց Մովսէսի և Ահարոնի միջոցաւ իրեն դիմելը չ՚ընդունեց (Թուոց. ԺԶ. 1—13.)։

4. — « Սուրբերն գէշ մարդոց բարեխօս չեն ըլլար » ըսածն ալ տղայական խօսք մ՚է. ամեն մարդ գիտէ որ այդպէս է. աս ալ կը նմանի այն խօսքերուն թէ « սուրբ հոգիէն որ չծնի ջուրէն ինչ օգուտ, նորէն որ մեղանչէ հաղորդութենէն ի՞նչ փրկութիւն ։»

Այս կէտը յայտնի է որ անզեղջ և անդարձին համար ոչ թէ սրբոց աղօթք՝ նոյն իսկ Աստուծոյ ողորմութեան դուռն ալ գոց է, ինչպէս որ ըսած է « այդ խոստապարտա-

նոց ժողովուրդին համար ինծի մի՛ բարեխօսեր, քեզի չեմ լսեր (Երեմ. Է. 16.) ըսել է թէ խստապարանոց չեղողին համար որ աղօթէ պիտի լսէ. մեր խօսքն կռապաշտից և անդարձից համար չէ, հապա զղջալու ու դառնալու մօտեցած կամ դառնալ ուզող կամ դարձողներուն համար. ուղղակի Աստուծոյ աղաչելէն զատ սրբոց և հրեշտակաց միջոցաւ աղաչելն ալ պարտք և Աստուածային տնօրէնութեան կարգի մէջ լինելն է, Աստուած ամեն բան առանց միջոցի կրնար ընել, ամեն բան միջոցաւ ըրած է։

5. — Աստուած իւր փառքը ուրիշին չէր տար զի նախանձոտ էր, չտուաւ կուռքերուն, բայց տուաւ իրեններուն, «այն փառքն զոր դու ինծի տուիր, ես ալ անոնց տուի, (Յովհ. ԺԷ. 22.) ասիկայ ըսողն Քրիստոսն է. ուրեմն մենք զղջալու ատեն սուրբերը բարեխօս կանչելու չենք երկմտիր թէ Աստուած մեզի կը բարկանայ. ալ մեք մեզի անարժան դատելով, «բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց» կերգենք, զի անոնց խօսքերն Աստուծոյ առաջ բարի են, չերգելու կը վախնանք՝ թէ Աստուծոյ գնացքին և տնօրէնութեանը դէմ մեղանչելով Կորխին պէս կը պատժուինք, մենք մեզի սուրբ համարածի պէս լինելով։

Աբրահամ ժողովուրդին համար աղօթեց, Աստուած անոնց մէջէն հարիւրին քսան զեղջ խոստացաւ դէշ մարդոց համար ալ թէ որ գղջային (Ծննդ. ԺԸ. 32.) Մովսէս ու Ահարոն աղօթեցին ժողովուրդին համար և Աստուած լսեց (Ելից. ԺԷ. 11.) Եղիան աղօթեց անձրեւի համար (Յկբ. Ե. 18.) Ստեփաննոս աղօթեց դէշ մարդոց համար ա՛լ որ ներուի յանցանքնին (Գործք, Է. 59.), հրեշտակներ, սերովբէնէր և քերովբէններ «սուրբ, սուրբ, տէր զօրութեանց» կերգեն, նահատակներ և մարտիրոսներ իրենց վրէժին համար կ՚աղօթեն (Յայտ. Զ. 9.) արդարոց հոգիներ հրեշտակի պէս են, յարութեան որդիներ են (Ղուկ. Ի. 36.)։

6. — Աստուծոյ հոգին ամեն տեղ ներկայ է, ուր տեղ որ աղօթենք կը լսէ, հիմայ կրնան մեզի հարցնել թէ «սրբոց հոգիներն և հրեշտակք ալ ամեն ժամանակ ամեն տեղ ներկա՞յ են որ մեր աղօթքը լսեն»։ Այս կէտին բովանդակութիւնը պարզ է. որովհետեւ Աստուած մեզի յայտնած է։ Թէև Աստուած արարիչ է, սուրբեր և հրեշտակներ արարած են, հարկաւ արարիչն արարածէն առաջ է, սակայն այսչափ մը գիտենք որ սրբոց հոգիներուն և հրեշտակներուն՝ աշխարհիս մէջ գտնուած մարդոց վրայօք տեղեկութիւն մը

քաղելու իշխանութիւն տուած է. մէկ մը Աստուած ինքը ուզած ժամուն, մէկ մ'ալ մարդիկ զանոնք փնտռած ատեննին, որ ըսել է մեզի պէտք եղած ատենն ներկայ են, վասն զի փոքր արարածներ չեն, որդիք Աստուծոյ են (Ղուկ. Ի. 36.) «եւ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել» (Յովհ. Ա. 12.) Աստուծոյ հոգին վկայութիւն կուտայ մեր հոգիին, որ Աստուծոյ որդիներ և Քրիստոսի ժառանգորդակիցներ ենք (Հռովմ. Ը. 16.) մարդոցմէն իրենց վրէժին համար աղօթող ու պատասխան առնողներն՝ անոնց յանցանքներուն ներել տալու համար ալ իշխանութիւն ունեցած կը լինին. անոնք մեր վրայօք տեղեկութիւն ունին, որովհետեւ ապաշխարող մեղաւորի մը դարձին վրայ կ'ուրախանան (Ղուկ. ԺԵ. 10.) թէ որ չգիտնան ի՞նչպէս պիտի ուրախանան։

Ուրեմն պէտք եղած ատենը ներկայ են և կը գիտնան, ուրիշ ամեն ժամ և ամեն ժամանակ ներկայ լինելնին ու չլինելնին ճառելը մեզի վերաբերեալ չէ։

7. — Սրբոց հոգիներ հրեշտակաց պէս միշտ կենդանի լինելնուն կասկած չունինք. ամենագիտին Աստուծոյ գնալէն կը սորվինք որ ամեն բան մէկ մէկ միջոցի տակ առած է, անոր համար աղօթքի ատեն սուրբերուն բա-

բեխօս կը կանչենք . անանց խօսքերն բարի ,
Աստուած ինքն յինքեան բարի , անանց բա-
րի խօսքերն ալ միջոց, մեր աղօթքը առ Աստ-
ուած հանելու . որովհետեւ Աստուած իւր
գործողութիւնը հրեշտակաց և սրբոց միջո-
ցաւ կը կատարէ . « այն հրեշտակին հնազանդ-
եցիր , ինչու որ անիկայ քու յանցանքդ չներ-
ըեր , քանզի իմ անունս անոր վրայ է . (Ելից.
ԻԳ. 21 ) « մէկը թէ որ տեսնայ թէ իւր եղ-
բայրը ներելի մեղք մը գործեց , թող աղէ
ու Աստուած անոր կեանք պիտի տայ այն
մահացու չեղած մեղքին համար , » ( Ա. Յովհ.
Ե. 16.) մարդ մը՝ ինք մեղքէ ազատ ըլլա-
լու է որ եղբօրը ներելի մեղացը համար Աս-
տուծոյ աղաչելու համարձակութիւն ունենայ.
այս անմեղութիւնն ալ մեղաց աշխարհէն ել-
լող սրբոց հոգիներու և հրեշտակներու առե-
լի կը վայելէ , և զղջման ուխտն ալ ամեն
մեղքը ներելի վիճակի մէջ կրնայ բերել , ուս-
տի զղջումի հասած քրիստոնեայ մը կը պար-
տաւորի սրբոց բարեխօսութիւնն միջոց ճանչ-
նալ իւր աղօթքն առ Աստուած հասցնելու ։

Աստուած ինքն իրեն կարող է ամեն
բան ընելու , կրնար որ ինքն իրեն վարձատ-
րէր ու պատժէր , սակայն հրեշտակին ձեռ-
քը պատժեց , վերջն ալ ըսաւ « սուրդ քաշէ
բաւական է « Բ. Թագ. ԻԴ. 16.) Սամուէլի

մեռնելէն վերջն Սաւուղ թագաւորն զանիկայ բարեխօս կանչեց , Սամուէլ՝ խօսքը լսեց, բայց Սաւուղին մեղքը մահացուի պէս՝ Աստուծոյ երեսէն ինկած լինելուն համար չի բարեխօսեց ( Ա. Թագ. ԻԸ. 14. ) խնդիրն հօն է որ մեռած Սամուէլն չմեռածի պէս Սաւուղին ներկայացաւ . Նոյնպէս Եղիան վերնալէն վերջ Յովրամին լուր ղրկեց , ( Բ. Մնացորդաց ԻԱ. 12. ) դարձեալ Մովսէսն ու Եղիան մեռած էին , Թափօր լեռն ներկայացան ( Մարկ. Թ. 3. ) հրեշտակն ձիու վրայ նստած երեւնալով կը բարեխօսէ Երուսաղէմին համար ( Զաքարիա Ա. 7—13. ) ։

8. — Սուրբեր և հրեշտակներ Աստուծոյ աթոռն են « ես սուրբերուն ու հեզերուն մէջ կը բնակիմ » Նոյնպէս Սերովբէից ու Քերովբէից վրայ կը բնակի ( Եսայի Զ. 1—2. ) որ բարեխօսութեան մասին կերպով մը այն սուրբերուն ամենն ալ հաւասար են , սակայն « այլ փառք լուսնի այլ փառք աստեղ , այլ փառք հրեշտակաց և այլ փառք մարդկան » ըսած է Պօղոս . անոր համար Մարիամ կոյսին աւելի յարգանք կ'ընծայէ Քրիստոսի եկեղեցին , վասն զի անոր աթոռ Աստուծոյ լինելն բոլոր սուրբերէն աւելի սքանչելի է . աթոռին վրայ նստողին երկրպագանելը աթոռին առաջ անկանիլ է . անկանիլ ու երկիր-

պատգամներ իրարմէ տարբեր են. մենք այս-չափ և ամէն ատեն վկայութեամբ որոց և հրեշտակաց բարերարութիւններն կ'ընդունինք, մինչ Աստուծոյ առաջ մեղմէ ատեն համարձակ հաւատալով. բայց բարերարութիւն հերքողներ՝ չունին դէթ մէկ համար մը վկայութիւն թէ «Աստուծոյ աթոռ կանչուած սուրբերը բարեխօս կանչելն մեղք է»։



## ԴԱՍ Ժ.

### ՍՐԲՈՑ ՄԱՍՈՒՆՔ

**1. — Սրբոց բարեխօսութիւնը անոնց հոգիներէն էր, բայց հող դառնալիք ոսկորները ի՞նչու համար կը յարգուին. Եւ ինչո՞ւ համար եկեղեցին անոնք ալ միջոցներու կարգին մէջ դասած է։**
**2. — Այս միջոցն ալ տնօրինա՞ծ է Աստուած։**

*1. — Ասոր գլխաւոր վստահութիւնն, անոնց Աստուծոյ աթոռ ըլլալէն յառաջ եկած է* (1) *և անոնց միջոցաւ հրաշագործու-*

---

(1) *Ասիկայ չ'ընդունողները « սուրբ գրոցմէ վկայութիւն մը չունինք » կ'ըսեն. բայց Աստուածային տնօրէնութիւն ալ ունինք (Այնուատէթ Պատ. ԺԲ.) նաեւ թէ՝ «գէշ մարդոց ոսկորներն ալ սրբոց մասունք ըսելով կը վաճառուէր, այնինչ հայրապետը հերքեց » եւայլն կ'ըսեն, բայց ատանկ ըսողները հերքելու տեղ կը հաստատեն, որովհետեւ խառնաշփոթները՝ հայրապետք իրօք հերքած են, բայց սա կէտը լաւ խորհելու ենք թէ եթէ սրբոց իրական մասունքէն օգուտներ և հրաշքներ տեսած չ'ըլլային, անոր կեղծը յարգանք կը գտնէ՞ր, կը վաճառուէ՞ր, ժողովուրդը հետա-*

թիւնները ալ գործուած լինելն ապացուցուած է. « Ես հեզերուն ու խոնարհներուն մէջ կը բնակիմ (Եսայի ԿԶ. 2.) « Ես անոնց մէջ, դուն ալ իմ մէջ. (Յովհ. ԺԷ. 23.) Եղիսէյին գերեզմանին վրայ դրուած մեռեալը կենդանացաւ, (Դ. Թագ. ԺԳ. 20.) Աստուծոյ աթոռ եղող անձանց ոսկորներուն դագաղն ալ չէր կրնար մօտիկնալ. « գնաց անոր մեռելը՝ գտաւ, ճանբուն վրայ փռուած; էշն ու առիւծն մեռելին քով կեցած էին. առիւծն չէր բզքտեր, այն մարգարէն եկաւ, Աստուծոյ մարդուն մեռելը վերցուց » (Գ. Թագ. ԺԳ. 28—29.) այսպիսիներ նախնի սուրբ հարք ալ վաւերացուցած են։

Մենք հին և Նոր կտակարանին նայինք 'ի սէր դեռաբոյս լուսաւորելոց. ուստի չի վախնանք ու չի պաշտպանուինք թէ սրբոց մասունքներն պատուելով, անոնց պատկերներն յարգելով Աստուծոյ կամացը դէմ գործած կ'ըլլանք, վասն զի Աստուած անոնց ոսկորները կը պահէ, և անոնցմով կը փառաւորուի ալ Դաւիթին ըսածին համեմատ « Աստուած փառաւորեալ է 'ի սուրբս իւր » և. կամ թէ « պահէ զամենայն ոսկերս նոցա և մի 'ի նոցանէ ոչ կորիցէ » (Սաղմ. ԼԳ. 19.)։

---

քըրքիր կ'ըլլա՞ր. հարկաւ նախ իրականէն օգուտ տեսած են որ, վերջը կարելի է կեղծեօք խաբելու աշխատողներ եղած են։

2. — Աստուած հնուց 'ի վեր այսպիսի միջոցները իւր անօրէնութենէն դուրս ձգած չէ. Մինայն անապատը լեղի ջուրն անուշցնելու համար Մովսէսին փայտ մը աւանդեց, որ ջուրին մէջ թաթխելով անուշցնէ (Ելից. ԺԵ. 25.) Դաւիթ, Սաւուղ՝ երբոր աղօթք կընէյին Եփուտը վեր կը վերցնէին (Ա. Թագ. ԻԳ. 9. Լ. 7.) Եփուտին ու տապանակին առաջ կայնող ու աղօթողներուն ձայնը լսեց, նոցա խնդիրները կատարեց, Մովսէսին գաւազանը միջոց էր. Նոյնպէս Եղիային վերարկուն (Դ. Թագ. Բ. 8.) Եղիսէին գաւազանը. (Նոյն Դ. 29.). Քրիստոս խուլին ականջն թքնելով բացաւ, կոյրին աչքը բանալուն ցեխ քսեց ու սեղովմի աղբիւրէն լուանալ հրամայեց. այսպիսիներ խօսքով և «եղի՛ր» ըսելով հրամայողական կերպով որ ըլլային ժողովուրդին աչքին աւելի ազդու կ'ըլլային, քան թէ ջուրին մէջ փայտ խօթել, խուլին ականջը թքնել, կոյրին աչքին ցեխ քսելէ, բայց միջոցը ձեռքէ չիձգելու ապացոյց է. առաքելոց շուքին անգամ կը փափաքէին քրիստոնեայք, (Գործք. Ե. 15.) անոնց քրտինքին թաշկինակովը անգամ բժշկութիւն կ'ըլլար, (Գործք. ԺԹ. 11—13.). տասներկուտարուան դեռատես կնիկն Քրիստոսի քղանցքին փափաքեցաւ, որով հաւատքը կեն-

դանացաւ. որ ըսել է հաւատացեալի մը հաւատքին կը նայի՝ ուխտ երթալ, սրբոց մասունքներն միջոց հաւատալ, Քրիստոսի խաչովը ջրօրհնէք կատարել, եկեղեցւոյ հաղուստներն աչքին ու երեսին քսել, «Հաւատք քո կեցուցին զքեզ» թէ որ կը հաւատաս, արդէն ամեն մարդ գիտէ որ զօրութիւնն Քրիստոսէն է, ինչ բանի որ կը դիմէ հաւատացող մը՝ զայն Քրիստոսի աթոռ ճանչնալով և Քրիստոսի զօրութիւնն հոն տեղ հաւատալով է. Քրիստոսի զօրութիւնն ալ իրեն գրաւողը ճշմարիտ հաւատքն ու պարզ գաղափարն է. Թէ որ կենդանի հաւատք ունիս, 'ի սէր Քրիստոսի մատուցած պաշտօնդ սուրբ է, պարապ տեղ երկբայութեամբ մի պաշարուիր, Թէ որ փրկութիւն կը փնտռես, փրկութիւնն մարդուս սրտին մէջէն կ'սկսի, առանց քեզմէ սկսելու Աստուծմէն ալ քեզի օգուտ չի կայ, թէ որ քեզմէ ալ սկսի, միջոցներ տնօրինողը Աստուած ինքն է։

---

## ԴԱՍ ԺԱ.

### ՏԱՂԱՒԱՐՆԵՐ ԵՒ ՏՕՆԻ ՕՐԵՐ

1. — Տօնի օրեր ի՞նչ են։ 2. — Նոր ուխտին մէջ ալ կա՞յ։ 3. — Նշանաւոր օրեր ի՞նչ են. առաքեալը ի՞նչու երբեմն օրերու որոշման դէմ կը խօսի։ 4. — Սուրբեր ի՞նչու կը տօնենք։ 5. — Կիւրակիէն զատ պահելու օր կա՞յ. անիկայ ի՞նչպէս պահել պէտք է։

1. — Մեզի համար նշանաւոր օրեր ունենալ Աստուած տնօրինած է, Քրիստոսով հինը նորի փոխուած և առաքելոցմով 'ի գործ դրուած է և եկեղեցին ալ վաւերացուցած է։

Աստուած՝ տնօրինած լինելը յայտնի է, «շուտ ըրէք վասն զի Տիրոջը զատիկն է» (Ելից. ԺԲ. 11.) առաջին պտղոց տօն, տաղաւարահարաց տօն, նաեւ եօթն օր տօնի համար հրամայուեցաւ, (Ելից. ԻԳ. 16.) Սողոմոն տաճարն որ շինեց նաւակատեաց տօն որոշեց (Գ. Թագ. Ը. 63.)։

2. — Հին օրինաց մէջ նշանաւոր օրերու համար Աստուածային աւանդութիւններ շատ են և հինն ալ նորի փոխուելիք լինելն անու-

բանալի է․ Աստուածային աւանդութեան յաւիտենականութիւնն ալ ճշմարտութիւն է։

Այս տօնի օրերու համար Եսային մար֊գարէացած է․ « Ինծի պարապ տեղը ընծա֊ներ մի՛ բերէք, ձեր խունկը ինծի պիղծ է, ձեր ամսագլուխներուն ու շաբաթներուն չեմ նայիր, ձեր տօնախմբութիւնն անգամ անօ֊րէնութիւն է . . . ինչու որ ձեռքերնիդ ա֊րիւնով լեցուն են, (Եսայի Ա. 13—15.) հոս տեղ շաբաթն ալ մէջն առնելով կը համրէ որ ըսել է ձեռքն արիւնով լեցուն մարդա֊պանին տօնախմբութենէն ու շաբաթէն զըզ֊ւողն, ձեռքն ողորմութեամբ և բերանն ա֊ղօթքով լեցուն եղողներուն ալ տօնէն կ՚ա֊խորժի։

3. — Նշանաւոր օրեր եկեղեցւոյն հո֊գևւոր ուրախութիւններն են, « փող հա֊րէք 'ի գլուխ ամսոց, յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց » (Սաղմ. ՁԱ. 3.) քանի որ Իսրայէլին աւանդուեցաւ ամեն մէկ վը֊տանգէ ազատելնուն համար զատ զատ տօնի օրեր, ամեն մէկ նշանաւոր պարագայներու մէջ նոյնպէս. հապա մեզի ո՜րչափ կը վայե֊լէ Քրիստոսի ծննդեան. Զատկի, խաչելու֊թեան, այլակերպութեան և այլն նոր տօնի օ֊րեր, որ Քրիստոսով նորոգուեցանք. « ուստի տօն կատարենք նոր խմորով » (Ա. Կորթ. Ե.

8. ) արդէն եկեղեցւոյն վաւերացուցածն ալ նոր և վաւերական տօներ են, ոչ թէ հրէութենէ և հեթանոսութենէ նոր դարձող քրիստոնէից պէս խառնաշփոթ գաղափարներ, որ իրարու կերակուր չէին ուտեր, զանազան օրեր զանազան աւանդութիւններ կը շփոթէին, ինչպէս որ Պօղոս կը յանդիմանէ և կը խրատէ, « այն որ կուտէ չուտողը թող չի անարգէ . . . մէկը մէկ օրը մէկալէն աւելի կը սեպէ, թող ամեն մարդ իւր միտքն հանդարտեցնէ (Հռովմ. ԺԴ. 3—5.) մէկը ձեզի թող չ'իշխէ օրերուն համար, անոնք գալիքներուն ստուերներն էին (Կող. Բ. 16.)։

Պօղոս ոչ թէ կը պատուիրէ որ Աստուծոյ տնօրէնութիւն, եկեղեցւոյ իշխանութիւն ու սուրբ աւանդութիւն բանի տեղ չի դնելով անկանոն զօրքի պէս խառնաշփոթ ժողովուրդ մը ըլլանք, հապա հինն նորի փոխուելուն կարեւորութիւն տանք, ստուերին տեղը լոյսը յարգենք, հրէական ու հեթանոսական իշխանութիւնը թողլով, Քրիստոսի եկեղեցւոյն իշխանութեան հնազանդինք, նորա միութիւնն, սրբութիւնն, ընդհանրականութիւնն և առաքելականութիւնն յարգելով միակերպ ապրինք, եթէ ոչ նոր տօնի օրեր առաքեալներն ալ կը յարգէին. « պէտք է որ այս առաջիկայ տօնը Երուսաղէմի մէջ

ընեմ» ( Գործ. ԺԲ. 21. ) մինչեւ Պէնտէկոստէ Եփեսոս պիտի կենամ ( Ա. Կորնթ. ԺԶ. 8. ) որ հոգեգալստեան տօնն է ։

Թէ որ օրերու և հոգեւոր կանոններու կերպին գալու ըլլանք , առաքեալը նաւ չի ըսեր թէ « սկիզբն բարի և Աստուծմէն տնօրինուած ըլլալով հինը նորի փոխուած 'ի սէր Աստուծոյ տրուած՝ վախճանն բարի աւանդութիւններուն ու եկեղեցական իշխանութիւններուն մի հնազանդիք » ։

4.— Սուրբեր եկեղեցւոյն բարերարներն են, բարիք ընողին յիշատակն չ'մոռնալ պարտք է և Քրիստոսէն պատուիրուած է ( Դ** Ը. 10. ) . յիշատակը չ'մոռնալն յարգանք տալ է, յարգելը զայն սիրելէն յառաջ կուգայ , սիրած մարդուն պատիւ տուողն անոր սիրուն համար ժամանակ մը գործէն կը դադրի , անոր հետ ուրախութիւն կ'ընէ , անոր համար եկեղեցին ֆուր սիրելի սուրբերը կը տօնէ , անոնց մէջէն աւելի նշանաւորներուն տօներն կը պահէ ալ , և կասկած մ'ալ չունի թէ անոնց տօները պահելուն համար Աստուած պիտի բարկանայ . կասկած չունենալէն զատ , վստահութիւն ալ ունի թէ կանոնաւոր եկեղեցւոյ մը զաւակ և Աստուածային տնօրէնութիւն յարգող ժողովուրդ մ'է ։

5. — Թէ որ կիւրակի պահել ըսենք

չիտակ խօսելով ճիշդ տէրունական կիւրակին ալ հրէից պէս նախապաշարեալ կերպով պահել չ'պատկանիր մեզի . Աստուած ոչ թէ մինակ մեր հոգին կը պաշտպանէ , հապա զայն իւր մէջ կրող մարմինն ալ կը պաշտպանէ . եօթներրորդ օրն հանգստութեան օր աւանդեց որուն մէջ անասուններուն անգամ հանգստանալ կը պատուիրէ . Թէ որ բարիք գործելուն վրայօք խօսիլ պէտք ըլլայ , կիւրակէն բարիք գործել ու միւս օրեր չ'գործել կամ չարիք գործել բնաւ պատուիրող մը չ'ըլլար , հապա կիւրակին սուրբ պահելու համար միւս օրերէն տարբերութեան գլխաւոր վախճանն հանգստութիւն է . հանգըստութեան ու հոգեւոր պարապութեան ձախորդութիւն չտուող ըստ հարկին երբեմն անմեղ գործերու համար զայլս բամբասելը հրէական նախապաշարում է , Քրիստոս անանկներուն « կեղծաւորներ » ըսաւ ( Մաթ. ԺԲ. 3—4. Ղուկ. ԺԳ. 15.) ։

Կիւրակի օր՝ մարմնաւոր գործերէն դադարիլ հոգեւոր գործերու պարապիլ պէտք է . հոգեւոր գործերն են , եկեղեցի երթալ , աղօթք ընել , քարոզ լսել , ողորմութիւն տալ , գիրք կարդալ եւայլն ։

Խանութ բանալ , ճամբայ երթալ , այգի գործել , տուն շինել և այլն՝ զմարդ յոգնեցընողներն ալ մարմնաւոր գործեր են ։

# ԴԱՍ ԺԲ.

## ՊԱՀԵՑՈՂՈՒԹԻՒՆ

1. — Պահեցողութիւնը ի՞նչ է. Աստուծոյ Ադամին տուած պատուէրէն պահք կը հետեւի՞։ 2. — Եկեղեցին ի՞նչու այնպէս կերգէ: 3. — Քրիստոս պահել հրամայա՞ծ է։ 4. — Ծո՞մ է թէ պահք. եկեղեցին իրաւունք ունի՞ օրեր որոշելու։ 5. — Աստուած բան մը հրամայա՞ծ է ասոր վրայօք։ 6. — Պահեցողութեան գլխաւոր վախճանը ի՞նչ է։ 7. — Հայրապետք որ կորոշէի՞ն։ 8. — Որոշած օրեր բացառութիւն ունի՞ն։ 9. — Մեծ պահքը ի՞նչ է։ 10. — Ի՞նչ խորհուրդներ ունի. ամեն մէկ շաբաթներ ի՞նչ կը նշանակեն։ 11. — Ուրիշ գլխաւոր ի՞նչ վարդապետութիւն ունի։

*1. — Պահեցողութիւնը՝ մարդոց հոգւոյն ու մարմնոյն մէջ խաղաղութիւն ձգելու միջոցն է, և այս միջոց՝ դարձեալ Հօր Աստուծմէն սահմանուած, Քրիստոսէն վաւերացած, առաքեալներէն 'ի գործ դրուած և Քրիստոսի եկեղեցիէն մեզի աւանդուած է* (1)։

---

(1) *Զարմանալու բան է. չ'կայ մարդ մը՝ որ ըսէ թէ «խորոված միսը* (քիւլ պաստի) *զիս կը վնասէ, և անիկայ իմ ատամներ և բոլոր մարմ-*

նի է. անոր համար եկեղեցին մեծի պահոց առաջին շաբաթի երկրորդ կիւրակէի շարականը, « որ զօրէնս սրբութեան պահոց նախ 'ի դրախտին աւանդեցեր » ըսելով կ'սկսի ։

2. — Հոս տեղ մեր գիտնալու էական կէտը այս է որ պահեցողութիւնը հոգիին ու մարմինին մէջը խաղաղութիւն ձգել է. Ադամը առաջին անգամ գերբնական շնորհօք ստեղծուեցաւ որուն համար դեռ մեղք չ'կար, հոգին մարմնոյն հետ խաղաղ էր. պահեցողութիւնը մարդուս մեղանչելէն վերջը աւանդուիլ պէտք էր, որովհետեւ սուգի ալ նշանակութիւն ունի (Եսայի. ԿԱ. 3.) Ադամ սուգ պահելու բան մը չունէր որ Աստուած անոր վրայ սուգ դնէր. ասոնց նկատմամբ Աստուծոյ՝ Ադամին պատուիրածը մեր հիմակուան պահելիք պահքին ճիշդն էր չենք կրնար ըսել. թէ որ « Աստուած արդէն գիտէր Ադամին մեղանչելիք լինելը, անոր համար սուգը կանուխէն աւանդեց » ըսենք աս ալ սխալ կ'ըլլայ. որովհետեւ Աստուած Ադամը տիրական փառօք ստեղծեց. « զոր զարդարեալ փառօք եդ 'ի դրախտին փափկութեան » կերգէ եկեղեցին բուն բարեկենդանի շարականին սկիզբը, և իրօք ալ այնպէս է (Ծննդ. Բ. 7—8.) ։

Քանի որ Ադամ անմահ փառօք ստեղծ-

կը պահեցողութեանէն ու աղօթքէն զատ ու-
րիշ բանով չ'ըլլար, (Մատթ. ԺԷ. 20.) որն
փրփրողական ախտ մ'էր ։

4. — Տոմապահութիւնն առաջուց սահ-
մանուած, Քրիստոսէն հրամայուած և առաք-
եալներէն 'ի գործ դրուած ըլլալն յայտնի է.
սակայն ի՞նչ է ծոմը և ի՞նչ է պահքը, և
կամ թէ Քրիստոսի եկեղեցին անոնց համար
օրեր որոշելու իրաւունք ունի՞ թէ ոչ, այս
կէտերն ալ անոնց նպատակէն և վախճանէն
չափելով կրնան պարզուիլ ։

Ամեն կորուստ ունեցողներ իրենց սուգը
կը պահէին (Տննդ. ԼԷ. 34. Յեսու Է. 6.)
նոյնպէս բոլոր Իսրայէլի որդիքն իրենց տու-
ած կոտորածին համար լացին սգալով և ծոմ
պահեցին (Դատ. Ի. 26.). մարդիկ ալ միշտ
մեղանչելով հոգւոյն իրաւունքը կը կորուսա-
նեն. ուրեմն մարդոց մէջէն միշտ վերնալու
չէ այն սուգի կանոնն. սուգ պահած ըլլա-
լու համար մարմնոյն քորքոքում տուող կե-
րակուրը իրեն տալու չէ. այս դասը եկեղե-
ցին ոչ թէ միայն բնութենէն, այլ նոյն իսկ
սուրբ գիրքէն սորված է. թէեւ առաքեալը
« կերակուր մի որոշէք, կերակուրի համար
մէկը ձեր վրայ թող չ'իշխէ կամ Աստուծոյ
արքայութիւնն ուտելիք և խմելիք չէ » կ'ըսէ,
բայց այն ատենուան նոր դարձող հրէից ու-

հեթանոսաց նկատմամբ էր, որ «չիք խտիր ո՛չ հրէի և ո՛չ հեթանոսի, դուք մի էք 'ի Քրիստոս» ըսելուն կարեւորութիւն չտալով ամեն մէկը իրենց համար զատ զատ օրեր կը որոշէին. զատ զատ կերակուրներ կ'որոշէին, որուն վրայօք ժամանակ եղաւ որ մինչեւ անգամ Պետրոս առաքեալն ու Բառնաբաան ալ պաշարուելով Պօղոսէն յանդիմանուեցան, զի քանի մը հրէից հետ միանալով՝ հեթանոսներէն դարձողներուն՝ կերակուրէն քաշուիլ սկսան (Գաղ. Բ. 11.) կերակուրը կերակուրէն որոշողներ ու ամուսնութիւնը արգիլողներ պիտի գան ըսաւ Պօղոս, ինչպէս որ եկան, և մէկը մէկուն կերակուրն պիղծ համարեցան, ամուսնութիւնը ի՞նչ է, ամեն մարդերը և քանի որ ուզէ կ'առնէ և ուզած ատենն ալ կարձկէ ըսին, ( Տես Մ[illegible] Ա. Դ[illegible] ԻԶ. 5.) այս խօսքերէն առաքեալն մեզի անհիմն և անկանոն եկեղեցի մը լինել կը սորվեցնէ չենք կրնար ըսել, ամեն խօսք իւր տեղը ունի, հիմայ չկայ քրիստոնեայ մը որ Պօղոսին այդ խօսքերը անոր վայելէ, ոչ հըրէական և ոչ հեթանոսական նախապաշարմամբ կերակուր և օր կորոշեն, սակայն մէկ կենդանի հաւատքի և մէկ ճշմարիտ կրօնքի մէջ թէ օր և թէ կերակուր որոշելն Աստուած անօրինած է. եթէ կարգադրութիւն

չըլլայ կանոնաւոր եկեղեցի ալ լինել անկարելի է , թէ որ տնօրէնութեան վախճանն ալ սուրբ գրոց համեմատ 'ի սէր Քրիստոսի և 'ի սէր եկեղեցական հաստատութեան է չ'հնազանդիլն պարտականութիւն է , « անոնց վարմունքի վախճանին նայելով անոնց հաւատքին նմանող եղիք , թէ որ չ'հնազանդիք ձեզի աղէկ չէ » ( Եբր. ԺԳ. 7—17. ) ։

Անոնց վարմունքին վախճանը կը նայինք որ հոգւոյն ու մարմնոյն մէջ խաղաղութիւն ձգելու կրօնական կապ մ'է , անոնց հաւատքը որկրամոլութեան , որովայնապաշտութեան առաջքն առնել է որոնց աստուածը իրենց որովայնն է ( Փիլիպպեցւոց Գ. 19. ) գէշութեան առաջքն առնել , հաստատուն հիման վրայ եկեղեցի կազմելը ալ մարդոց առ Աստուած , առ ընկերն , առ հոգին և առ մարմինն ունեցած պարտքերն հոգեւոր կանոնի տակ առնելով կըլլայ ։

5. — Պահեցողութիւնն Աստուած ալ կանոնի տակ առած և օր որոշած է , անոր համար մարգարէիւք և առաքելովք վաւերացուած է, թէ ծոմապահութիւնն թէ պահքը և թէ օրեր որոշելը . « ծոմապահութեան օր որոշեցէք , հանդիսաւոր ժողովք քարոզեցէք » ( Յովել. Բ. 15. ) ։

Ծոմը կամ շատ դժուարին և կամ խուզ

ու գինի չ՚մտաւ (Դանիէլ Ժ. 2—3.)․ Նոյնպէս Յովհաննէս Մկրտչին կերակուրն մարախ ու վայրենի մեղր էր անապատի մէջ․ ոչ թէ միս չ՚կենալուն էր, հապա ուտելէն զգուշութիւն ընելուն էր, թէ որ ինքը ուզէր Աստուած անապատի մէջ անոր լորամարգի ալ կուտար, բայց պահքը իրեն համար օրէնք եղած էր, և իրեն աշակերտներուն ալ հարկաւ իրեն պահածին պէս պահել պիտի հրամայէր․ «ինչո՞ւ մենք ու փարիսեցիները յաճախ կը պահենք․ (Մատթ. Թ. 14.) յաճախ յաճախ ծոմ պահելն դժուար է, քանի որ յաճախ կը պահէին, ըսել է իրենց վարդապետին պէս պահք կը պահէին․ Նոյնպէս Աննա մարգարէին համար աւետարանիչը կը ըսէ «ութսուն ու չորս տարի գիշեր ցերեկ պահեցողութեամբ կ՚աղօթէր» ութսուն ու չորս տարի ծոմ չէր պահուիր, հապա Եղիային, Դանիէլին, Դաւիթին, Յովհաննէս Մկրտչին պէս որկրամոլական կերակուրներին որոշելով պահք կը պահէր (Ղուկ. Բ. 37.)։

6. — Պահեցողութիւնն թէ ծոմ ըլլայ թէ պահք, մեղք ունեցողի մը հոգեկան կորըստեան վրայօք սուգ պահելու նշանակութեամբ առնուած ըլլալն յայտնի է, (Եսայի ԿԱ. 3. Դան. Ժ. 3. Յովհ. Գ. 5.) Քրիստոս ինքն որ անմեղ էր, անիկայ ալ մեզի համար

պահեց «ով որ կ'ըսէ ես մեղք չունիմ իւր անձը սուտ կ'առնէ» (Ա. Յովհ. Ա. 8.) .

Քանի որ աշխարհիս վրայ ամեն օր մեղք կայ, պէտք է որ ամեն օր ալ պահեցողութիւն կենայ, այս ալ եկեղեցական որոշմամբ կրնայ լինիլ. «օրեր որոշեցէք» (Յովել. Բ. 15.)։

Շաբաթը երկու օր որոշելն Քրիստոսէն հնարուած ըլլալու է, վասն զի մաքսաւորին ու փարիսեցւոյն առակովը կը սորվեցնէ Քրիստոս թէ շաբաթը երկու օր պահել պէտք է, փարիսեցւոյն պահածն որ չ'ընդունուիլ սորվեցուց՝ հպարտանալուն համար էր. ինչպէս որ անանկ տրուած ողորմութիւնն ալ չի ընդունուեցաւ. Մովսէսի օրով ատանկ ամեն շաբաթուան երկու օրը պահել չ'կար, Քրիստոս այդ խօսքը նոր 'ի նոր ըսելէն աւանդուած է թէ շաբաթին երկու օրը որոշողը Քրիստոս ինքն է. այդպէս փարիսեցի մը իրօք եղած բան մը չէր, Քրիստոս առիկայ ինքն իրմէ առակ խօսեցաւ, ուրեմն շաբաթուան երկու օրը ինքը որոշած է, առաքեալներն ալ այս կէտերը մեզմէ լաւ գիտէին, անշուշտ պահեցողութեան օրեր պիտի որոշէին ինչպէս որ ամեն պաշտօններու մէջ կը պահէին և պահել կը պատուիրէին (Գործ. ԺԳ. 3 ԺԴ. 22.) Նաեւ կըսէ «պահեցողու-

թեան տունն ալ այրւէն անցած էր » ( Գործ. Իէ. 9. ) ։

7. — Նախնի սուրբ հարք ալ երբեմն օր կ'որոշէին, օրինակի համար Գրիգոր Լուսաւորիչ այսչափ մարդիկ մկրտելու. ատեն շաբաթ մը պահեցողութիւն հրամայեց. ամեն հայրապետք առաքելական սուրբ աւանդութեամբ ձեռնադրածնուն պահեցողութիւն կը հրամայէին. Նոյնպէս շաբաթը երկու օր, և տարուան քանի մը շաբաթներն ընդհանրապէս պահեցողութիւն հրամայած են. ոչ թէ իրենք իրեցմէն հնարելով, հապա Աստուածային տնօրէնութենէն և սուրբ գրոց գնացքէն առնելով, ինչպէս որ յառաջէն 'ի վեր, նահապետք, մարգարէք, առաքեալք թէ սգոյ համար և թէ ամեն ծանր գործերու մէջ, ուխտ կ'ընէին և կը պահէին «ուխտս դի՛ք և կատարեցէք, յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց ». Քրիստոսի ծնունդ, անոր յարութիւն, Սուրբ հոգւոյն գալուստը, Քրիստոսի այլակերպութիւնը, անոր մօր վերափոխումը, Քրիստոսի խաչին նշանը, այնինչ սուրբ հայրապետին այսչափ մարդիկ մըկրտելով, պահեցողութիւն հրամայելը, բոլորն ալ Քրիստոնէից համար նշանաւոր օրեր են, որոց մէջ ուխտ ըրածէ և կը կատարէ՝ Քրիստոսի եկեղեցին. ինչպէս որ Եղիային պահելէն վերջ, երկինքը առնուիլ անոր նշանա-

ւոր օրն եղաւ. Մովսէս պահեց Սինայ լերան նշանաւոր կերպով. Քրիստոս պահելէն վերջ սատանային յանդիմանեց, առաքեալք պահեցին նշանաւոր օրերու մէջ, ինչպէս որ ձեռնադրութիւն կատարելու և նշանաւոր օրեր էին, որոնցմէ յառաջ կը պահէին. Նոյնպէս յիշատակութեան և սգոյ համար կը պահենք երբեմն շաբաթներ և շաբաթուան երկու օրեր:

Պահոց լուծում կ'ընենք յինանց քառասուն օրը, Քրիստոսի՝ քառասուն օր յարութենէն վերջ աշխարհիս վրայ կենալուն համար, այն յիշատակութիւնն ալ ետ չի ձգելով թէ «քանի որ փեսայն հետերնին է, չեն պահեր» երբոր վերնայ կը շարունակեն պահելու. ասոնք բոլորն ալ Աստուածային օրհնութիւններ են. ոչ թէ իրենք իրենց փառաց համար աւանդած են փարիսեցւոց պէս հապա մեր օգտին և Աստուծոյ աւանդքին համար, որպէս զի մարմնոյ ու հոգւոյ մէջ խաղաղութիւն լինի «մարմնոյ խնամք մի առնիք ցանկութեանց համար» (Հռովմ. ԺԳ. 14.) հոգւով կացէք, որ մարմնոյ ցանկութիւնը չի կատարէք (Գաղ. Ե. 15.):

8. — Եկեղեցին՝ պահեցողութեան կանոն որ չունենայ, Աստուծոյ տնօրէնութեան, մարդկային բնութեան և հոգեւոր իշխանու-

թեան դէմ հակառակիլ է, զի հոգւոյն բաժինը հոգւոյն, մարմնոյ բաժինն ալ մարմնոյ տալ Աստուած պատուիրած է, չի հնազանդիլն Աստուծոյ դէմ ապստամբիլ է, «պահք չ'կայ» ըսելն, ինքզինք սատանայական հրապուրանօք մխիթարել է, պահքը՝ հիւանդութեան բացառութեան մը մէջ ալ լուծելէն քաշուիլը և կեղծաւորիլը նախապաշարում է. ոչ Աստուած և ոչ առաքեալք և ոչ եկեղեցւոյ սուրբ հարք այդպէս կը պահանջեն։ Սակայն այս պատահմանց մէջ պահքը լուծողը պէտք է գիտնայ և այնպէս գաղափար է թէ՝ պահքը կայ, Աստուծմէն աւանդուած ու եկեղեցիէն վաւերացուած է, իսկ այն օրը ինքը միայն անկէ ազատ է, միայն իրեն ուտելը այն աւուր համար բացառութիւն է։

Բացառութեան մէջ անգամ պէտք է որ ուրիշին գայթակղութիւն տալէն զգուշանան վասն զի գայթակղութեան քարը վիզը կախուելով ծովը կ'իյնի. ինչ ալ որ ըլլայ, որչափ ալ որ մեղք չ'ըլլայ այն օրը իրեն համար, դարձեալ այն օրը լուծածը՝ Աստուածային տնօրէնութիւն և եկեղեցւոյ հոգեւոր կանոն մ'է. մանաւանդ որ զայն պահքը ուտողն տեսնողները բոլորն ալ չեն գիտեր թէ կամ տըկար է, կամ հարկադրուած է բանաւոր պատճառէ մը։

կամ փառքէն զրկուելով այս աշխարհիս մէջ խոզարածութեամբ ապրեցաւ, իւր հօրմէն առած կենաց ժառանգին բաժինը վատնելով սովամահ կորնչիլ սկսաւ, ուստի ուրիշ ճար չ'կայ հապա երթալ « հա՛յր, մեղայ յերկինս և առաջի քո » ըսելու է. որուն համար պատրաստ է, իւր մատանին և մերկացած հագուստը այն է՝ մկրտութիւն և դրոշմ. և պարարակ եզը, այսինքն մարմին Քրիստոսի՝ որ իննսուն և ինն թողլով մէկ հատ կորսուած ոչխարը փնտռելու եկաւ ։

Չորրորդ կիւրակին՝ Քրիստոսի ըսած անտեսին առակը ներկայացնելով մեզի կը սորվեցնէ թէ՝ մարդիկ իրենց բնութեան անտեսըն են, թէ որ ուզեն կրնան մեղայ կոչել, վասն զի որչափ ալ որ անիրաւ լինին, դարձեալ հրեշտակներէն իմաստնագոյն են ։

Հինգերորդ կիւրակին՝ դարձեալ այս կէտը կը վաւերացնէ անիրաւ դատաւորին առակովը թէ՝ մարդուս հոգին ազատ կամքին ձեռքը այրի կնոջ մը պէս լինելով հոգւոյն ու մարմնոյն մէջտեղն արդար դատաստան պէտք է ։

Վեցերորդ կիւրակին՝ խոստումը կը ներկայացնէ թէ՝ մարդոց անառակութեան, անիրաւ՝ անտեսութեան, և անգութ դատաւորութեան վերջ տալու համար Քրիստոս պի-

տի գայ, նախ հեզ և խոնարհ յաւանակի վը-րայ նստած. երկրորդ, միւսանգամ գալուստը քերովբէներու վրայ փայլակի պէս ։

Եօթներորդ կիւրակին՝ թէ Երուսաղէմ գալը և թէ միւսանգամ գալստեան և դատաստանի խորհուրդը ամբողջապէս կը ներկայացնէ, այնպէս որ՝ Դանիէլ մարգարէն տեսիլքով ծեր մը տեսաւ. իսկ մենք մսուրի մը մէջ մանուկ, Գալիլեայի և Եգիպտոսի մէջ դեռափթիթ տղայ, Յորդանանու եզերքը և Երուսաղէմի մէջ երիտասարդ և պատանի, որ ըստ այնմ ծերերը ձիթենւոյ, և տղայքն երիտասարդութեան վայելուչ և անթառամութեան յարմարութիւն ունեցող արմաւենիի տերեւօք անոր առջեւ ելան. արդեօք ասոնց ո՞ր մէկը եղած չեն և պիտի չըլլան. ուստի ամենն ալ ընել պէտք է ։ Սուրբ գիրքը, Աստուածային տնօրէնութիւնը, մարդկային բնութիւնը, այս վարդապետութեանց մէջէն բնաւ մէկը չմերժեր. իսկ ազատ կամքը, հակառակասիրութիւնը, անձնական շահը, և անգիտութիւնը ոչ թէ մինակ կը մերժէ, այլ ինքը անկէ կը հեռանայ ալ, մանաւանդ հոգւոյ աչաց կուրութիւնը զայն բնաւ չի կրնար տեսնել ։

Բարեկենդանի առաջին կիւրակիէն մինչեւ այս եօթներորդ կիւրակին, Ադամայ՝

փառօք ստեղծուելէն մինչեւ Քրիստոսի միւսանգամ գալստեան խորհուրդը ունի . ամեն մէկ շաբաթը հազարական տարի Աստուածային տնօրինական աւուր մը խորհրդով առնելով, Քրիստոսի Երուսաղէմ գալը վեցերորդ և եօթներորդ օրերուն մէջ եղաւ, « տիրոջը աչքին առջեւ հազար տարի օրուան մը պէս է » կըսէ Դաւիթ ։

Եօթներորդ շաբաթը Քրիստոսի Երուսաղէմ գալուն և միւսանգամ գալստեան խորհուրդը -կը կատարէ , և գալստեան ատեն յարութիւն մեռելոց լինելը կը սորվեցընէ , ինչպէս որ Երուսաղէմ գալուն Ղազարոսը յարոյց , միւսանգամ գալստեան ատենըն ալ բոլոր մարդիկը պիտի յարուցանէ ։

**11.** — Մեծ պահոց՝ չորս անգամ տասնէն բաղկացեալ քառասուն աւուր խորհրդին մէջ Ադամայ ստեղծումէն մինչեւ Քրիստոսի միւսանգամ՝ գալստեան պարունակութիւնը կենալէն զատ , կայ նաեւ խորհուրդ մը թէ , Աստուածային և Առաքելական տնօրէնութեանց մէջ ամեն մէկ ծանր գործերու ատեն պահեցողութիւն պէտք է . ինչպէս որ Եղիա վերնալէն յառաջ պահեց , նոյնպէս Մովսէս քառասուն օր պահեց (Ելից ԼԴ. 28.) Քրիստոս քառասուն օր պահեց , առաքեալք կը պահէին խորհրդաւոր պաշտօն-

նէրու մէջ, վասն զի քառասուն օրը վեց շաբաթէն կը բաղկանայ, վեցէն վերջը եօթը կը հետեւի. երեք, վեց, եօթը, և քառասուն՝ սուրբ գրոց մէջ շատ անգամ խորհրդաւոր են, որոց վրայօք երկարօրէն գրելու պէտքութիւն մը չունինք. «տէրոջը փառքը Սինայ լերան վրայ գալով հանգչեցաւ, ու ամպը վեց օր պատելով, եօթներորդ օրը տէրը ամպին մէջէն կանչեց. տէրոջ փառաց տեսիլքը մաշող կրակի պէս» (Ելից. ԻԴ. 15-17.) ինչպէս որ փայլակը արեւելքէն մինչեւ յարեւմուտս կերեւի, մարդոյ որդւոյն գալուստըն ալ այնպէս պիտի ըլլայ» (Մատթ. ԻԴ. 27.). քանի որ այս ծանր խորհուրդները պիտի կատարենք, պէտք է որ եօթներորդին պատրաստ ըլլանք. Ադամին հետ մեռանք, Քրիստոսի հետ կենդանանանք, Աստուածային լերանը՝ այն է Քրիստոսի սեղանին պիտի մօտենանք, պէտք է ապաշխարենք. թէ որ սուգ պահենք ու Քրիստոսի սեղանին չը մօտենանք, ըսել է թէ Ադամին հետ մահացանք, իսկ Քրիստոսի հետ չ'պիտի կրնանք կենդանանալ. թէ որ չը պահենք ու չ'ապաշխարենք՝ սատանայներուն պէս ապստամբած ենք, ուրեմն ոչ Ադամայ հետ սգակից և ոչ Քրիստոսին հետ ուրախակից ենք. ուստի այս խորհուրդները Աստուածային տնօրէնու-

թիւն և մեզի համար ալ մեծամեծ պարտքեր են ։

Վեցերորդ շաբաթէն վերջ եօթներորդին սկզբան Աւագ շաբաթ կ'ըսուի որուն մէջ Նորէն կ'սկսի Ադամին դրախտէն աքսորուիլը, Քրիստոսի գալուստն, տասն կուսանաց առակը, Քրիստոսի մատնութիւնը, վերնատան զարդարուն կերպով երկինք մը հանդիսանալը, Մովսէսին աւանդուած պասեքի ստուերին 'ի լոյս փոխուիլը, Քրիստոսի խաչելութեան, թաղման և յարութեան տօները, որոնք մեր պարտքն է կատարել, զի իրեն գըլխին վրայ իւղ թափուելուն յիշատակը չի մոռցուիլ պատուիրեց. աշակերտաց ոտքը լուանալուն օրինակին համար «դուք ալ ըրէք» ըսաւ, միթէ իրեն մահուան, գալստեան, յարութեան բուն աւուր յիշատակը կատարել չի՞ պահանջեր մեզմէն. «քանի անգամ որ ընէք զիս յիշելու և մահս պատմելու համար է» ուրեմն այն ընելիքնիս պաշտօնական և նշանաւոր օրէն սկսելու ենք ընել. «Զատիկ մեր զենաւ Քրիստոս արասցուք տօն ցնծութեան (Ա. Կորնթ. Ե. 8.) ։

Քրիստոսի յարութեան տօնէն վերջ քառասուն օր դարձեալ ունինք, որուն մէջ յարութիւն, գալուստ և նորոգութիւն կը բովանդակի, որովհետև քառասուն օր կեցաւ

աշխարհիս վրայ , փեսային մեր մէջ ըլլալով անսուգ մնալ ցուցնելու համար , կիւրակինեները անոր յարութիւնը , գալուստը , երկուքը մէկէն կը տօնենք, որովհետեւ աշակերտաց ամեն անգամի երեւնալուն մէջ գալստեան և նորոգութեան խորհուրդ մը կար , ինչպէս որ խաչուելէն առաջ ըսած խօսքերը կրկին կը նորոգէր, և անոնց երկնային նորոգութիւն մ'ալ կը խոստանար ։



## ԳԼՈՒԽ Բ.

## ԴԱՍ ԺԳ.

### ՔՐԻՍՏՈՍԻ ՄԻՒՍԱՆԳԱՄ ԳԱԼՈՒՍՏԸ

1. — Քրիստոսի գալուստը ի՞նչպէս է։ 2. — Ինչո՞ւ համար է։ 3. — Մեռելոց յարութիւնը ի՞նչպէս է։

*1. — Աստուծոյ լոյսը՝ ամեն անգամ կրակի պէս էր. Սինայ լեռը կը բորբոքէր, մարգարէից շատ անգամ հրեղէն որոտմամբ կը տեսնուէր «կիզիչ հուր» կ'սէ Պօղոս. Քրիստոս ինքն ալ փայլակի նմանութեամբ գալիք ըլլալ ըսած է. բնութեան մէջ ալ ամեն բանը հալելու և եփելու փորձը կրակով կ'ըլլայ գրեթէ։*

*2. — Քրիստոսի միւսանգամ գալուստը՝ կենդանի ու մեռած մարմինները դատելու համար է, այս դատին հետեւութիւնը կամ յապականութենէ յանապականութիւն, կամ անցաւոր տանջանքէ 'ի հուրն յաւիտենական։*

Թէեւ այս յաւիտենականութեան գաղափարը ընդհանրացած է քրիստոնէից մէջ , սակայն գալստենէն յառաջ մեռած՝ մարդոց հոգիներու մասին , վէճը պակաս չէ . Յոյնք և Լատինք , իրարու հետ կը մրցին . Նոյնպէս Անգլիքանք ու Բողոքականք դաւանութիւններ իրարու հետ չեն համաձայնիր . ուստի Նիւթերնուս դիմաց եկաւ այս խնդիրներու վրայօք խօսիլ փոքր 'ի շատէ :

3. — Մեռելոց յարութիւնը՝ հաւատացելոց համար ընդհանուր է , վասն զի մարդը հանդերձեալի մը համար ստեղծուած լինելը յայտնի է . ուստի յաւիտենական փառաց մէջ մտնելու համար , ապականելի մարմինէն ելնելով Քրիստոսի հագած անմեղ մարմինին համեմատ նորոգութիւն մը հագնելու պէտք ունի , եթէ ոչ մեղքի մէջ ծնած մարմինն ու արիւնը Աստուծոյ թագաւորութիւնը չի կըրնար ժառանգել . ուրեմն մեռեալները պիտի նորոգուին . «Եթէ որ Քրիստոս յարութիւն առած չէ , մեր քարոզութիւնները պարապ են » կըսէ Պօղոս . այս յարութեան յոյսը և ապականելի մարմինին ցորենի պէս ցանուելով , արդիւնաւորութիւնն Քրիստոսէն կը սորվինք « Եթէ որ մեռնի արդիւնաւոր կ'ըլլայ » մեռելոց յարութիւնը՝ քարոզելէն 'ի զատ գործքով ալ երեւան բերաւ Երուսաղէմ գալուն : Ա-

Նոր Նպատակը մինակ հրաշք ցոյց տալ չըլլնելով, մեռելոց յարութիւնը իմացնել էր՝ Ղազարոսը գերեզմանէն կանչելը, որովհետեւ անկէ առաջ շատ հրաշքներ ըրած ըլլալով այս անգամ յատկապէս խաչուելու եկած էր, անիկայ ոչ թէ Ղազարոսին բարեկամական սիրով լացաւ, հապա ընդհանուր մարդկութեան փափաքովը. վասն զի շատ Ղազարոսներ մեռնելիք ըլլալը գիտէր, չմեռնելիք մը չկար որ Ղազարոսն ալ անոնց կարգին մէջ սեպուէր։

Քրիստոսի համար բոլոր Աստուծոյ կամքը կատարողները, մէկ մէկ սիրելի եղբայրներ, քոյրեր ու մայրեր են., բայց ինչպէս որ աւանակի վրայ նստած գալով մինակ Ղազարոսը յարոյց, որով մեռելներուն յարութեան յոյս պարգեւեց, նոյնպէս քերովբէներու և ամպերու վրայ հանգչելով գալուն, բոլոր մարդկային ազգը պիտի յարուցանէ. ինչպէս որ խաչուելէն յառաջ ամեն մէկ ըսածները, և ըրածները յարութենէն վերջը կրկնեց, նոյնպէս մեռելներ ալ յարուց ինքը յարութիւն առած օրը. « շատ սուրբերու մարմիններ յարութիւն առին շատերուն երեւեցան » (1)։

(1) Այս մասին աւետարանիչը շատ համառօտ գրած է, անկասկածելի գործողութիւն մը ըլլա—

# ԴԱՍ ԺԴ.

## ՎԵՐՋԻՆ ԴԱՏԱՍՏԱՆ

**1. — Վերջին դատաստանը ի՞նչ է. ի՞նչ ըսել է: 2. — Ննջեցելոց հոգիներ ո՞ւր կերթան: 3. — Քրիստոս ատեանին ի՞նչու մեռած օրը դրախտ խոստացաւ: 4. — Քաւարան չ'կա՞յ յետին նաքարակիտը ի՞նչ է:**

*1. — Վերջին դատաստանը՝ Քրիստոսի տալիք վերջնական վճիռն է. արդարները աջ կողմը, և մեղաւորները ձախ. մէկ կողմին « եկա՛յք օրհնեալք » միւս կողմին « երթա՛յք անիծեալք » պիտի ըսէ. ասկէ վերջը ոչ անձ մը կ'օրհնուի և ոչ ալ կ'անիծուի, օրհնեալքն օրհնեալք են, և անիծեալքն անիծեալք:*

*Դատաստան ըսելը, խրաւունք մը տեղը բերելու համար որոշուած վճիռն է. աշխարհիս դատաւորները՝ վկայութեամբ և կամ դատաւորին բերնովը եղած հարցաքննութեամբ*

---

*լուն համար. եթէ ո՛չ մեծամեծ հրաշալեաց կարգին մէջ ընդարձակօրէն գրուելիք պարագայներ եղած են անշուշտ այս անգամ, որոց յարութեան վրայօք:*

վաւերացած յանցանքին վրայօք կը վճռեն, իսկ դատաւորաց դատաւորը ամեն մէկին գործած բարիքն ու չարիքը իրենց իմացնելով անմիջապէս պիտի վճռէ (Մատթ. ԻԵ. 31—45.) ։

2. —Ըստ քաւարանի՝ Քրիստոսի գալըստենէն յառաջ մեռելոց հոգիներուն համար իբր թէ երեք տեղ կեցած ըլլայ ։

Նախ՝ մեռածին պէս մարդումը դատաստանին նայուելով, թէ որ արդար է յարքայութիւն. թէ որ մեղաւոր է երկրորդ տեղը այն է դժոխք. թէ որ ներելի մեղաց մէջ մեռած է՝ երրորդ տեղ մը, այն է՝ քաւարան. և ասոնց վրայօք ալ շատ մը վկայութիւններ գտած են, որոց գլխաւորներն են, «աւազակը մեռած օրը վճռուեցաւ որ Քրիստոսի հետ դրախտ ըլլայ» Պօղոս կ'ըսէ խաղաղութեան պսակը ինձ կ'սպասէ» (Բ. Տիմ. Դ. 7.) մեծատունը մեռաւ դժոխքը գնաց. ես ուր որ ըլլամ իմ պաշտօնեաներս ալ հոն պիտի լինին ըսած է Քրիստոս. Նաև բնութենէն առնելով թէ «լոյսն ու խաւարը մէկտեղ չեն կրնար ապրիլ, արդարերն ալ մեղաւորներու հետ չեն կրնար ապրիլ» որ ըսել եղաւ երկու տեղ, այն է՝ դժոխք՝ ու արքայութիւն ։ Գալով երրորդ տեղին. Քրիստոս ըսաւ որ «ոսոխիդ հետ հաշտուէ ճամբուն

մէջ, եթէ ոչ բանտը կը ձգուիս և անկէ չես ելներ, մինչեւ յետին բնիոնը վճարես»։ Նաեւ ըսաւ «սուրբ Հոգւոյն դէմ եղած հայհոյութիւնը ոչ հոս և ոչ հոն կը ներուի»։ ուրեմն սուրբ Հոգւոյն դէմ չեղած թեթեւ մեղքեր ալ կան հոն ներուելիք. ուստի յետին Նազարակիրը ներելի մեղքեր են հոն կամ բանտն ալ քաւարան է»։ Ճարտարաբանօրէն ալ շատ խելքի մօտ է, բայց իրականէն հեռու է ըստ հետեւեալին։

3. — Քրիստոս աւազակին ըսաւ որ «այսօր ընդ իս իցես 'ի դրախտին» սակայն այն օրը չէ, անկէ ամիս մը վերջն ալ Քրիստոս ինքը դրախտ չի գնաց որ աւազակն ալ հետը տարած ըլլար, «զի չեւ եւս ելեալ եմ առ Հայրն իմ և առ Հայր ձեր, առ Աստուածն իմ և առ Աստուած ձեր» (Յովհ. Ի. 97.) Քրիստոս «այսօր» ըսելով ոչ թէ աւազակը խաբեց, այլ աւազակը մինչեւ այն օր սատանային հետ էր, այն օրը որդի արքայութեան եղաւ։

Թէեւ Քրիստոս քարայրին մէջ Մանուկ եղած ատենն ալ Հօրմէն բաժնուած չէր, սակայն այս անճառելի է, «չեւ եւս ելեալ եմ» բառը մեզի ծանօթ է քանի որ անձնաւորութիւն և կատարեալ մարդկութիւն կը դաւանինք. դժոխքին մէջ եղած հոգիներուն

քարոզեց. անոնց մէջ նոյն մարմնով ներկայացաւ, որպէս զի չի մկրտուած ու չի հաղորդուած չ՚ըլլան նախնի սուրբերն ալ։

Քրիստոս՝ համբարձումէն վերջ Հօրը քով ելնելով անոր աջ կողմը նստաւ. մենք միայն այս կերպով կրնանք գաղափարել. այսպէս է Պօղոսին և բոլոր սրբոց համար ալ պատրաստ եղած և արժանացած անթառամ պըսակնին։ Ծգնաւորաց աղօթքին մէջ ինչպէս որ մենք ալ կ՚ըսենք «լուսեղէն և երկնային անթառամ պսակացն արժանի եղեն. Թագաւորի մը խոստում արդէն հաւատարիմ կը լինի. Թագաւոր մը երբոր մէկու մը պսակ և կամ մրցանակ խոստանայ, այն անձը՝ այն օրէն անոր արժանացած կ՚ըլլայ, այն սրտով և այն հոգւով կ՚ապրի, երբ կ՚ուզէ այն ատենը թող տայ, բաւական է որ խոստանայ. հապա Թագաւորաց Թագաւորը որ խոստացած է. ո՞րչափ հաւատարիմ է. անոր համար հազար տարին մէկ օրուան պէս, և երկու հազար տարին ալ իրիկուն մը և առաւօտ մը ըսել է, որ «այսօր» ըսել կ՚ըլլայ։

Քրիստոսի խոստման արժանացած մարդը անոր պաշտօնեայն է. ո՛ւր և ե՛րբ ալ ըլլայ, Քրիստոսի եղած տեղն է. Քրիստոս մեր մէջ եկաւ, դարձեալ Քրիստոս էր. դըժոխք իջաւ, Նոյն էր. Հօր Աստուծոյ աջ կող-

մը նման. Նոյն էր · ուստի խոստման արժանացածները պահուած են ըսել է՝ ուր տեղ և երբ որ ալ ըլլայ · չեղողներն ալ արդէն դատապարտեալ են ( Յովհ. Գ. 18.) ով որ կը հաւատայ դատաստանի չի մտներ » այսինքն « երթայք յինէն անիծեալք » խօսքը լսելիք եղողներուն կարգը չի մտներ , հապա մահէն կեանքի կը փոխուի ( Յովհ. Ե. 24.) ոչ թէ վերջին դատաստանի սպասող այծի ու ոչխարի հօտէն ալ մասնաւորապէս դուրս կը մնայ ։

Հարսանեաց տան երթալիքը՝ հարսնիքի գաղափարով կ'ապրի , սուգի տան երթալիքը սուգի , հայրը մեռած մարդն , ու հայրը պանդխտութենէ հարսանեալով եկած մարդը . միեւնոյն տան մէջ ալ որ ըլլան , մէկը ուրախ է միւսը տրտում է . Նոյնպէս աւազակը՝ երկնային հարսնութեան խոստում մը առած օրէն ուրախ էր . և ճիշդ այսպէս է Քրիստոսի առաքելոց փչելն ու ըսելն թէ « առէ՛ք հոգի սուրբ » . բայց ժամանցակը չէր և չառին այն օրը , բաւական է որ փչեց ու խոստացաւ . Նոյնպէս արդար հոգիներ ոչ թէ մեռած օրերնին դրախտը մտնելու արժանի չ'են , հապա ժամանակը չէ , զի վերջին դատաստանի կ'ըսպասեն , ինչպէս որ առաքեալք սուրբ հոգւոյն գալստեան կ'սպասէին .

« Երբ որ Քրիստոս յայտնուի փառօք, դուք ալ այն ատեն պիտի յայտնուիք » (Կող. Գ. 4.) Հաւատարիմ խոստման արժանացողը՝ ոչ թէ չ'արժանացողի մը պէս կ'ապրի, հապա կ'աճապարէ. միայն թէ « ե՞րբ պիտի առնուս մեր վրէժը » կերգեն. թէ որ առանձնական դատաստանով գործը կը լրանայ. ուրեմն վերջին դատաստանին ի՞նչ հարկ կայ, ամեն մէկ մեռնողի դատը՝ մեռած օրը տեսնուելէն վերջ մարդիկ որ հատնին, դատն ալ կը լրանայ, Քրիստոսի աւետարանը՝ մեզի այդպէս չի սորվեցներ. հապա անձնական դատաստանը ամեն մէկ անհատի ընդհանուր է որ, ամեն արդարներու համար արքայութիւն, և մեղաւորներու համար դժոխք կը պատրաստուի, բայց երկուքին ալ առածը խոստումն է վարձքի և պատժոյ, անոր համար վերջին դատաստանի մը կ'սպասեն համագումար, իսկ ուր ըլլան թող ըլլան վէճ ընելը աւելորդ է:

4. — Գալով երրորդ տեղւոյն. այն է՝ քաւարանի խնդրոյն. « մինչեւ չի վճարէ ետքի նաքարակիտը՝ բանտէն չի կրնար. ելնել » ըսած է Քրիստոս, բայց եթէ չ'ունենայ որ չի վճարէ, ի՞նչպէս պիտի ելլէ. հազար դահեկանի համար բանտը դրուողն ալ բանտարկեալ է, հինգ դահեկանի համար դրուողն ալ

դայՙն ըրածը . Թէ որ զղջար ու ապաշխարէր, Աստուած՝ արդարութեանը հետ ողորմած ալ է, անոր ներելի մեղքերը մեռած և կամ մեռնելիք օրն ալ կը ներէ, « ով որ ունի թող տրուի, և ով որ չունի և քիչ մ՚ալ ունի, թող առնուի անկէ » . անկէ չես կրնար ել֊նել մինչեւ որ յետին նաքարակիտը վճարես, « ոչ հոս և ո՛չ հոն պիտի ներուի » ասոնք բոլորն ալ յաւիտենականութիւն նշանակող խօսքեր են . « արդարոցն կեանք յաւիտենա֊կան, և մեղաւորացն տանջանք յաւիտենա֊կան » աւետարանին ըսածը այս է, (Թէ որ հոն մէկ նաքարակիտը վճարելու համար հա֊տավաճառական փոխառութիւն մ՚ալ կայ, մենք զայն չենք գիտեր) ։

---

## ԴԱՍ ԺԵ.

### ԿԱՑԱՆՔ ՀՈԳԻՈՑ

1. — Կայանք՝ ի՞նչ ըսել է. ճայրապետք ի՞նչպէս մտածեցին։ 2. — Արդարները ու մեղաւորները միատեղ ըլլալ կ'ըլլա՞յ։ 3. — Քրիստոս դըժոխքը չաւրե՞ց։ 4. — Քաւարան չկայ կ'ըսեն ու ննջեցելոց համար ի՞նչու կաղօթենք։

*1. — Քանի որ հոգի կայ, անշուշտ կենալու տեղ մ'ալ կայ. քանի որ Քրիստոսի գալուն կ'ըսպասեն որ վերջին վճիռը լսեն և կաճապարեն թէ « մեր վրէժը ե՞րբ պիտի առնուս » ուրեմն մաքրարանը՝ կայանք է. կայանքն ալ մաքրարան* (1)։

*Գրիգոր Տաթեւացին՝ կայանք հոգւոց ըսածը այս կերպով կը մտածէ. Ա. կայանք*

---

(1.) Յ. Վ. *Գաթըրճեան կ'ըսէ որ « Հայոց մաքրարան ըսածը՝ մեր քաւարանին կէսն է »* (Հիմնական տարբերութիւն էջ 85). *բայց մէկ չորրորդն ալ չէ. վասն զի անոր սկզբունքը զատ է, վախճանը զատ է, ասոր զատ է։ Մաքրարանը և կայանքը պարզ գաղափարով է. իսկ քաւարանը՝ բաղադրեալ և աճանցեալ է* ։

նախ քան զՔրիստոս. Բ. Քրիստոսէն ետքը, Գ. դատաստանէն ետքը. այսինքն Քրիստոսէն յառաջ ամենը մէկտեղ կայանք 'ի դժոխըս. Քրիստոսէն ետքը, 'ի կայանս հոգւոց. դատաստանէն ետքը՝ այծը ոչխարէն զատուելով՝ կամ արքայական կայանքը կամ սատանայական (Հատ ԼԱ. հարցում ԺԱ.) Վարդան վարդապետ ալ «երկնից մէջ ու երկնից ներքեւ ամենը մէկտեղ» կ'ըսէ ։

Տաթեւացին՝ Վարդան վարդապետին ըսածն ալ «կարելի է» կըսէ, նաեւ կաւելցընէ թէ «այս երկու կերպն ալ ընդունելի են». այն է՝ մաքրարան և կայանք ։

2. — Վերջին դատաստանն Քրիստոսէն սորված ենք. ուրեմն հոգիները ուր որ ալ լինին՝ արդարները արդար են և մեղաւորները մեղաւոր, հարսանեաց հրաւիրուածները՝ հարսանեաց սրտով են, սուգի հրաւիրուածները սուգի. ամենը մէկ վերջին դատաստանի կ'ըսպասեն. և մարտիրոսները՝ կ'աճապարեն ալ, սպասելու համար մեր գինցածէն վեր տեղ մը կենալով, որ կայանք ըսել է. ինչպէս որ Գրիգոր Լուսաւորիչ անգամ այսչափ մը կը մտածէ, որովհետեւ մեր այն մըտածած տեղը՝ ոչ աչք տեսած է և ոչ ականջ լսած է. ճարտարապետական կանգունի և երկրաչափական արհեստի տեղ չէ, «կայանք» անուն մը կրնանք տալ միայն ։

Իրաւ որ՝ բնականապէս արդարը և մեղաւորը մէկտեղ ըլլալ անյարմար է, բայց Քրիստոսէն յառաջ այնպէս էին, այս աշխարհիս մէջ այնպէս են, անձրեւը՝ կուգայ չարերաց և բարերաց վրայ ալ. Նոյնպէս արեգակը երկուքին վրայ ալ կը ծագէ. Նոյնպէս ալ Քրիստոս այծն ու ոչխարը իրարմէ զատելու առակով խօսեցաւ դատաստանի օրը ընելիքն ։

Քրիստոս բանտին մէջ եղած հոգիները ազատեց. բայց ի՞նչ կերպով ազատեց, ո՞ւր տարաւ, ինչպէս տեղւոյ, և ի՞նչպէս քաղաքի կրնանք նմանցնել. Հոս եկաւ զմեզ ազատած եղաւ, փրկուածներ ըսուեցանք առհասարակ, բայց արդար մեղաւոր ամենքս մէկտեղ ենք, նորէն փրկութիւնը՝ փրկութեան արժանիք ունեցողին է. Նոյն մարմնովը հոն ալ գնաց, անոնք ալ փրկուածներու կարգին մէջ սեպուեցան, բայց՝ Բէլ, Փարաւոն, Գողիաթ, Յուդա Իսկարիովտացի, անոնք ալ փրկուեցան կրնա՞նք ըսել. ամենեւին ։

3. — Այո՛, Քրիստոս դժոխքը աւրեց, բայց չէ՞նք մ՚էր որ աւրեց, թէ անոնց մէջ քարոզելու համար, նոյն մարմնով անոնց մէջ ներկայանալու տեղն մութ բանտին մէջ մահուան շուքին տակ նստող արդար հոգիներու

համար աւրուած եղաւ դժոխքը . ասոր վրայօք միայն գաղափար մը առնելէն անդին չենք կրնար անցնիլ, միայն այսչափ մը կըրնանք մտաբերել որ , Նահապետք , Մարգարէք, և անոնց հնազանդող ժողովուրդք՝ մըկրտութեամբ և հաղորդութեամբ փրկութեան արժանի էին , բայց Աստուածային տնօրէնութեան համեմատ դեռ անոնց օրով Քրիստոս եկած չէր . մկրտութիւն ու հաղորդութիւն չունենալ՝ անոնց թերութիւն չէր , իսկ Քրիստոս նոյն մարմնով անոնց մէջ ալ գնաց , որ առաջուց մկրտութեան ու հաղորդութեան արժանի եղողները՝ մկրտուած ու հաղորդըւած եղան , չեղողներն ալ հիմակուան մեզմէ մեղաւոր եղողներուն պէս վեղաւոր մնացին ։

Հիմայ հոս ինչպէս որ մեղաւորներ ու արդարներ մէկտեղ ենք , բայց ամեն մէկս զատ զատ խղճի հանգստութեան ու խղճահարութեան մէջ ենք , կարելի է մեռած հոգիներն ալ հոն այնպէս են . համադումար ըլլալով մէկտեղ՝ թագաւորի մը առջեւ համարձակ եղողը համարձակ է , յանցանաւորը՝ յանցանաւոր է , ոչ համարձակ և ոչ յանցաւոր եղողն ալ՝ այնպէս է , ասոր համեմատ սուրբերն ուր ալ ըլլան սուրբ են , երբ ալ լինի Աստուծոյ առջեւ համարձակ են , Աստուած ամեն տեղ կրնայ լսել . ուստի « կարե-

լի է ամենը մէկտեղ են » ըսելը՝ ոչ Աստուծոյ կարողութեան և ոչ ալ սրբոց համարձակութեան թերութիւններ. և կամ թէ դըժոխքը « արտաքին խաւար » անունը առնելուն համար գիտցուք թէ արդարները մեղաւորաց հետ խառն չեն, բայց նորէն իրարու մօտ են անշուշտ՝ մինչեւ վերջին դատաստան. ինչպէս որ դժոխքի մէջ եղած հարուստին և Աբրահամի գոգը եղած աղքատ Ղազարոսին առակէն կը սորվինք, որ իրարու հետ կը խօսին, նաեւ անկէ կը սորվինք, մէջտեղը մեծ վիհ կայ, ոչ թէ քաւարան. ոչ անկէ հոն անցնիլ կարելի է, և ոչ ալ անկէ հոն, որ ըսել է դարձեալ այծերն ու ոչխարները իրարու մօտ գաղափարով մը կրնանք ըմբռնել, որ վերջին դատաստանին ամեն մէկը՝ այծի ու ոչխարի պէս դատաստան գալով արդարները պիտի պսակուին, որ խոստման յուսով անդ կը մըխիթարուէին դժոխքին ու արքայութեան մէջտեղը պսակուածի պէս. « սա աստ մխիթարի և դու այդր պապակիս ». մեղաւորներն ալ յետ յետ յաւիտենական տանջանքի. « դարձցին մեղաւորք անդրէն 'ի դժոխս »:

Ուստի նորէն այն ըսել եղաւ որ, Քըրիստոսէն յառաջ մէկտեղ, Քրիստոսէն վերջ 'ի կայանս հոգւոց առ հասարակ իրարու մօտ. դատաստանէն վերջ կատարեալ արքայութիւն

ու դժոխք. ուրեմն Քրիստոս դժոխքը իջնալուն ուզէ մէկտեղ թողած ըլլայ, ուզէ քիչ շատ տարբերութեամբ իրարմէ հեռացուցած լինի, զի անոր հօրը տան օթեւանքը շատ են, վերջապէս կայանք մը ըսել է մինչեւ վերջին դատաստան:

4. — Հիմայ գանք Հայաստանեայց Եկեղեցւոյն մեռելոց համար ըրած աղօթքի խնդիր են, Նախ՝ յիշատկութիւնը՝ Աստուածային տնօրէնութեան կարգին մէջ է յայտնապէս. հոգիները՝ հրեշտակներու պէս են, մեղաւորի մը զղջալուն վրայ կուրախանան, ուրախացողը կը տրտմի ալ, այն տեղաց հոգիները այս տեղաց վրայ տեսութիւն, գիտութիւն և զգացում մը ունին (Ղու. Թ. 6.) ինչպէս որ Աբրահամին խօսող մեծատունը հոս մնացած եղբայրներուն վրայօք հոգ մը կ'զգայ. Ղազարոսը կը մխիթարուի, որովհետեւ պսակի յուսով կը մխիթարուէր. թէեւ պսակուելէն ու վերջին դատաստանէն ետքը իրականին կը հասնի, մխիթարութեան պէտքը չ'ունենար, բայց վերջին դատաստանին սպասելուն համար արդարոց հոգիներն անգամ մխիթարութեան պէտք ունին. այս առակովը Քրիստոս գաղափարելի կերպով սորվեցուցած է մեզի որ անկէ հոս մէկը մեզի գալու պէտք չունի, առաքելոց ու մարգա-

թէից գրուածներ բաւական են. վաւերացուած է որ մէջտեղը մեծ վիհ մը լինելով քաւարան չ'կայ ։

Բ. Հաստատուած է որ հոն տեղ եղող հոգիներ հոս գտնուած հոգւոց վրայօք դիտողութիւն կ'ընեն, քանզի հրեշտակներու պէս են, չեն մեռնիր. յաւիտեան կենդանի են, երկնից մէջ արքայութեան ու դժոխքի մօտ կաղօթեն, բաղում օթեւաններէն տեղ մը որ աչք տեսած չէ և ականջ լսած չէ՝ մեր խելքէն վեր է. բայց այն տեղաց հոգիներ այս տեղաց վերայ դիտողութիւն մը ընելու իշխանութիւն մը ունենալնին աւետարանական ճշմարտութենէն կը սորվինք ։

Գ. Աստուած կը տեսնէ որ իւր պատկերը կրողները՝ աշխարհային մեղաց ծովուն ալէկոծութեան մէջ են հանապազ, հրեշտակները և արդարոց հոգիները՝ կը նային որ իրենց նմանութիւնը դեռ կայ հողանիւթ բնութեան մէջ, կ'սկսին տրտմիլ. ինչպէս որ Պօղոս առաքեալ այս բոլոր ըսածնիս յայտնապէս կը վաւերացնէ. « Աստուծոյ Սուրբ հոգին մի տրտմեցունէք, որով դուք կնքուեցաք փրկութեան օրուան համար (Եփես. Դ. 30.) Նոյնպէս յայտնութեան մէջ կը կարդանք որ, արդարոց հոգիներն ալ տրտում ունին, վերջին դատաստանի և փրկութեան օրուան համար,

որ բոլոր հոգիներ մեզաց ապականութենէն փրկուին, որուն համար սուրբերը և հրեշտակները՝ անմահ հաւատալով բարեխօս կը կանչենք, մենք ալ իբր փոխադարձաբար 'ի մխիթարութիւն հանգուցելոց՝ անոնց համար անկասկածելի կ'աղօթենք, որոնք երկու պատճառաւ կը մխիթարուին։

Ա. Հրեշտակաց պէս լինելուն համար զմեզ աղօթից և դ.արձի մէջ տեսնելով. Բ. Երկնից մէջ եղող հոգիները գետնի վրայի մարդ.ոց հետ յարաբերութիւն ունենալնուն համար, որովհետև մարդ.ոց պատճառաւ կը տրտմէին ալ։

Անտրտմական հոգին Աստուծոյ որ ըստ ինքեան փառաւորեալ է, մարդ.ոց մեղքին պատճառաւ կը տրտմի, աղօթ.քին պատճառաւ կուրախանայ, որուն ոչ տրտում կը վայելէ և ոչ կը տրտմի. հապա իւր անտրտում ուրախութեան մէջ մարդ.ոց հոգիներէն ընդ.ունելիք փառքը՝ որ չ'ընդ.ունի, անիկայ իրեն տրտում ըսել է, վասն զի չըշահիլը՝ վնասի կարգին մէջ կը համարուի երբեմն. եթէ ոչ՝ ըստ ինքնեան հարուստ է, առնելովը չ'աւելնար, վասն զի արդ.էն առաւելագոյն է, տալովը չը պակսիր, վասն զի աննուազելի է, բայց մարդ.ոցմէն ընդ.ունելիքն ալ որ չ'ընդ.ունի, իրեն տրտում է. «Աստուծոյ Սուրբ

հոգի մի տրտմեցուցանէք » . քանի որ անտըրտումը կը տրտմի, որ մէկէ մը սպասելու բան չունի, ուրեմն՝ դատաստանի մը սպասողները աւելի կը տրտմին և մեր աղօթքով ալ կը մխիթարուին . միով բանիւ՝ արդար հոգիներու համար կ'աղօթենք, քան թէ մեղաւորաց համար « փառաց 'ի փառս բարձրանան » և կամ « զննջեցեալս մեր հանգո՛ » . բոլորն ալ այս իմաստով են . ուրեմն « թէ որ արդար է արդէն մխիթարուած և հանգիստ է, թէ որ մեղաւոր է, ի՞նչ օգուտ » ըսողներուն խօսքը աւելորդ է . վասն զի արդար հոգիներն անգամ տեսանք որ անհանգստութիւն մ'ունին, Աստուծոյ կ'աղաչենք որ հանգըստացնէ, և մեր Աստուծոյ աղաչելը՝ իրենք ալ հրեշտակաց պէս կ'զգան, որով կը հանգըստանան և կը մխիթարուին ։

Մեղաւորաց համար «Ներեա՛, քաւեա՛» ըսելով քաւարանի գաղափարով աղօթք մը ըրած չենք լիներ « արդարոցն կեանք յաւիտենական և մեղաւորացն տանջանք յաւիտենական » ըսած կէտը աւելի ազդու է . ուրեմն համօրէն ննջեցելոց համար աղօթելը՝ հաւատոյ մաս չէ, վիճաբանութեան նիւթ ալ չէ . հապա պարզ գաղափարի ենթակայ յուսոյ կտորներ է, Աստուծոյ ողորմածութեան անչափութիւնը գովել և վերջին դա-

տաստանը՝ անհրաժեշտ հաւատալով․ հոգի-
ներու գոյութիւնը և էութիւնը՝ հաստա-
տել և զանոնք յիշելով մեր պարտքը կատա-
րել է։

Եթէ այս գործողութիւնը չի կատա-
րենք, հոգիններուն հրեշտակի պէս ըլլալը
ծածկած կ'ըլլանք, որուն վկայն Քրիստոս է.
թէ որ քաւարանի յուսով ապրինք անյոյս կը
կորնչինք. ուստի կենդանի մը իւր մահէն
վերջ իրեն համար լինելիք աղօթքէն փրկու-
թիւն յուսալու իրաւունք չունի. բայց անի-
կայ մեռնելէն վերջ եկեղեցին զայն յիշելու
և անոր մխիթարութիւն մախթելու պարտք
ունի. Աստուծոյ ընելիքն ալ մենք չենք
կրնար ճառել։



# ԴԱՍ ԺԶ.

## ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆ ԵՒ ԴԺՈԽՔ

1. — Արքայութիւնը ի՞նչ է. ի՞նչ բանի կը նըմանի։ 2. — Դժոխքը ի՞նչ է։

2. — Արքայութիւնը՝ փառք մ'է, որ չանցնիր, պսակ մ'է որ չի թառամիր, Քրիստոս՝ մանանեխի հատի, ծածկուած գանձի, և ծովը ձգուած ուռկանի և խմորի կը նմանցունէ, այնպէս որ՝ մարդը որչափ որ փոքր է, մանանեխի ունդին և անոր ծառին համեմատութեամբ ալ մեծ, և բոլոր արարածներէն գերազանց է. և այս աշխարհիս վրայ ամեն արարածներէն ապերջանիկ է. անկարելի է որ ամենէն գերազանցը ամենէն ապերջանիկ լինի. ուստի այս տեղաց համար ստեղծուած չէ, իւր երջանկութիւնը՝ հանդերձեալին մէջ Քրիստոսին խոստացած տեղը փնտռելու է՝ ծածկուած գանձ մը փնտռելու պէս, որ ծովը ձգուած ուռկանին մէջէն մեծ ու հարուստ՝ մարգարիտը կըլլածի պէս դուրս ելլէ, չէ թէ իբր խոտան մէկդի ձգուի, թէ

որ այնպէս ըլլայ. «հաւասարեցաւ անասնոց ան-
բանից և նմանեցաւ նոցա». «ո՞վ գիտէ թէ
մարդոց հոգին երկինք կ'ելլէ» (Ժող. Գ. 20)
նոյնպէս Պօղոս կ'ըսէ՝ «ամենքս ալ պիտի
չնորոգուինք» (Ա. Կորնթ. ԺԵ. 51.). որով-
հետեւ երկնից համար ստեղծուածի մը՝ երկ-
րի համար ապրիլ չի վայելեր, եթէ ո՛չ նո-
րոգուած չըլլար. հապա դժոխքը կերթայ.
որ սատանային և անոր հնազանդողներուն
համար պատրաստուած է, իբր Արտաքին
խաւար:

Արքայութիւնը՝ Քրիստոսի հարսանեաց
ընթրիքն է, որուն մէջ ամեն մարդիկ հրաւ-
իրուած են, չի գնացողներն կը զրկուին. ա-
ւանց հարսանեաց հագուստի մտնողները՝ կը
պապանձին (Ղուկ. ԺԴ. 15—24.). արժանա-
ւորապէս գնացողները՝ Աբրահամին ու Յակով-
բին հետ պիտի նստին անոր թագաւորութեան
մէջ (Մատթ. Ը. 11.) որն ուխտած է Քը-
րիստոս «որ պիտի ուտէք ու խմէք սեղանէս՝
իմ թագաւորութեանս մէջ» (Ղուկ. ԻԲ.
29.), ոչ թէ կորստական կերակուրը՝ հապա
հոգեւոր անմահութեան կերակուրը Աստու-
ծոյ գառնուկին սեղանէն (Յովհ. Զ. 63—64.
Յայտն. ԺԹ. 9.). Աբրահամին, Իսահակին
ու Յակովբին ներկայացաւ արինաթաթախ.
(Եսայ. ԿԳ. 1—2. Ա. Պետ. Գ. 19. Դ. 6.

Յայտն. ԺԹ. 13.). և մեզի յիշատակ թողուց այս աշխարհիս մէջ իւր սեղանը՝ վերջին խաչուելիք գիշերը. որովհետեւ անոնց համար հոն տեղ պէտք էր, զի յետս պիտի չգային. Նորէն Քրիստոս մ'ալ գալ ու խաչուիլ անկարելի է, պէտք էր որ մինչեւ աշխարհիս վերջը անոր սեղանը մեր առջեւ երեւնար, որ տեսածնուս պէս կոչէինք «Աստուած մեր և Տէր մեր երեւեցաւ մեզ». ուստի թէ Քրիստոսէն յառաջ մեռածներուն համար և թէ մեզի համար սուրբ Սեղանը լրացած է. վասն զի մէկ անգամ պատարագ եղաւ. թէ որ հոս կարողացանք անոր մասնակից լինիլ՝ հաղորդուած եղանք. թէ որ չեղանք՝ Աբրահամին՝ Իսահակին ու Յակոբին պէս արդարներ անգամ ըլլանք՝ ու հարսանեաց դիմենք, ըսել է առանց հարսանեաց հագուստի ենք, Նորէն Քրիստոս անգամ մ'ալ դժոխք չի իջներ որ մենք ալ մկրտուած ու հաղորդուած լինինք. Հապա Հօրը աջ կողմը նստած փայլակի պէս կուգայ, իրմէ առաջ եղած արդարներուն, և իրմէ վերջ հոն անոր հաղորդակից եղողներուն կը ներկայանայ յաւիտենականապէս, և այն ատեն՝ ըսել է թէ՝ արդարներ առ հասարակ սեղանակից են միեւնոյն սեղանէ, իսկ մեղաւորներ՝ Արտաքին խաւարին մէջ պիտի լան ու ատամնին կրճտցնեն։

2 — Ինչպէս որ Արքայութեան փառքը՝ աչք տեսած, ականջ լսած և մարդու սիրտն ինկած չէ, նոյնպէս ալ դժոխոց պատիժը. բայց ասոր հետ մէկտեղ՝ հոգին կ'զգայ նորա փառքն ու պատիժն ալ. օրինակի համար, Քրիստոսի սեղանէն ճշմարիտ հաւատքով հաղորդակից եղող մը՝ սրտէն ուրախութիւն մը կ'զգայ, որպէս զի Քրիստոս իւր մէջ բնակեցաւ, և անոր հետ անդամակից եղաւ. իսկ մեղանչող մը՝ իւր մեղքը գաղտնի մնացած և բնաւ մէկուն չի յայտնուած ատենն ալ մտատանջութեան մէջ է. ուրիշ խօսքով ըսենք. իւր սիրելին մեռած և կամ մեծամեծ վնասու մը հասած մարդուն ներսէն՝ կարծես արեան դետ մը կըվազէ, սիրտը վարէն դէպ 'ի վեր կը շարժի, կրակի պէս կ'այրի, լոյսը իրեն համար խաւար է, հարսանեաց տունը մահուան տան պէս է. իսկ ո՛չ վէրք մը ունի և ոչ ցաւ մը, բայց խղճին ցաւը՝ ցաւերէն հազարապատիկ ցաւ կուտայ իրեն, որն զ'գացողը հոգին է. Նոյնպէս ուրախառիթ դէպքի մը պատահողին սիրտը թունդ կ'ելնէ, քունը չի գար, տեղ մը չի կրնար հանդարտ կենալ, նայիս՝ մարմնոյն վերայ բան մը չ'կայ. ահա դժոխքի ու արքայութեան վրայ այսչափ մը մտածել կարողանալնուս համար, ասով կըրնանք գաղափարել թէ, չի մարելիք կրակի և

չի մեռնելիք որդերու համար ոչ նիւթական կը-
րակի և ոչ չարժուն ճճեաց պէտքութիւն կայ·
քանի որ այս աշխարհիս անցաւոր թշուառու-
թեան մէջ ներսի դիերնիս շատ անգամ կար-
մըրած երկաթէն աւելի կը տոչորի , անշուշտ
հոգւին կը գտնայ դժոխքի մութին ալ յա-
ւիտենականութիւնը , և չի ալ կրնար մխի-
թարուիլ , ինչպէս որ Քրիստոս ըսած է « ար-
քայութիւնը ձեր ներսի դին է » ( Ղուկ. ԺԷ.
21.) որովհետեւ խաւար ըսելը՝ լոյսին բացա-
կայութիւնը կը նշանակէ ։

Աստուած թէ որ ուզէ , արեգակը ,
լուսինը և ամեն աստղերը՝ որք մէն մի աշխար-
հի պէս են , զանոնք միացնելով՝ կամ աստի-
ճանաբար բոլոր հոգւոց համար տեղեր կը
պատրաստէ . թէ որ ուզէ՝ այս երկրա-
գունդս ալ միացնելով Ադամը դրած դրախ-
տին ձեւին և փառքին վերածելով՝ անոնց ներ-
քին կողմը դժոխքի կամ արտաքին խաւարի
կը ծնայ , որոնք բոլորն ալ 'ի սկզբանէ աշխար-
հի պատրաստ են . մէկը անոր չափը չի գիտէ,
որչափ տեղ ըլլալը չի չափուիր . « զօրութիւնք
երկնից շարժեսցին » կ'ըսէ . ինչ որ ուզէ կա-
րող է ընել , բայց այն վերջի ընելիքը մեզմէ
ծածուկ է , մի միայն մեզի յայտնի է որ մեր
մէջ հոգի կայ . հոգինիս ալ գիտէ որ ինքը
բոլոր արարածոց գերագանցն ըլլալով՝ ապա-

կանացու աշխարհի մը համար ստեղծուած չենք. Նաեւ գիտէ որ հողանիւթ բնութեան մէջ հոգի կայ, և անկէ բաժնուած հոգի ալ կայ. որ ըսել է երկու տեղ կենալը լաւ եւս գիտէ, զի Աստուած գիտցուցեր է. բայց վարձքն ու պատիժը զաղափարելու համար ըսածը՝ վերջին դատաստանն է։

ՎԵՐՋ

